ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՂԲ

# ՀԻՆԳ ՊԱՆԴՈՒԽՏ ՏԱՂԱՍԱՑՆԵՐ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1921

# ՀԻՆԳ ՊԱՆԴՈՒԽՏ ՏԱՂԱՍԱՑՆԵՐ

1. ՎՐԹԱՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍՈՒՆԿԵՑԻ — 2. ՄԻՆԱՍ ԴՊԻՐ ԹՈԽԱԹԵՑԻ — 3. ՍՏԵՓԱՆՈՍ ԵՐԷՑ ԹՈԽԱԹԵՑԻ — 4. ՅԱԿՈԲ ԵՐԷՑ ԹՈԽԱԹԵՑԻ — 5. ՂԱԶԱՐ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԹՈԽԱԹԵՑԻ

ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ԲՆԱԳԻՐՆԵՐ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ








ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1921

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

«Պանդուխտ տաղասացներ» անուանեցի այն հինգ տաղերգուներն, որոնց կենսագրութեան եւ գրական գործունէութեան վրայ կը ճառուի հատորիս մէջ: Անոնք ապրեցան հայրենիքէն դուրս՝ տարագրութեան մէջ լալով իրենց ղարիպութիւնը, մաշելով հայրենիքի կարօտէն:

Անշուշտ ժամանակակից հայ գրականութեան նշանաւորագոյն դէմքերն չեն ներկայացուցներ անոնք, բայց այն անկասկած է որ հայ գաղթականութեան մէջ անոնք աննշանակ անձնաւորութիւններ ալ չեղան. եւ այսօր կրնան իրաւամբ իրենց շրջանին գրական կեանքի ներկայացուցիչներն նկատուիլ:

Բուկովինա — Լեհաստան — Ղ.-իմ գծին վրայ գործեցին անոնք եւ հոն ապրեցին իրենց օրերը: Չորսը համաքաղաքացի են, բայց հինգն ալ ժամանակակից, եւ գրեթէ նոյն պարագաներու տակ հեռացած հայրենիքէն:

Ուշագրաւ երեւոյթ մը կը պարզեն անոնք հայ գրականութեան պատմութեան մէջ. Եւդոկիա միաժամանակ կու տայ չորս բանաստեղծ հեղինակներ, չորսն ալ լոյս առած հայրենիքէն դուրս. մինչ — գոնէ ինծի — անծանօթ են հայրենի հողին վրայ զարգացած ուրիշ Թոխաթեցի հեղինակ իրենցմէ յառաջ, չյիշելով Աբգար դպիրն, որ նոյնպէս օտարութեան մէջ զարգացաւ: Ի՞նչպէս բացատրել այս երեւոյթը: Ինծի կ'երեւայ թէ Թոխաթի փարթամ եւ հանգստաւէտ կեանքը գրականութեան համար յարմար հող չէր ընծայեր. երկրագործ կամ առեւտրի եւ վաճառականութեան անձնատուր ժողովրդեան վերացականէն աւելի գործնականը, զգա-

վրդեան բերանը շրջած անգիր բանահիւսութեան հաւաքիչը:

Հայ Տաղարանը առաւելապէս գաղթականութեան մէջ կերպարանք առաւ. զարգացաւ Եկեղեցականներու նախաձեռնութեամբ: Այսպիսի հին Տաղարաններ ծանօթ են ինծի՝ Մինաս Թոխաթեցւոյ Տաղարանը (Ձեռ. Լէ 64), Ստեփանոս Թոխաթեցւոյ կրկին Տաղարանները (Ձեռ. Լէ 125), Նազար Թոխաթեցւոյ Տետրակը (Ձեռ. Լէ 216): Ասոնցմէ ծագած են մեծաւ մասամբ միւս ծանօթ Տաղարանները: Գաղթականութեան մէջ – մանաւանդ առաջին շրջանին, սիրեց հայ ժողովուրդը մխիթարուիլ իր ազգային երգերով: Ասոնք տեղափոխուած մայր հողէն՝ դիւրաւ ենթակայ էին մոռացութեան եւ աղաւաղման, եթէ խնամով չհաւաքուէին ի մի. այս բարդուեցան ասոնց վրայ ինչ որ նոր յօրինուեցան եւ կամ բերին եկուորները մայր երկրէն: Այնպէս որ հայ տաղերը Հայաստանէն ճանապարհորդելով Եւրոպա՝ կրկին վերադարձան Հայաստան: Եւդոկիա կամ այլուր ընդօրինակուած շատ մը Տաղարաններ իրենց հիմ ունին Լեհաստան կամ Խրիմ ծնունդ առած օրինակներ, որոնց մէջ վայրավարին կը տեսնուին միշտ այն կողմերը երգուած տաղեր, ըլլան Թոխաթեցի կամ այլաշխարհիկ երգիչներէ:

Ուրիշ կէտ մ'ալ ուշադրութեան արժանի է ԺԶ եւ ԺԷ դարու հայ գրական կեանքի մէջ. ինչպէս Յակոբ Թոխաթեցի Լեհաստանի մէջ կը ձեռնարկէ թարգմանել եօթն Իմաստասիրաց առակութիւնը, նոյնպէս Յովհաննէս Տէրզնցի կը հայացնէ Մարսիլիայի մէջ Պատմութիւնն Փարէզ մանկան. երկու գրուածքներն ալ ժողովրդական հանրամատչելի երկեր էին Եւրոպայի մէջ: Թէեւ Տէրզնցւոյ ձեռնարկութիւնն չունեցաւ մեծ յաջողութիւն, բայց Յակոբ իր թարգմանութեամբ վայելեց ժողովրդականութիւն: Այս եւս գրաւական մըն է, թէ Եւրոպացին որպիսի դեր խաղաց ժամանակակից գրականութեան մէջ: Կը թողում յիշել Աւետիս Եւդոկիացին եւ Յակոբ Նալեանը, որոնք յաջորդ դարուն մէջ գործեցին:

Երբ փափաքն էր հատորիս մէջ ուսումնասիրուած տաղասացներու կենսագրութեանց կից հրատարակել նաեւ անոնց տաղերը. այս ծրագրով առաջին երկու

տաղաչափներու արտադրութիւնները գրեթէ ամբողջութեամբ ամփոփեցինք[1]. բայց այս ծրագիրը կարելի չեղաւ իրագործել միւսներու համար ալ, առ այս կը պակսէր մեզի մասամբ լաւագոյն ձեռագիր օրինակ եւ մասամբ նիւթական միջոց: Ինչ որ ներկան չներեց, կը յուսանք թէ ապառնին կ'ընէ ապագան:

Այստեղ կարեւոր կը համարիմ ուղղել կէտ մը, որուն մասին կասկածանքով խօսած էի էջ 78–79 Յանուն Մինաս Թոխաթեցւոյ հրատարակուած տաղը "Տեսէք դուք զարմացք բազում„ ոչ այլ ինչ է, բայց եթէ առընթերագրութիւն մը Պղնձէ քաղաքի պատմութեան մէջ Գրիգորիս Աղթամարցիէն մուծուած Կաֆաններու: Այս նկատմամբ հմմտ. ինչ որ ըսինք Հանդէս Ամսօրեայ, 1921, էջ 544:

Վիեննա, 25 Դեկտ. 1921:

ՀԵՂԻՆԱԿԸ

[1] Կենսագրական եւ գրական տեղեկութիւնները մաս առ մաս հրատարակուեցան Հանդէս Ամսօրեայի մէջ հմմտ. 1920–1921:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

—

Էջ

Ա.

# ՎՐԹԱ՛ՆԷՍ ՍՌ՛ՆԿԵՑԻ

## ԵՊԻՍԿՈՊՈՍ ԿԱՓԱՑԻ

---

## Ա.

# ՎՐԹԱՆԷՍ ՍՈՒՆԿԵՑԻ

### ԵՊԻՍԿՈՊՈՍ ԿԱՓԱՑԻ

*Վրթանէս մին է Միջնադարեան այն տաղասացներէն, որոնց անձնաւորութեան մասին ժամանակակիցներն ոչինչ աւանդած են։ Իր կենսագրութեան համար միակ աղբիւրն, ուսկից կրնանք օգտուիլ, ինքն է։ Բայց նաեւ իրմէ մեծ բան մը չենք իմանար։*

*Հայրենեօք Այրարատեան գաւառի Գիլան գիւղէն էր, ազգաւ “Սըռնկեցի„․ Ինքը կը գրէ* (գ. 73—76).

*Վրդանէս անպէտ հոգի, որ եւ ազգէ Սըռնկեցի,*
*Ի գաւառէն Այրարատի եւ ի գեղջէն Գիլանեցի։*

*Ինչպէս այսօր մեզի անծանօթ է* Գիլան գիւղն *Այրարատայ, եթէ չէ Սիւնեաց համանուն գաւառակն, նոյնպէս անբացատրելի կը մնայ* Սոնկեցի *ազգանունն, որ* Սոնիկ (Սոինկ) *վայր մը կամ շէն մը կ'ենթադրէ։*

*Մանկութեան օրերուն իրեն ընկերակից եւ “դասակից„ ունեցած է զԳրիգոր Վարագեցին, որուն հետ անխառն սիրով կապուած է՝*

*Նկատելով զինքը իրեն “Հարազատն„, “Համշիրակն„ եւ ինչպէս կը գրէ* (Դ. 23).

*“Քանի որ տղայ էաք, Հանապազ զիրար սիրէաք:„*

*Այս սէրը կը ձգէ զինքն ամէն տեղ ուր Գրիգոր կ'ընթանայ* (Դ. 17—18).

*“Ես ի քո սիրուդ, եղբայր,*
*յաշխարհէ յաշխարհ ընթացի:„*

*Թէ ինչ պատճառաւ առին երկու Համշիրակներս պանդխտութեան ցուպն եւ թողուցին հայրենիքը, յայտնի չէ:*

*Երկու պանդուխտներուս քայլերն կ'ուղղուին Եւրոպա, եւ Լեհաստանի հոծ հայ գաղութն կը ձգէ զիրենք իրենց: Գրիգոր Վարագեցի (կոչուած նաեւ Վանեցի), կը հաստատուի ի Լեմբերգ (Լով, Իլով, Լէօպոլիս), ուր* 1552*ին կ'ընտրուի արքեպիսկոպոս տեղւոյն Հայոց (Ալիշան՝ Կամենեց. էջ Է): Զինքը կը յիշէ Սամփսոն Ռօշքա իւր ժամանակագրութեան մէջ յամին* 1557, 1562, 1568:

*Հաւանօրէն այս շրջանին Վրթանէս ալ կ'երթայ կը հաստատուի ի Սուչաւա (Սեչով) իբրեւ տեղւոյն Եկեղեցւոյն քահանայ:* 1557*ին կը գրէ առ Գրիգոր* (Դ. 89—90).

*Նստեալ եմ դու ի Լով քաղքի,*
*Եւ անարժանս ի Սեչովի:*

*Օտար երկնքի տակ երկար կը մնայ Վրթանէս, ուր նոյն իսկ ծերացած կը զգայ ինք զինք.* Դ. 117 *եւ* Ա. 14 *կը գրէ.*

Վառն քո սիրուդ, եղբայր,
այս յաշխարհ՚ շատ յամեցի...
Ծերացայ մէջ այսօր, որպէս քաջ գիտես։

Անյայտ պատճառաւ մը, բայց հակառակորդ եւ չարախօս անձանց սադրանօք, երկու սրտակից համշիրակներու մէջ սատանայ կը մտնէ, գժտութիւն կը ծագի. որուն հետեւութեամբ իրարու մէջ խիստ նամակներ կը փոխանակուին. թէ ե՞րբ տեղի ունեցաւ այս, չենք գիտեր, բայց կը տեւէ «բազում ժամանակս»։ Ա. 2—9 կը գրէ Վրթանէս.

Բազում խռովութեանց հետեւեցայ ես...
Եւ շատ անկարգ թղթեր քեզ գրեցի ես...
Զարմանամ հիմայ թէ ո՞նց համբերես...
Թուի թէ թշնամին յիրար ձգեց զմեզ։

1557ին, երբ Գրիգոր Լւովի եւ Կամենիցի մէջ հինաւուրց դատական խնդիրներն կը լուծէ երկուստեք միաբանութեամբ[1], ի մէջ կու գայ Վրթանէս. եւ սթափած իւր սրտին դառնութենէն հաշտութեան ձեռք կը կարկառէ Արքեպիսկոպոսին, որ եւ սիրով կ'ընդունի։ Երկակողմանի սիրալիր թղթեր կ'առաքուին իրարու։

¹ Սահմանա Ոսկան իւր ժամանակագրութեան մէջ յամին ՌԶ (1557) կը գրէ. «Գրիգոր Ե. արքեպիսկոպոս Լէհաստանի. եւ Վարդապետ յարեւելից. ընդ Կամենեցացւոց յայսմ ամի մարտ էր, դդաշխնս անձէ. գնեն. զի մի որ ի քահանայից թէ ի ժողովրդականաց ի դատ կոչեսցէ ի Լէհացիս. այլ իւրեանց եկեղեցւոյ ի Կամենից երկու քահանայիւք եւ չորիւք դատաւորօք դդատ արասցէ. եւ յաղագս նուիրականացն եւս հասարակէ թէ զինչ տացեն»։ Կամենից. էջ 135.

Վրթանէս գրած է այս առթիւ չորս թուղթ տառնաւոր չափով, որոնք պահուած են մեր Մատենադարանի Թ. 797 Ձեռագրին մէջ։

Իր առաջին թուղթն գրած է ինքնաբերաբար (Ա. 15).

Կամաւ թուղթս գրեմ առաքեմ առ քեզ,

Այսր պատասխանն կ'ընդունի Վրթանէս արտասուախառն (Դ. 95—96).

Երբ որ քո թուղթըն առայ՝
շատ լացի հանցեղ իմանաս.

Եւ կը գովէ ուրախութեամբ (Բ. 9—13).

Ահա հեռ իմ եղբօրըն հաշտեցայ ես.
Բազում խռովելով սև պահեցի ես.
Գրիգոր Վարագեցի դու պարծալի ես.
Դու իմ աչացս լոյս եւ սիրելի ես։

Եւ այլուր (Դ. 119, 135, 145).

Գիտէ ծածկագէտն Աստուած,
հաշտելոյ կարօտ ես էի...
Այսօր բարով հաշտեցաք
եւ չարին նալաթ տացաք...
Այս թուղթս որ Սեշով գրուի,
տի երթայ ի Լովըն հասնի,
Ի Վանքըն Հաճկատարի,
ձեռն եղբօրն իմ հարազատի։

Պանդուխտի կեանքը ծանր երեւցած է Վրթանէսի սրտին եւ կը խորհի այլ եւս դառնալ հայրենիք։ Տեղ մը կը գրէ (Բ. 34).

Պանդուխտ եմք եւ գարիպ, ինչ առեմ քեզ․

եւ ուրիշ տեղ մը (գ․ 89—92)․

Նստեալ եմ գու ի Լով քաղաքի,
եւ անպարտանս ի Սեչովի․
Սըրա գէմ չեն մեզ հայրենի,
այլուր մեր տէրն է պիտանի։

Վրթանիսի երրորդ թուղթը թուական կը կրէ՝ 1557, Օգոստոս 27 (գ․ 141)։

Գրիգոր Վարագեցի թէեւ 1562, Յուլիս 25ին կ՚անուանուի Լեհաց Սիկիսմունդ Աւգուստ թագաւորի (1548—1572՝ հրովարտակաւ՝ եպիսկոպոս «ընդ բոլոր թագաւորութիւն Լեհաց» (Ռուշքա՝ յամի 1562․ Կամենից, էջ 136), բայց քանի մը տարի ետքը՝ 1568ին «վասն հերձուածողութեան եւ հակառակութեան ժողովրդոցն երթայ յԵրուսաղէմ եւ անտի ի Հռոմ» (Կամենից, էջ 136) եւ 1574ին կը վախճանի ի Կ․Պոլիս, 22 տարի եպիսկոպոսութենէն ետքը (Կամենից, էջ 46, ըստ Կամենիցի Տարեգրին)։

Այս միջոցին Վրթանէս հեռացած էր արդէն Սուչաւայէն, հաւանօրէն 1560ի մօտերը՝ թէ դէպի ուր ուղղուեցան իր քայլերը, յայտնի չէ։ Հաւանօրէն անցաւ նա Կաֆա․ գոնէ հոն կը գտնենք զինքը 1567ին, ուր ականատես կ՚ըլլայ Պարոն Լոյս նահատակի վկայութեան (1567 Յունուար 5—Մայիս 15) եւ յետ նահատակութեան կ՚ամփոփէ անոր սուրբ նշխար-

ներն եւ կը գրէ վկայաբանութիւնը։ Հոս կը կարդանք իր անձի մասին.

«Եւ ես անպիտան Վրթանէս՝ տրուպս ի վարդապետաց եւ յետինս ի քահանայից՝ ականատես եղէ այսու ամենայնի եւ անմաքուր բազկաւ խմով գրկեցի եւ եդի ի տապանի, եւ ըստ կարի աղկացեալ մտաց իմոց գրեցի զպատմութիւնս զայս» (Հայոց նոր վկաները, էջ 394)։

Բաց ի այս վկայաբանութենէն կը նուիրէ Վրթանէս սոյն վկային ուրիշ երկու ոտանաւոր ներբող ալ. երկրորդին մէջ կը գրէ (Ը. 119—120, 151—154).

Վըրդանէս Վարդապետըն քո ծառայն, Տէր,
Վասըն Պարոն Լուսին զայս տաղի, Տէր, ...
Անուն մարտիրոսիս ուրբ Պարոն Լոյս է,
Անուն տաղս առողին տէր Վրդանէս է.
ՅԱյրարատեան յերկրէն Կաֆան եկեղ է,
Արդիւնաւոր բանիւ զայս տաղեալ է։

Ուսկից յայտնի չէ, թէ Վրթանէս Սուչաւայէն նախ Այրարատեան հայրենիքն վերադարձաւ եւ անկէ անցաւ Կաֆա, թէ ուղղակի Սուչաւայէն։ Յամենայն դէպս Կաֆացիք մեծ սէր ցուցուցած են իրեն եւ նոյն իսկ յանձնած տեղւոյն եպիսկոպոսութիւնն իւր խնամոց. այս աւելի պարզ կը տեսնուի առաջին տաղին վերջաւորութենէն որ կ'ըսուի (Է. 189—196).

Մի մոռանար երգող բանիս՝
ըզՎրդանէս անպէտ հոգիս
Ըզվարդապետն Հայոց ազգիս,
զեպիսկոպոսըն Կաֆայիս.

Ով տուրք վըկայ Տեառն Յիսուսի,
 Դքո քաղցրութիւնդ աչօք տեսի.
Զքեզ իմ բազկաւքս գըրկեցի,
 Եւ գերեզմանըն հանգուցի։

Այս մասին ուրիշ կողմանէ տեղեկութիւն չունիմ։

Իր աշակերտն կ՚երեւայ Թումայ (կափացի), որ իր ուսուցչին հրամանաւ երգած է Պարոն Լոյսի վրայ նոր տաղ մ՚ալ (Նոր վկաներ, էջ 411). Թումա հօս կը բացագանչէ.

Արդարանէս վարդապետ եւ անուն բարի,
Թող զու պայծառ կենաս ի մէջ աշխարհի.
Որ ես տուի հրաման եւ զտաղս տայցի,
Թումայ խիստ մեղաւոր ի յայսմ աշխարհի։

Ընծանօթ կը մնայ մահուան տարին, որ եօթանասնական թուականին իյնալու է։

ԳՐՈՒԹԻՒՆՔ։ Ունինք իրմէ արձակ Վկայաբանութիւն մը եւ Ոտանաւորներ։ Առաջնոյն մէջ յանկուցիչ է իր պատմուածքը, պարզ եւ անպաճոյճ, վկայաբանութեանց յատուկ ոճով։ Տաղերն ինքնուրոյն խանդ մը չեն երեւցներ. աղքատ են մտածմունք, անգոյն՝ պատկերները, երգած Գրիգորիս Աղթամարցւոյ տաղերու ազդեցութեան տակ, ուսկից տեղ տեղ կը զգացուին նաեւ բառական բանագողութիւններ։ Բայց կան ցիր եւ ցան՝ սրտի արտաղեղումներ ալ՝ անկեղծ, սեռն, քնքոյշ. որոնք կը զգեցնեն երգչին արտայայտութեանց գրական շնորհք. եւ այսպէս անոնք միշտ շահագրգիռ կը հան-

գիտանան իրրեւ ցոլքեր միջնադարեան զգացմանց։ Գեղեցիկ է «Հայաստանեայց Հաղարթուին» վկայաբանական տաղը։ Յաջող պէտք է համարիլ մանաւանդ՝ «Մէկ մարդ մի ճրագ վառեր», զուեշտական ոտանաւորն, ուր թանկագին հատուած մը պահուած է մեր միջնադարեան զուեշտաբանութենէն։ Ի՛նչպէս ճարտարօրէն եւ նմանութիւններով իրրեւ երկայրի սուրի հարուածներով կը հեգնէ կարդալ չգիտցող գրամոլն, որ քաջակազմ, ոսկեպատ Արարածոց մեկնութիւնն ընդ գրուանաւ գրած՝ ինքը չի կրնար գործածել, եւ այլ՛ց թոյլ չի տար օգտուիլ անկէ։

Տաղերն բացի պատմական ակնարկութիւններէն հետաքրքրական են նաեւ լեզուական տեսակէտէ, ուր ռամկօրէնն կ'իշխէ հզօր չափով։

Վրթանէսի անուան վերագրուած ութ տաղ ծանօթ է ինծի։ Թէ ասոնք ամէնն ալ մէ՞կ գրչի արդիւնք են, պատճառ չունիմ տարակուսելու։ Ոճի նկարագիրն նոյն է ամէնուն մէջ՝ առանց զգալի տարբերութեան. եւ այն պարագան, որ — բաց ի առաջիններն եւ վերջիններն, ամէնն ալ կը գտնուին մեր Թ. 797ի մէջ խնամով ի մի հաւաքուած, անոնց ծագումն որոշ շրջանէ ցոյց կու տայ. Սուշաւա-Կաֆա տարածութեան վրայ։

Այս Ձեռագիրը (Թ. 797) նոր ընդօրինակութիւն է Կերլայի Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյն վերաբերեալ ընտիր Տաղարանին (զոր Զ. Կ. համառօտագրութեամբ աղընթեր կը նշանակեմ), գրուած 1604—1614ի մէջերը։

Վրթանէսի գրչէն մեզի հասած գրուածոց ցանկերն է հետեւեալը։

Ա. Արձակ գրուածներ։

Վկայաբանութիւն Պարոն Լոյս Կաֆացւոյ († 1567, Մայիս 15)։ «Ի ժամանակս թագաւորութեան Սուլտան Սէլիմին, որ նստէր ի քաղաքն Կոստանդինուպօլիս . . .

Ձեռագիրք՝ Էջմ. Կար. Ցուց. 1598, թղ. 69ա։ — Ձեռագիր Խաչիկ Վ. Դադեանի։ — Ցուցակ Բերլինի, թ. 46, թղ. 166ա—169բ։

Հրտ.՝ Հայոց Նոր Վկաներ, էջ 386—394 (Էջմիածնի կրկին ձեռագիրներէն)։

Բ. Տաղեր։

1. Այրէն մինչեւ ի քէն քեզ գոհութիւն, Տէր. Թագաւորաց քոց գոհանամք, յաւիտենից Տէր։

Ձեռ.: Շաւարշ Վ. Սահակեանի (Յեւդոկիա) թ. 3 Տաղարան, էջ 185—187։ Ընդօրինակութիւն մ'ընդունած եմ 1913 թուին. Ձեռագրին ստացիչն նահատակուեցաւ 1915ի տարագրութեան. հաւանօրէն նաեւ Տաղարանն անհետացաւ նոյն միջոցին։ Թող ծառայէ այս՝ գոյզն յուշարար գրասէր բարեկամիս ազնիւ զգածմանց։

Տաղս ունի նմանութիւն «Աստուած, Հայր երկնաւոր» տաղին հետ, որով կը լուսաւորուի վերջին տան (տ. 37) մթութիւնն եւ Սռնկեցւոյ անձն կարկառուն կ'ընծայուի։

Հրտ.՝ Հանդ. Ամս. 1920, էջ 359։

2. Այրէն մինչեւ ի քէն Քրիստոս մեղայ քեզ.
Բազում խոստովանութեանց հեծեծեցայ ես...

Ձեռ.՝ Մեր Մատենադարանի Թ. 797, 195բ (= Ձ. Կ. 288ա). — Աճառեան՝ Ցուց. Թաւրիզի, էջ 61.

Հրտ.՝ Հանդ. Ամս. 1920, էջ 283—284.

3. Այրէն մինչեւ ի քէն գովեցի զքեզ,
Այրէն մինչեւ ի քէն եղբայր մեղայ քեզ...

Ձեռ.՝ Թ. 797, 196ա (= Ձ. Կ. 289բ).
Հրտ.՝ Հանդ. Ամս. 1920, էջ 284—285.

4. Այրէն մինչեւ ի գիրն վերջին մեղայ առաջ եւ Քրիստոսին.
Բազում բանիւ խոստովանութեանց հեծեծեցայ ի հետ չարին...

Ձեռ.՝ Թ. 797, 197բ (= Ձ. Կ. 292ա).
Հրտ.՝ Հանդ. Ամս. 1920, էջ 285—288.

5. Այս սուտ կենցաղոյս վերայ ես միայն շուտով խաբեցայ.
Թողի զկամքն աստուածային, բանսարկուին եւ հետեւեցայ...

Ձեռ.՝ Թ. 797, 200բ (= Ձ. Կ. 296ա).
Հրտ.՝ Հանդ. Ամս. 1920, էջ 288—292.

6. Աստուած, Հայր երկնաւոր զքեզ գոհանամ, Տէր.
Որ դու զօրացուցեր ըզքո ծառայն Տէր...

Ձեռ.՝ Թ. 797, 190բ (= Ձ. Կ. 279բ). — Թ. 344, 220ա.

*Հրտ.*՝ *Հայոց Նոր Վկաներ, էջ* 396—400 (*մեր Թ.* 344*էն*). *Թ.* 797 *ունի տեղ տեղ մանր խոտորումներ տպագրէն։*

7. *Հայաստանեայց հազար թուին, եւ տասնուվեց աւելորդին,*
   *Քաջ նահատակ մի ընտրեցաւ, աստուածայէն*
   *կաֆայ քաղքին...*

*Ձեռ.*՝ *Թ.* 797, 70*բ* (= *Զ. Կ.* 109*ա*)։ — *Թ.* 344, 213*ա*։ — *Էջմ. Գեւ. Թ.* 281, *Թղ.* 91*ա*—93*բ*։ 283, *Թղ.* 109*ա*—115*բ*. «*Երկուան էլ միջից կամ վերջից պակաս*» (*Համմտ. Հայոց Նոր Վկ., էջ* 408)։

*Հրտ.*՝ *Հայոց Նոր Վկաներ, էջ* 401—408 (*Էջմիածնի ձեռագիրներէն, պակասաւոր*)։

8. *Մէկ մարդ մի ճրագ վառեր,*
   *Բարձր ի տեղ դրեր...*

*Ձեռ.*՝ *Կը գտնուի* 1784*ին Նոր Նախիջեւան գրուած* «*Ժողովածու Պատմագիրք*» *ձեռագրին մէջ, որուն գրիչն է տեղւոյն Ս. Համբարձում եկեղեցւոյն քահանան՝ Մարտիրոս Աւետիքեան* (*Համմտ. Մասեաց Աղաւնի, էջ* 263 *եւ* 266—267)։

*Հրտ.*՝ *Մասեաց Աղաւնի* 1863, *էջ* 264—265։ — *Հանդ. Ամս.* 1920, *էջ* 360—363։

*Թէ հեղինակն Սոնկեցի՞ն է, խորագիրն կռուան չի տար հաստատելու. բնագիրն ալ ձեռք չի տար առ այս. բայց ոճն անտարակոյս Սոնկեցւոյ է։*

Տողին վերջաւորութիւնն խանգարուած է — հաւանօրէն օրինակողէն, որ նոր յաւելուածներ ալ կցած է։

Այս 1—8 տողերը կը հրատարակենք ստորեւ ամբողջութեամբ։

Բնագիրները կազմուած են ձեռագիր եւ տպագիր օրինակներու վրայ հիմնուած։ Շեղումները, մեծաւ մասամբ զուտ ուղղագրական, դիւրին է տեսնել ծանօթութիւններէն. Հոն չեն նշանակուած միայն ը կիսաձայներու յաւելումները կամ յապաւումները, որոնք կատարուած են հատածներու չափին յարմարցնելու համար. նոյնպէս կիտադրութիւնը։

Հատածներու կազմութիւնն ամէն տեղ լաւ օրինի չէ. մեծ մաս մը անշուշտ ընդօրինակողներու անուշադրութեան վերագրելու է. այսու հանդերձ կը մնայ դեռ մաս մը հեղինակին հարազատ, օր. համար իրմէ է առանց տարակուսի Դ. 158, ուր Աստուծոյ մէկ վանկ առնուած է, հաւանօրէն Այ համառօտագրութենէն շփոթած (հմմտ. Դ. 109, ուր Յազար թուականն Ռ թուանշանով պահուած է յօրինելու համար սկզբնական գիր)։

## 1.

# ՎՐԹԱՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ

## ՎԱՍՆ ՀԱՒԱՏՈՅԹԵԱՆ

ՈՐ ԲԱԶՈՒՄ ԺԱՄԱՆԱԿՍ ԽՌՈՎ ԿԱՑԵԱԼ Է ՀԵՏ ԴԱՍԱԿՑԻՆ ԻՒՐՈՑ ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՈՐ ԱՌԱՋՆՈՐԴ ԷՐ ԼՈՎԱՑ ՔԱՂԱՔԻՆ․ ԵՒ Ի ՆԵՐՈՒԹԵԱՆ ԺԱՄԱՆԱԿԻՆ ՀԱՇՏԵՑԱՒ ԵՒ ԳՐԵԱՑ ԱՅՍՊԷՍ․

*Այրէն մինչեւ ի քէն քրիստոս մեղայ քեզ,*
*Բազում խռովութեանց հեռացեալ եմ.*
*Գրիգոր քաջ հռետոր դու իմ եղբայրն ես,*
*Դու ես սուրբ հայրապետ եւ առաջնորդ ես։*
*Եւ շատ անկարգ թղթեր քեզ գրեցի ես,*
*Զարմանամ հիմայ թէ ո՞նց համբերես.*
*Էթէ լինի այսպէս որ հանդիպիմ քեզ,*
*Ընդ քո սուրբ երեսիդ յոյժ կարօտիմ ես։*
*Թուի թէ թշնամին յիրար ձգեց զմեզ,*
*Ժամանակս է խաբող որպէս քաջ գիտես.*
*Իմ համշիրակ եղբայր Աստուած աւգնէ քեզ,*
*Լինի թէ տեսանեմ զքո սուրբ երես։*
*Խնդիրք ունիմ ի քէն եթէ կու լսես,*
*Ծերացուք մեք այսօր որպէս քաջ գիտես.*

---

Ձեռագիր՝ A = 797, թղ. 195բ—196ա (Զ. Կ. 288ա—289բ)։

Խորագիրն՝ Նորին Վ. Վարդապետէ ասացեալ է Վ. Հ., որ... Լոռւա։ — 1 մեղա։ — 3 հռետոր։ — 11 համշիրակ։

Կամաւ թուղթս գրեմ առաքեմ առ քեզ,
Համօրէն աշխարհի պարծանքըն դու ես.
Ձեւով գեղեցիկ եւ վայելուչ ես,
Ղամպար ես դու վառեալ անշիջելի ես.
Ճշմարտութեանց սիրող ուղղադաւան ես,
Մաքուր ես եւ պայծառ որպէս զլոյս ես.
Յիսուս Քրիստոս վկայ որ կու սիրեմ զքեզ,
Նման ես արծուի բարձրաթռիչ ես.
Շնորհաք լցեալ ես քան զտէր Ներսէս,
Ով տէրդ իմ Գրիգոր յայտնի զովեմ զքեզ.
Զունիմք շատ սիրելիք, զայն այլ քաջ գիտես,
Պարտ է մեզ սէր առնել աղաչեմ զքեզ.
Ջրէն անմահութեան դու արբուցանես,
Աթոռի բարձրագահեան Հայոց ազանց ես.
Սրբոց հայրապետաց դու նմանեալ ես,
Վրթանէս մեղաւորըն կը զովէ զքեզ.
Տանս Հայաստանեաց բարունակեալ ես,
Բաւեալ ազանց մէջի յայտ զովելի ես.
Յանկալի հրեշտակաց այլ եւ մարդկան ես,
Իւսիսային երկրին ուրախութիւն ես.
Փարթամ ես դու հոգւով դուն եւ մաքուր ես,
Քրիստոս քեզ աւգնական զի արժանի ես.

## 2.

### ՆՈՐԻՆ ՎՐԹԱՆԻՍԻ ԱՍԱՑԵԱԼ

Այրէն մինչեւ ի քէն գովեցի զքեզ
Այրէն մինչեւ ի քէն եղբայր մեղայ քեզ
Արդ զայս սակաւ բանիկըս գրեցի ես
Զիարդ կաս կենցաղոյս՝ հարցանեմ քեզ.

---

24 տէրս, այանի. — 34 հիւսիսայինն. — 35 հոգով
Ձեռագիր՝ A = 797. թղ. 196 ա—197 ա (= Ձ. Կ 289 բ—291 ա):
2 մեղա.

Եթէ դու գիտ հարցման արժանի առնես
՝Ներողութեամբ փրկչին առողջ եմ եւ ես
Երանի այս թղթիս որ տեսանէ զքեզ
Յորժամ որ ընթեռնուս մէկ բերան քիչես:

Ահա՛ հետ իմ եղբարքըն հաշտեցայ ես
Բայցում խռովելով սիս պահեցի ես
Գրիգոր Վարագեցի դու պարծալի ես
Դու իմ աչացս լոյս եւ սիրելի ես:

Ես շատ եմ մեղուցեալ թողութիւն առնես
Զայրացան ուսուրք խռով հետ ինձ պահես
Է իմ եղբայր սիրուն զամէնն առեմ քեզ
Ընդ մեզ ով որ արար զայն այլ առեմ քեզ:

Մէկ ցեղ հետ ինձ առաջ մէկ այլ ցեղ հետ քեզ.
Ժամ է մեզ հաշտելոյ ի քէն խնդրեմ ես
Իմ բնական սիրած եղբայրըն դու ես
Լինիմ հոգւոյս ուրախ՝ առարնիվորի ես:

Խընդիրքըդ կատարէ յերբ յԱստուած գիտես
Ծանիր իմ տէր եղբայր հաշտեցայ հետ քեզ
Կամաւ ես հաշտեցայ զայլըն դու գիտես
Հայատառնեայց խրատիչ եւ վարդապետ ես:

Ջայնիւրդ հեզարան քաղցրաձայնոյց ես
Ղեկաւար ես ճարտար թեթեւ անցանես
Ճըշմարիտ Հայոց աստուածարան ես
Մարգարէից նըման աստուածասէր ես:

Յիմ հանճիրակ եղբայր եւ սիրելի ես
Նըման ես աղաւնոյ յոյժ միամիտ ես
Շնորհքըն աստուածային իջանէ ի քեզ
Որ եւ երկնաւորացն յոյժ ցանկալի ես:

---

20 հոգւոյս: — 25 հեչարայն քաղցրայգույց: — 28 աստուածայսէր: 29 հանճիրակ: — 30 աղաւնոյ:





Գրիգոր եղբայրն իմ սիրելին
   որ է տեսուչ Խլոյ վանքին.
Դու հայրապետ եւ վարդապետ
   Նման սրբոյն հարցն առաջին ։
Երանելի Տէր Գրիգորին
   եւ երջանիկ գիտնականին.
Ձիմ հանճարեալ սիրականին
   մեղայ ասեմ դարձեալ կրկին ։
Էթէ կրաւանք ըստ մարդկային
   մի խռով կացցուք նման չարին ։
Ընդ մեր հաշտիլ բարերարին
   յամօթ լինի մեր թշնամին.
Թողուլ պարտիքն ըստ հրամանին
   ըստ կանխասաց մերոյ Փրկչին.
Փրաել այս զանձառ բարին
   որ ի Տեառնէ պարգեւեցին ։
Ի մարդկանէ ոչ որ գտանին
   որ ի մեղաց ոչ յաղթեցին.
Լաւ մեզ պարտ է յայժ տրբամոգին
   զի մի լացցուք ի գեհենին ։
Խռովեցաք հետ մէկ մէկի
   խաւարեցաք միջօրէի.
Ծառայեցաք չարասիրին
   ծանեակ եղաք բարերարին ։
Զի կուրացի մեր թշնամին
   որ զմեզ արար հաւան կամքին.
Հաստատեսցուք սէրն առաջին
   հաւատացուք պատուիրանին ։
Զայն խռովութեանց մեր լսեցին
   բազում անգէք բամբասեցին.
Ղարիպ եւ չար անուանեցին
   զարիպութիւն մեր լացուցին ։
Ճշմարտութեան ճանապարհին
   ճգնիլ պիտէր հարցն առաջին.

---

6 քաղաքին։ — 11 հանճարայք։ — 12 մեղաւ։ — 23 տրամայգին։ — 24 լացուք։ — 27 չարայսիրին։

Մաքրել այնու միտս եւ զհոգին
մաքուր պահել յաղտոյ զմարմին։
Յանկարծակի շարիք եկին
յանկարծ ըզմեզ խռովեցուցին.
Նախատանօք կրծեցուցին
նոր օրէնքով զմեզ խոցեցին։
Շատ բան եւ խօսք ի քէն առին
եւ շատ զրոյց յինէն առին.
Որով եւ զմեզ բարկացուցին
որ եւ յայտնի կրկնեցուցին։
Չէր պարտ լսել մեր չարկամին
չէր մեզ պատեհ լսել նոցին.
Պարտ էր լսել բարեկամին
պահել զհրաման Տեառն Յիսուսին։
Ջանիւ ըզմեզ գլորեցին
ջրի նըման պղտորեցին.
Ուսմիկ ոմանք զմեզ յաղթեցին
տալով եւ կեղծ անուն գրքին։
Սրբաներս մեր ոչ խորհեցին
ներքին կենաց պատուիրանին.
Վասն այնորիկ մեզ յաղթեցին
վայ եւ եղուկ զմեզ պատեցին։
Տեառնք ըզմեզ լոյս գիտէին,
տիրանըման զմեզ պատուէին.
Բարունապետք անուանէին
Բամից որդւոց զմեզ հարկէին.
Յանկանայով առ մեզ գային
գան եւ ցրնիւ զմեզ գային.
Իւրանց հոգւով ըզմեզ առին
սիւնիւսային կողմ աշխարհին։
Փութով հաշտին մեր վերբատին
փառս տացուք արարողին.
Քրիստոսի անմահ գառին
ճըշմարտութեան ճանապարհին։

46 զրուցք. — 62 տիրանման. — 67 հոգով.

Վերդանէս անպէտ հոգի
որ եւ ազգէ Արօրնիկեցի
ի գաւառէն Այրարատի
եւ ի գեղջէն Գիլանեցի։

Բարուն քաջիդ Տէր Գրիգորի
նամակս զայս քեզ գրեցի
որ եմ կարօտ քո երեսի
քո տեսութեանդ հրաշալի։

Դու ես նըման Արուսեակի
եւ ես նըման մըթին տեղի
կարաւտացայ քո սուրբ տեսի
զի տրտմութիւն մեր փարատի։

Արդ ով եղբայր իմ պարծելի
քաջ հեռեւոր եւ հրաշալի
յիմարեցաք մեք յաշխարհի
վասն անիրաւ մամոնայի։

Նըստեալ ես դու ի Լով քաղքի
ես անարժանս ի Սեչովի
ուրա զէմ չեն մեզ հայրենի
այլուի մեր սէրն է պիտանի։

Է իմ եղբայր 'ւ իմ սիրելի
ահա ասեմ քեզ յատենի
որ բանսարկուն չար թըշնամի
ըզմեզ յիրար ձըգեց յայտնի։

Սէրըն պատուէրն է Քրիստոսին
լըումն օրինաց պատուիրանին
բայց մեք առողջ եղաք կըրկին
եղբայր մեղաք մեր արարչին։

Ինձ հաւատա, եղբայր բարի,
որ ես լալով զայս գրեցի
քո սրբութեանդ առաքեցի
տես եւ կարդա', ով հրաշալի։

83 կարաւտացա։ — 90 Սէչովի։ — 94 յայանի։ — 98 պատուիրանին։

*Յայց հարցանեմ ով որդեակ*
*թէ զիա՞րդ կաս կամ որպիսի*
*զի այս կենցաղս է ներհակի*
*եւ հանապազ է թըշնամի.*

*Արդ զօրութիւնըդ Քրիստոսի*
*մինչ հանապազ քեզ հովանի*
*եւ թըշնամին քո կրրկնակի*
*վաղվաղակի կործանեսցի.*

*Նաեւ թէ դու հեղահողի*
*յիշման աղնեա զիս արժանի*
*նա գոհութիւն արարողի*
*առաջ մարմնով եւեթ յաշխարհի.*

*Քան բղբոս եմ աւերակի*
*քան զհաւալուան յանապատի*
*որպէս ճըռճղուկ եմ ի տանի*
*կամ բեկեալ նաւ ի մէջ ծովի.*

*Արդ աղաչեմ ով որդեակ*
*յիշման արա զիս արժանի*
*յիշեա աղօթիւքդ քո բարի*
*արտասուելոյն ժամանակի.*

*Թէպէտ որ կայր բան մի քանի*
*որ գրեցի մէջ այս թղթի*
*յորժամ տեսանում ըզքեզ յայտնի*
*յայնժամ ասեմ զինչ կու պիտի.*

*Հետ այս թղթիս բարեւ հասնի*
*քո որդեկաց ամենայնի*
*քահանայից ժողովրդի*
*միաբանութ. մեծ եւ փոքրի.*

*Անփորձ կենայք մէջ աշխարհի*
*Քրիստոս լիցի ձեզ հովանի*
*ով քահանայքդ հրաշալի*
*եւ ժողովուրդք Խլով քաղքի.*

---

113 *նայ.* — 118 *զհաւալյան.* — 122 *արայ.* — 126 *թըխտի.* — 129 *թըխտիս.* — 132 *միայհամու.*

Զեր թրչնամին ամօթ լինի
որ մեր շատ սէրն արար լեղի
մեր բարեկամքն ուրախացի
այժմ եւ աւուրն ապագայի։

Ի թվին Հայոց հազար վեցին,
Օգոստոսի քսան ու եւթնին,
ասկուն բանիկս գայս գրեցի
Խլով քաղաքն առաքեցի։

## 4.

### ՆՈՐԻՆ ՎԱՐԴԱՆՈՍԻ

Այս սուտ կենցաղոյս վերայ
եւ միայն շուտով խարեցայ
թողի բղկամքն աստուածային
բանաւորկութին եւ հետեւեցայ։

Բայց դայս գիտացէք եղբարք
որ աշխարհս է փոփոխական
նոյնպէս բրնութիւն մարմնոյս
հանապազ է մեղանչական։

Գրեմ քեզ նամակ եղբայր
Տէր Գրիգոր արհի պանծալի
Վարդապետ աստուածաբան
եւ տեսուչ Խլով քաղաքի։

Դու եւ հօգովըդ պայծառ
արեգակն ի մէջաւուրէի
ջահ եւ մէջ եկեղեցւոյ
եւ լուսին ի տանուհրնգի։

---

141 Ռ․ վեցին։ — 142 Ի։

Ձեռ—ինէ՝ 797, թղ․ 200բ—204ա (Չ․ Կ․ 296ա—300բ)։

2 խարեցա։ — 6 յաշխարհս։ — 15 եկեղեցոյ։ — 16 հրնկի։

Ես ի քո սիրուտ, եղբայր,
յաշխարհէ յաշխարհ ընթացի
ով ըղձեղ՝ յիրար ձըգեց
կորըստեան որդի նա լինի։

Զարմանամ ես ի յայս բանին
թէ զեարդ զիրար ատեցաք
քանի որ արդայ էաք
հանապազ՝ զիրար սիրէաք։

Է իմ սիրելի եղբայր
Սատանէն քուէլ խաբուեցաք
թողաք զԱստուծոյ պատուէրն
անկատակած չարի գիպեցաք։

Ընդէր մեք յիմարեցաք
ըրնական սէրն մոռացաք
այս սուտ աշխարհիս համար
միմեանց յե՞ր բաժանեցաք։

Թէ այս անցաւոր երկրիս
մեծութիւնն ամէնն ինձ տային
ոչինչ էր ամէնն, եղբայր,
երբ ըղձեղ ի բաց բաժնեցաք։

Ժամ է մեզ դառնալ, եղբայր,
հերիք էր զիրար ատեցաք
աշխարհի զըրուց եղաք
զթշնամին մեր խընդացուցաք։

Իմ աչացըս լոյս, եղբայր,
մեզ պարտ չէր խըռով կենայաք
թէպէտ որ գըլորեցաք
պարտ էր մեզ շուտով կանգնէաք։

Լոյս հոգւոյ մեր պակասեցաւ
քանի մեք խըռով պահեցաք

23 ազա։ — 45 Հօգոց։

դուն իմ սիրելի եղբայր
անդամման չարի գիպեցուք։

Խաւսիմ եւ ասեմ յիստակ
Տէր Գրիգոր եղբայր պատուական
հետ քեզ այնպէս սէր ունի
որ գիտակ Տէրըն վերնական։

Ծառայս գիտէիր վաղուց
ինչ ասեմ, եղբայր սիրական,
ծրաւի այն մարդուն լեզուն
որ մէջ մեզ ձըգեց չար նըշան։

Կամիմ հետ քեզ հաշտիլ
ով եղբայր արհի պատուական
դու ինձ թողութիւն արա
եւ միայն եմ մեղանչական։

Հայպար որ խաւսար լինի
ի լուսոյն շուտով հալածի
այնպէս երբ որ մեք հաշտիմք
թըշնամին փութով կործանի։

Ձիւնըն արեւուն հալի
եւ պայծառ գարուն կու լինի
յորժամ մեք սիրով կենամք
մեր հոգին պայծառ կու լինի։

Ղամբար մեր հոգւոյ վառի
յորժամ սէրն առ մեզ հանդիպի
բարին զըրուցի լինի
չարն ի մէնջ շուտով բաժանի։

Ճար չունիմ եղբայր բարի
քան զհաշտիլն այլ ինչ չի պիտի
իմ սիրտս ի քո շատ սիրուն
քան ըզմոմ փութով կու հալի։

---

69 հոգոյ։

Մեղաք Աստուծոյ, եղբայր,
միմեանց շատ վատ տառապանք
թէ չէր Աստուծոյ խնամքն
մեք վաղուց կորուսեալ էաք։

Յիսուս միածին Որդին
հովանի քո սուրբ աթոռին
օրհնութեան աստուածային
իջանէ քո ընտրեալ հօտին։

Նաեւ հաստատուն կենաս
լի աւուրբք բազմօք ծերանաս
այս անցաւորիս վերայ
հանապազ դու ուրախ կենաս։

Շուշանի նման փայլես
եւ հոտով անուշ դու մնաս
յաշխարհի մեղաց ծովէս
արքայութեանն պայծառ վերանաս։

Ով քաջ սիրելի եղբայր
քեզ կարօտ եմ հանց իմանաս
երբ որ քո թուղթըն տեսայ
շատ լացի հանցեղ իմանաս։

Չունիմք շատ աւուրք, եղբայր,
կամ հարիւր կամ հազար տարի
այնպէս գրեալ եմք մեք
զինչ ծաղիկ խոտէն թութափի։

Պայծառ եւ մաքուր, եղբայր,
անուանի մէջ ամէն ազգի
լեզուավրդ ճարտար հրմուտ
հաստակաւրդ զարմանալի։

---

80 կորուցեալ։ — 84 հօտին։ — 86 աւուրք։ — 95 թուխարըն, տեսա։ — 98 կամ Ճ. կամ Ռ.։

Զանազան յաշխարհիս վերայ
առաջի սիրուն հանդիպիլ.
սէրըն հոգևոր առնուլ
Քրիստոսի այնով հետևիլ։

Ո՜ երանի՜ թըղթիս
որ ըղձիդ շուտով տեսանէ
վասն իմ մոլորելոյ անձինս
որ նըստելոյ լալով կու գրէ։

Արտասուս եմ յաւժար, եղբայր.
գրեց գովել ի մէջ տանի
թէպէտ թըշնամին խաբեաց
միմեանց արար տանելի։

Վասն քո սիրուդ, եղբայր,
այս յաշխարհըս շատ յամեցի
գիտէ ծածկագէտն Աստուած
հաշտելոյ կարօտ եմ էի։

Տես որ ողորմած հոգին
ի Վաշքան[1] շուտով ծանուցից.
ապա չէր տանէն ելել
թըշնամին այլուի խափանեց։

Բարուն ես դու հրաշալի
ով եղբայր պետրդ պանծալի
ով քաջ քարտուղար ճարտար
գոհալ տառդ ի տաւուտի։

Ցանկալի ամէն ազգի
անուանի ի մէջ աշխարհի

---

109 թըխոփս։ — 126 պանծալի։ — 127 քարտուղար։

[1] Վաշքա (= Վաքայ) Լեմբերգի աւագերէցն էր, յանձին կը յիշատակուի այս չըջանին մէջ Թ. 441, Թղ. 11ր և այլուր։

ով պեւեափկորդ քաջ
Հովուապետ ի մէջ Նոյովի։

Իւանդ ցաւագար էաք
քանի որ քէնով կենայաք
այսաւր բարով հաշտեցաք
եւ չարին նախանձ ատեցաք։

Փառք եւ գոհութիւն փրկչին
որ բղձեղ շուտով հաշտեցոյց
բղձեղ ի չարէն փրկեաց
բարութեանցն իւրոց մերձեցոյց։

Քեզ է խիստ կարաւտ, եղբայր,
Վրդանէս եղբն եղկելի
խոցած է բազում նետից
գոհութիւն փրկչին Քրիստոսի։

Այս Թուղթս որ Սեբէով գրուի
Տի երթայ ի Լոռըն հանդի
Ի վանքըն Հաղպատարի
Ձեռն եղբաւրն իմ հարազատի։

Բայց երթայ գիրս խնդալի
Վաղելով նըման փայլելի
Տանողըն ուրհնեալ լինի
Աստուծոյ բարուն հասանի։

Բայց չէ պարտ այս Թուղթս բացուի
Մինչեւ որ իւր տէրըն հասնի
Ի ձեռըն վարդապետի,
Բանիբուն քաջ հեռետորի։

Հետ այս նամակիս եղբայր
Աստուծոյ բարին առ քեզ հասնի.

---

132 Հովուայպետ։ — 140 իւրոյ։ — 145 Թուխտս։ — 146 երթա։ — 153 Թուխտս։

Հազար երանի թըղթիս
Որ հետ քեզ մտերիկ կու խօսի։

Հանի՛ արագ թուղթս բարով
Ի քաղաքըն չէն որ է Լօռ.
Ի ձեռն եղբաւրս տանելով
Իւր անունըն արհի գոյով։

Թուղթըս որ կարդաս ձայնով
Սիրտդ թող ցընծայ խընդալով
Թէպէտ մեղաւոր եմ ես
Թողութիւն արա դու սրտով։

## 5.

### ՏԱՂ ԱԶՆԻՒ ԵՒ ԳԵՂԵՑԻԿ ԵՒ ՅԱՐՄԱՐ

Այրէն մինչեւ ի քէն քեզ գոհութիւն, Տէր,
Բարեաց քոց գոհանամք, յաւիտենից Տէր,
Գովեալ փառաւորեալ Երրորդութիւն, Տէր,
Դու ես երեք անձամբ եւ մի բնութիւն, Տէր,
Երկրէս մինչեւ յերկինս քեզ գոհանամ, Տէր,
Զի դու ես ստեղծեր եւ արարեր, Տէր,
Էիցըս բարութեանց գոյացուցիչ, Տէր,
Ընդհանուր աշխարհաց դու ապաւէն, Տէր,
Թագաւոր եւ իշխան Յիսուս Քրիստոս, Տէր,
Ժառանգ դու զիս արա արքայութեանդ, Տէր,
Իմաստուն զիս արա սիրել ըզքեզ, Տէր,
Լուսաւորեա՛ միտքս զքեզ տեսանել, Տէր,
Խոստովանիմ ըզքեզ եւ հաւատամ, Տէր,

---

159 Թղխոյ։ — 161 յարագ, Թուխթս։ — 165 Թուխոս։ — 168 արայ։

Ձեռ—էէլ․ Թ. 3 Տաղարան Հ. Վ. Սահակեանի, էջ 185—187։

8 Ընթանուր։ — 10 արքաութեան։

Ծարաւ եմ ես ջրոյդ, զիս զովացո՛, Տէր,
Կենդանարար Քրիստոս կեցո՛ հոգւով, Տէր,
Հոգւովս եմ ես հիւանդ, զիս բժշկեա, Տէր,
Ձայնիւս հառաչանաց քեզ պաղատիմ, Տէր,
Ղամբար հոգւոյս վառեա անշիջելի, Տէր,
Ճանապարհիդ կենաց հետեւեցո՛, Տէր,
Մաքրեա՛ զիս ի մեղաց եւ սուրբ արա՛, Տէր,
Յամենայն ժամ զիս պատրաստ արթուն պահեա, Տէր,
Նըստել եւ ի յառնել ընդ քեզ աւրհնեմք, Տէր,
Շնորհօքդ առատաձայնին զիս լիացո, Տէր,
Որ միշտ եւ հանապազ ընդ քեզ աւրհնեմք, Տէր,
Չունիմ ես բարի գործ որ պարծենամ, Տէր,
Պարծանք ընդ քեզ ունիմ Յիսուս Քրիստոս Տէր,
Ջնջեա զգիրըն կենաց զոր գրեցի. Տէր,
Ռատ է քո պարգեւք արժանացո՛, Տէր,
Սիրտս յաժարեցո՛ ընդ քեզ սիրել, Տէր,
Վերստին հաստատեա՛ եւ մաքրացո, Տէր,
Տեառդ առատաձայնին արժանացո՛, Տէր,
Րամեալքս գալստեանդ զիս նորոգեա՛, Տէր,
Ցնծամ ուրախանամ երբ զքեզ յիշեմ, Տէր,
Իւանդ հոգիս քենով առողջացո՛, Տէր,
Փառք քեզ Հայր եւ Որդի եւ սուրբ Հոգի, Տէր,
Քեզ վայելէ պատիւ իշխանութիւն, Տէր,
Մեղաւոր Վրթանէս ի քէն խնդրէ, Տէր,
Մի թողուր ի ձեռաց եւ մի մերժեր, Տէր,
Յիշեա եւ այց արա քո գալստեանդ, Տէր,
Անմահ արքայութեանդ արժանացո, Տէր,

---

14 ջրոյս: — 15 հոգով: — 16 հոգովս: — 18 հոգոյս: — 9 Ճանապարհիս: — 23 շնորհօքս առատաձայնին: — 28 պարգեւս: — 31 առատաձայնին: — 40 արքայութեան:

## 6.

### Ի ՎՐԹԱՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏԷ ԱՍԱՑԵԱԼ ԲԱՆՔՍ ԱՅՍ

*Ոմն մեծատուն ունէր Քարոզգիրք՝ Մեկնիչ արարածոց ամփոփապատ եւ գեղեցիկ, ոչ գիտեր գիր եւ ոչ կարդալ, եւ ոչ տայր մարդոյ կարդալ որ ուսանէին:*

Մէկ մարդ մի ճրրագ վառեր
Բարձր ի տեղ դրեր.
Մէկ մի խիստ յիմար եղեր,
Ըզճրրագն ի վայր է առեր,
Տարեր ունատունկն է դրեր,
Ըզնորին լոյսն էր արգիլեր.
Վա՜յ այն մարդուն հոգւոյն,
Որ ըզլոյսն առեալ թագուցեր. .

Մէկ մի ծովուն տակն իջեր,
Ի ծովէն մարգարիտ հաներ,
Կուրաց լոյս է տուեր,
Բազում՝ ցաւքն էր փարատեր.
Մարդ մ'այլ հակառակ եղեր,
Զմարգարիտն առեալ թագուցեր.
Վա՜յ այն մարդուն հոգւոյն,
Որ զմարգարիտն է թագուցեր.

Մէկ մի Աստուծոյ համար
Լեռնէն աղբիւր է բերեր.
Մէկ մի չարութիւն արեր,
Գրնացեր աղբիւրն արգիլեր,
Ժառանգք ծարաւած թողեր,
Ծարաւուն բազումք են մեռեր:
Վա՜յ այն մարդուն հոգւոյն եւ գլխոյն,
Որ արեան պարտաւոր է եղեր.

---

Հրատարակութիւն՝ Մասեաց Աղաւնի 1863, էջ 264—265.

16 Լի՞ն որ... է:

Մէկ մի քաղաքի մէջի
Գեղեցիկ ջրհոր մ'էր շիներ,
Եւ այն պաղ անուշ ջրէն
Մարդիկ էր զովացուցեր։
Մարդ մի հակառակ եղեր,
Զջրհորին բերանն էր խփեր.
Զմարդիկ ծարաւած թողեր,
Քաղաքին ուներ կամեցեր.
Զինչ մարդ որ ծարաւ մեռեր,
Արեան տէր իւր փակողն եղեր։
Հազա՛ր վայ անոր հոգւոյն,
Որ ըզջուրն տարեալ թողուցեր։

Մէկ մի իւր հոգւոյն համար
Գեղեցիկ դրախտ էր տընկեր,
Եւ այն դրախտի բոլորն
Ամենայն պարիսպ հաստատեր,
Եւ զդուռն ամուր փակեր,
Զբանալիքն ի դուռն էր կախեր,
Եւ այն բանալոյն վերայ
Զբանալուն ճարակն ուսուցեր։
Ով որ այն դրանովն անցեր,
Զբանալոյ գիրքն կարդացեր,
Ըզդուռն շուտով բացեր
Ի դրախտին մէջին շուրջ եկեր,
Առեր ի պտղոյն կերեր,
Այն պտղովն էր անմահացեր,
Տարեալ նա բազմաց բաշխեր,
Ով կերեր է ըղնա՝ անմահացեր.
Եկեր ողորմելի ասեր
Զայն դրախտին տընկողն էր օրհներ։
Օրհնեա՛լ եղիցի այն մարդն
Որ դրալէքըն չէր թողուցեր։

Մէկ մի հակառակ եղեր,
Զայն մարդոյն վարձքըն խափաներ.

---

41 ըզդուռն։ — 47 բաշուեր։ — 58 խափանէր։

Զբալլիքըն առեալ պահեր.
Ոչ ինքըն ոչ այլ ոք չահեր:
Ով ոք այն գրանդամն անցեր
Զբանդալեաց պահողն անիծեր.
Աստուած անիծեր զայն մարդն
Որ զբալլիքըն ի տունն է պահեր:

Մէկ մարդ մի պաղչա չինէր,
Զանազան ծաղկամբ զարդարեր.
Ով ոք որ պաղչան մըտեր,
Նա ծաղկանց հոտոյն էր արբեր:
Մէկ մի հավկաւուկ եղեր,
Զպաղչային դուռն ամրացուցեր,
Զինքըն անուշ հոտոյն զըրկեր,
Եւ զայլ ոք եւս էր նա զըրկեր:

Մէկ մարդ մի լեռն էր ելեր,
Լեռներէն ծաղիկ ժողովեր,
Առեալ ի մէկ տեղ բերեր,
Զանազան ցաւոց դեղ չիներ,
Տարեալ խանութ մի դըրեր,
Հաքիմի և ապրապըրեր,
Թէ ավ ոք զայ դեղ ուզէ
Մի խընտայեր տուր.
Մարդ մի վատութիւն արեր
Ըզդեղըանըքըն ամանովն էր առեր
Տարեալ ի տունն իւր պահեր,
Զհիւանդաց մահն է կամեցեր:
Մէկ ճարտար բժիշկ մ՚եկեր,
Զդեղերուն անունն իմացեր,
Զդեղըանըքըն ի նմանէ առեր,
Աստուծոյ համար էր բաշխեր.
Աստուած հանց շնորհք է տուեր
Որ դեղըանըքըն չէր պակասեր,

59 բլբուլիքն. պահէր: — 60 չահէր:

Ով որ այն գեղէն առեր,
Է՛ առողջացեր։

Մէկ մեծ թագաւոր մ՚եղեր,
Որ նորման նման չէր եղեր.
Քաղաք մի արձակ շիներ,
Զայն քաղաքըն մարդով լըցեր.
Մէկ մեծ չար վիշապ մ՚եղեր,
Անդընդոց ի վեր է ելեր,
Քաղաքըն ամէն շուրջ եկեր
Եւ զմարդիկըն վիրաւորեր.
Զամանս ի հիւանդ ձգեր,
Զամանս մահուամբ սատակեր.
Քաղաքըրն յիրար դիպեր,
Այն բանին ճարակ չէր գըտեր։
Մէկ մի քաղաքէն ելեր
Զհայրենիքըն ամէն բաց թողեր,
Մերկիկ եւ բոկիկ եղեր
Գընացեր լեռներըն ելեր։
Մէկ բարձր լեռն մի գըտեր,
Որ երկնից էր հաւասարեր,
Այնչափ աշխատանք տարեր
Որ լեռան գըլուխն է ելեր.
Ի հոն շատ տարիք կացեր,
Արտասուօք զԱստուած աղաչեր.
Այնչափ աղաչանք արեր
Որ զԱստուած մարդն է բերեր.
Աստուած ի նըման հարցեր
Թ՚ինչ բանի խընդիրք ես եկեր.
Նա էր պատասխանի տուեր
Թէ քաղաքին համար եմ եկեր.
Վիշապ մ՚անդընդոց ելեր,
Քաղաքին շատ վընաս արեր.
Զամանս է վիրաւորեր,

118 Թէ։ — 121 մի։

Զամանս մահուամբ սատակեր.
Քաղաքըն է տարակուսեր,
Ընձարակ ի վայր մնայեր.
Իջեր ի քեզ եմ եկեր,
Ընձարակին ճարակ դու եղեր։
Աստուած նորա ողորմեր,
Եւ գլխնդիրքըն շուտով տուեր։

Վա՜յ այն մարդուն հոգւոյն
Որ ըզգեղն առեալ թողուցեր։

Եկեր ի քաղաքըն իջեր,
Եւ մարդոցն ամէն քարոզեր.
Ով որ քարոզին լսեր,
Ի ցաւէն շուտով ազատեր.
Ոմանք որ չէին լսեր,
Քարոզին մտիկ չէր արեր,
Նոքա են հիւանդ ընկեր,
Զարաչար մահուամբ սատակեր։
Ամէնս ալ արիացեր,
Վիշապին գլուխն է կոխեր,
Ընդէն պարգևերս եղեր,
Երկընից կամարն է ելեր.

Այն մարդն որ քարոզ տուեր,
Ցեղ ու ցեղ գեղըանք էր գտեր,
Գըրեր մէկ մեծ գիրք կայեր,
Հոգւոյն յիշատակ թողեր։
Ինչ մարդ աշակերտ եղեր,
Այն գըրոց բանէն ուսեր.
Մէկ հոգի աստուածասէր
Այն գըրէն մէկ գիրք մի գրեր,
Առեալ իմաստնոց տուեր,
Գիտունոց ձեռօք է այրեր։

---

127 Ե. եմ ի ք. եկեր եմ։ — 130 տուեր։

Վա՜յ այն մարդուն հոգւոյն
Որ գոյն գիրքըն առեալ թաղուցեր։
Փոքր ինչ ժամանակ անցեր,
Մէկ անգէտ մարդոյ ձեռք անկեր,
Տարեալ ի պահեստ դրեր,
Զաշխարհի լոյսըն թաղուցեր։
Նայ մէկ գիտուն մ՚եկեր
Զայն գրքին համբաւն է առեր,
Առեալ եւ քարոզ արուեր,
Շատ մարդոց օգուտ է եղեր։
Այն մարդըն անդիտացեր,
Գրնացեր շատ մարդ ժողովեր,
Եկեր եւ տուէ արեր
Թէ մեր գիրքըն ընդէ՞ր ես առեր.
Նոցա շատ խըրատ արուեր,
Թէ պարտ չէ գոյդ ըղկիըրըդ պահել.
Վա՜յ այն մարդուն հոգւոյն
Որ ըղկիրքըն առեալ է պահեր։

Ով որ գիրք փակած պահէ,
Իւր հոգւոյն կորուստ կամեցեր։
Նոքա են հակառակեր
Թէ գոյդ գիրքըդ քեզ չենք թողեր,
Պիտի որ մեր ձեռքըն առա
Մեզ վաղուց հետէ մընացեր.
Դեռ չեմք մարդոյ ցըցուցեր,
Ուշ այլոց ձեռքըն եմք մըտեր։
Պարձեալ պատասխան արուեր,
Թէ ըղկիրքս ձեզնէ չեմ խըլեր.
Քիչ մի թող ինձ մօտ կենայ,
Շատ բաներ է ինձ պէտք եղեր.
Որչափ իմ մօտըս կենայ,
Ձեր հոգւոյն շատ շահ լինենայ,
Ապա թէ առնուք պահէք,

180 ձեռք։

## 7.

*Տաղ Վրդանէս վարդապետի ասացեալ յաղագս նոր վկային Քրիստոսի սուրբ Պարոն Լեւոնի, որ տղայ հասակաւ նահատակեցաւ ի քաղաքն Կաֆա։*

Հայաստանեայց հազար թըւին
Եւ տասնուվեց աւելորդին
Քաջ նահատակ մի ընտրեցաւ
Աստուածաշէն Կաֆա քաղքին։

Սուրբ Պարոն Լոյս անուն նորին
Շառաւիղէ Հայոց զարմին
Դաւանութեամբ Լուսաւորչին,
Եւ Քրիստոսի արեանըն գին։

Եւ իւր ծընողքն էին բարի
Աստուածասէր եւ հոգելի,
Ամենեցուն յոյժ պիտանի
Աստուածատուր անուն կոչի։

Ինքն էր ամաց տասն եւ ութին
Երբ անաւրէնքըն բըռնեցին.

---

Ձեռագիր՝ Թ. 797, թղ. 70բ—75ա (Զ. Կ. 108բ—114բ) A։
344, թղ. 213ա—220ա B։
281, թղ. 91ա—93բ. Էջմ. Գ.ե. l։
283, թղ. 109ա—115բ. Էջմ. Գ.ե. m։
Հրատարակութիւն՝ Հայոց նոր վկաներ. էջ 401—408 N։

Խորագիր՝ ա. վասն Վրդանէս... Կաֆայ A։ ա. պարոն Լոյս նահատակ մանկանն որ կատարեցաւ ի յաշխարհն Հռոմայ ի մայրաքաղաքն Կաֆա՛ ի Վրդանէս վարդապետէ ասացեալ B։ ա. պ. լուս նահատակին ասացեալ ի Վ. վ. lN։ ա. պ. Լուսին ի յաստուածա-շէն Կաֆայ քաղաք նահատակեալ m։

1 Հայաստանեայց BN թվին B։ — 4 ածայ-շէն A Կաֆայ BN։ — 9 ծընաւղքն ABN։ — 10 աս-տուածայսէր A։ — 13 ԺԸ-ին A ութից Nm։ —

Տարան՝ առջեւ գառաւորին
Թէ տաճկացաւ սա յեռանդին։

Նա գառաւորն բղխա հարցաւ
Թէ ինչ կ'առնես վասն այս բանին.
Դու տաճկացեր ես կեղլովին
Յէր չես հաւնիր մեր հաւատին։

Սուտ վըկաներն յառաջ եկին,
Կանգնան դիմաց գառաւորին
Թէ մեք վըկայ եմք այս բանին
Որ հաւատաց մեր աւրէնքին։

Յորժամ հարցան Պարոն Լուսին
Երանելի նահատակին,
Պայծառացաւ դէմքըն նորին
Որպէս սրբոյն Սանփանոսին։

Արիաբար պատասխանեաց
Ընտրենաց հրապարակին
Թէ ես ծառայ եմ Քրիստոսի
Դաւանութեամբ Լուսաւորչին։

Նա անօրէնքըն կատղեցան
Քան զշուն գայլն 'ւ այլ աւելի,
Եւ պատառմանս կըրճըտէին
Ի վերայ սուրբ անմեղ գառին։

Սուրբ Պարոն Լոյսըն զաւրացաւ
Պատասխանի տանէր նոցին.
Ոչ երկընչէր ի նոցանէ,
Վառեալ էր սէրն աստուածային։

---

16 սայ A եռանդին AN։ — 17 զնայ A։ — 18 բանիս BN։ — 20 էր Nm օրէնքին Nl։ — 21 վըկայներն B։ — 22 կանգնեցան դէմ A։ — 23 մենք N։ — 28 Սան-փաննոսին Al։ — 31 Քրիստոսին Nm։ — 33 կատաղե-ցան Nl։ — 34 'ւ չէ BN յայլ B։ — 37 լուսըն Al։ — 38 պատասխանին B։

Ընթիւ Տաճիկ ժողովեցան
Սուրբ Պարոն Լևոն ի մէջ առին
Ոմանք ըզգլուխըն ծեծէին
Ոմանք զերեսըս կըռփէին։

Հինգն յունուարի ճրագալուցին
Սուրբ Պարոն Լևոնըն ըռնեցին
Մինչ ի մայիս տասն և հընգին
Բանդ և զընդան զնա պահեցին։

Բազում անգամ զնա հարցուցին,
Պէսպէս պարգևուք խոստանային.
Ոչ հաւանէր անձնեւին
Զի 'նա ընակեալ էր սուրբ Հոգին։

Շատ Տաճիկներ ժողովեցան
Գնացին ի դուռըն պարոնին
Ասին Պարոն է տաճիկըներս
Թէ սիրելին ես Մահմետին։

Երբ զՊարոն Լևոն յառաջ բերին
Դէմքըն էր պայծառ զինչ արևուն.
Նա աներկիւղ պատասխանեաց
Թէ ես ծառայ եմ Քրիստոսի։

Շատ զանազան պարգևք ասին,
Բըռնու. շարժել չըկարացին.
Յետոյ տանջանք ըսպառնացան
Նա ոչ այնու զնա յաղթեցին։

41 տաճիկ A։ — 42 յուռն ABl։ — 45 հինկն A հինկ N յունվարի AN յունո^ւարին B։ — 46 երբ զպարոն B յուսըն Al։ — 47 հընկին N հինգին A։ — 48 բանտ BN փակեցին A։ — 52 ի° նա B նմա Nm։ — 53 տաճկըներ BlN ժողովեցին Nl։ — 55 ասեն Nl տաճկըրցըներս BN։ — 56 սիրելի BN մահմետին N։ — 58 զէրդ B զէս N։ — 59 նայ Al։ — 60 քրիստոսին N։ — 62 ոչ mN։ — 63 յայնու B։ — 64 զնայ A։

Իշխանն ասաց Պարոն Լևոնին.
Ե՛կ հաւանիր մեր աւրէնքին
Թէ չէ կու տամ ըղքեղ դահճին
Որ կու մատնէ ըղքեղ սըրին։

Սուրբ Պարոն Լյոնն զաւրացաւ
Զի բընակեալ էր սուրբ Հոգին
Որպէս փըրկիչըն մեր ասաց
Յառաջագոյն 'սուրբ կըտակին։

Պարոնն ասաց Տաճիկներուն
Թէ հարբած է ամենեւին.
Տարէք դըրէք բանդըն ներքին
Մինչեւ ի վաղն առաւաւտին։

Պիղծ անաւրէնքըն խորհուրդ արին
Ըսեն Երթամք մուտ ի մուփտին
Գնացին ասին դանուշմանին
Թէ ճարըն դու ես այս բանին։

Պատասխանի ետ ամբոխին
Թէ իմ գըլուխն ի յայդ ճամփին
Թէ չի դառնայ նա քըրիստոնէն
Ես սպանանեմ ի հանդիսին։

Մի երկընչիք ամենեւին,
Գնացէք բերէք իմ առաջին,
Ես հարցանեմ պատասխանի
Մի թէ լինի որ հաւանի։

---

67 տամք A։ — 68 զքեզ B։ — 99—72 չկ Bm։ — 73 տաճկըններուն BN։ — 74 էք mN։ — 75 բանդըն BNl։ — 77 պեղծ Bm անօրէնք N։ — 78 երթանք BN մուֆթին Nm։ — 79 դանիշմանին BNm։ — 80 առան B։ — 81 ամբոխին A։ — 82 ի այդ Am ճանփին BN։ — 83 չէ B նայ A ա B նա չկ Nl ի քրիստոսէ BN։ — 84 ըսպանեմ Nm։ — 86 յիմ B։ — 87 պատասխանին Nm։

Գնացին բերին առջեւ մուփտուն
Սուրբ Պարոն Լոյսն գաւակ բարին,
Սա խրնդութեամբ յառաջ երթայր
Որպէս փեսայ առագաստին։

Պատասխանի ետ չար մուփտին
Երանելի Պարոն Լուսին
Թէ եկ դարձիր քո հաւատոցդ
Եւ հաւանիր մեր աւրէնքին։

Ըզքեզ պատուեմք ցինչ մեր որդին
Ըզքեզ մեծեմք ի յուրբաթին
Թէ չի հաւնիս դու մեր բանին
Ըզքեզ կու տամք ի կեր որդին։

Երբ Պարոն Լոյսըն զայս լըսեց
Ոչ վախեցաւ ամենեւին
Զի 'նմա ընակեալ էր սուրբ Հոգին
Տաճար կազմեալ երկնաւորին։

Սուրբ Պարոն Լոյսն զբերանն երաց
Պատասխանեաց ի հանդիսին
Թէ ես ծառայ եմ մեր հաւտին
Չեմ հնազանդիր ձեր աւրէնքին։

Յայնժամ ապտակ էած մուփտին
Երեսըն սուրբ Պարոն Լուսին
Ալլ տուեալ պայծառացաւ
Երեսըն սուրբ Պարոն Լուսին։

---

89 մուֆթին Nm։ — 90 լուսն A լուս B լոյս N։ — 91 նա BNl։ — 92 յառագաստին BNl։ — 93 մուֆ-թին Nm։ — 94 Ե. նահատակին B։ — 95 հաւատոյդ Nl։ — 97 պատվեմք A ցերդ BN ցէս l։ — 99 չհաւ-նիս BNl։ — 101 յերբ BN։ — 103 նայ A զ' ի N։ — 105 արխարար զբ. BN լուսն A ի բաց BN։ — 106 եմ քրիստոնի BN։ — 110 յերեսըն BNl։ — 112 յերեսըն N սուրբ նահատակին B։

Ասին թէ զքեզ կրակով կ'այրենք.
Ասաց ես տամ ըզգին փայտին.
Ասին որդով կու պատանեմք.
Ասաց յաւժար է իմ հոգին։

Դարձեալ տարան տանըն Կրնային
Ուր տախտաներ բընակէին.
Բարձրք ձայնիւ բողոքէին
Աղաղակաւ սրտային։

Բարի ծրնողքըն լըսեցին
Թէ զՊարոն Լոյսըն բռնեցին
Աղաղակաւ գուքս վազեցին
Լալով գնացին ի յատենին։

Յայնժամ ծրնողքըն վարեցին
Ըզքրիստոնեայքըն հալածեցին
Մեծ արքունութիւն եղեւ քաղքին
Որ արտասուաւք գետեր հանին։

Դարձեալ տարան ի բանդն դըրին
Մահու վըճռին նըման հատին
Մինչ ի մայիս տասն եւ հընգին
Ապա որդով գըլխատեցին։

Կատարեցաւ մեծ նահատակն
Սուրբ Պարոն Լոյս արդար հոգին
Մայիս ամսոյ տասն եւ հընգին
Յետ Համբարձման հինգշաբաթին։

113 թէ չէ BN ըզքեզ BN կայրեմք Nm։ — 114 զգինն B զինըն N։ — 115 կր Nl։ — 117 գընտին BN։ — 118 տաւխտայնեըրըն B տախտաներըն Nl։ — 121 ծնաւղքն ABN։ — 122 պարոն N լուսըն A բմբռնեցին BN։ — 124 ի այն ատեղին Nm։ — 125 ծնաւղքն ABN։ — 126 զքրիստոնէայսն B։ — 128 արտասուէ BNl։ — 129 բանդ A բանտըն BNl։ — 130 հատուցին B։ — 131 ժեին A հինգին B տասնուհընկին N։ — 133 նահատակ N։ — 134 լուսն A լուս B։ — 135 ժեին A հինգին B տասնուհընկին N։ — 136 հինկ AN։

Սուրբ Պարոն Լևոն, քեզ երանի
Եւ քո ծնողացդ որ են 'մարմնի
Դու Քրիստոսի վըկայեցար
Պարծանք եղար Հայոց ազգի։

Քեզ երանի կամիմ քաղաք
Եւ նոր նըշան քեզ երեւին
Քո քահանայքըն ժողովին
Տօնենն ըղատւն Պարոն Լևոնին։

Սուրբ Պարոն Լևոն նոր մարտիրոս
Եւ նոր վըկայ դու Քրիստոսի
Երկինք 'ւ երկիր ուրախանան
Ըզքեզ գովեն անձնեկրեան։

Գունդք Հրեշտակաց ուրախանան
Ըզքեզ յիշեն անձնեկրեան
Երկնից յերկիր վայր իջանեն
Ըզքեզ տանեն եկեղեցին։

Ուրախանայ Հայրըն վերին
Վարդն արեան քո հանդիսին
Դասք Հրեշտակացըն ժողովին
Ըզքեզ պսակեն ի մէջ նոցին։

Դասքըն սրբոցըն ժողովին
Ուրախանան ի միասին

137 լուս Al։ — 138 ծնողացդ Am ծնողացն BN։ — 139 վըկայ եղար Bm վ. եղեր Nl։ — 140 ազգիս B ազգին N։ — 141—144 չէ գտնւ ըստ հել ա. 168—169 B։ — 142 կամփայ BN որ նոր N երեւի BN։ — 144—145 հոս չէ գտնւն Nl 169—172 տողերը։ — 145—188 տողերը չկան m։ — 145 լուս AN։ — 146 վըկա́ A։ — 147 ու A չէ BN ուրախացան BN։ — 149 ուրախա-ցան N։ — 150 անձնեաեան B։ — 151 յերկնից B երկիր N վայր չէ N իջանէին N։ — 153 ուրախանա́ Al։ — 154 որ վարդն արեանն ի հանդիսին N։ — 155 ժո-ղովէ B։ — 156 պսակին A պսակէ B։ — 157 դաս-քըն B։

Այլ եւ սիրով փոխարկողին
Եւ հաւատով ընդունողին
Յերկրէ յերկիր տարածողին
Եւ բարեմիտ ունկընդրողին։

Քրիստոս Աստուած Տէրն երկնային
Դու ընտրեցեր քո սիրելին
Արդ ողորմեա ամենեցուն
Աղաչանաւք քո ծառային։

Ով զՊարոն Լյո վերկոյն յիշէ
Եւ կամ նուէրք տացէ նորին
Քրիստոս յիշէ զինքն ի բարին
Եւ իւր ամէն մեղքըն քաւին։

## 8.

### ՏԱՂ ՆՈՐ ՆԱՀԱՏԱԿԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ

*սուրբ Պարոն Լեւոնի, ի Վրդանէս վարդապետէ ասացեալ:*

Աստուած Հայր երկնաւոր զքեզ գոհանամ տէր-
որ դու զաւրացուցեր ըզքո ծառայն տէր
զՊարոն Լյո նահատակն սիրեցեր տէր
որ մարտիրոսացաւ առ քեզ եկաւ տէր։

---

206 ընդունաւղին B։ — 208 ունկընդրաւղին B։ — 209 ակր Nm։ — 210 զքո Nm։ — 213 պարոն B։ — 214 նուէր BNm։ — 215 զինքըն բարին Nm։ — 216 քանն BNm յանցողին B յանցողի Nm։ — Ի [illegible] B

Եւ ընդ նորին զախմար զըրջակս
Պեղուսա անուն սուրբ 'ւ անապիտանս
Եւ որ ըզմեզ յիշէ յաւետամ
Արքայութեան լինի յարժանս։

Ձեռագիր՝ Թ. 797, Թղ. 190բ—193բ (Զ. Կ. 279բ—283ա) A։
344, 220բ—226բ B։
Հրատարակութիւն՝ Հայոց նոր վկաներ. էջ 396—400 (Bէն) N։

Խորագիրն չունի B։ — 4 եկեալ B։

*Բազում ազգ եւ ազինք ըղձիւք աւրհնեն տէր*
*յորժամ լըսեն զՀանդէս քո ծառային տէր*
*խընդան 'ւ ուրախանան հոգւով ըղձեան տէր*
*զՊարոն Լոյս նոր վըկայն յորժամ յիշեն տէր։*

*Գովեն ազգ եւ ազինք ըղձիւք պատուեն տէր*
*զՊարոն Լոյս նոր վըկայն յորժամ յիշեն տէր*
*զի ութեւտասն ամաց նա գաւրացաւ տէր,*
*յաղթեաց սատանայի եւ վերացաւ տէր։*

*Դուռն կենաց Աստուած Յիսուս Քրիստոս տէր*
*դու ընտրեցեր այսաւր ըղձքո ծառայն տէր*
*անթառամ պըսակաւ զարդարեցեր տէր*
*զՊարոն Լոյս նոր վըկայն դու կոչեցեր տէր։*

*Երջանիկ պատուական եւ գովական տէր*
*երանելի ընութեան Երրորդութեան տէր*
*զՊարոն Լոյս նոր վըկայն դու ձայնեցեր տէր*
*անուանի մարտիրոս զնա արարեր տէր։*

*Զաւրացաւ Պարոն Լոյսն ի յասենի տէր.*
*պատասխանի տայեր Հոգւով սըրբով տէր*
*յորժամ հարցանէին ոչ երկընչէր տէր*
*այլ դաւանէր զԱստուած Յիսուս Քրիստոս տէր։*

*Էակից փառակից Հօր եւ Հոգւոյ տէր*
*դու լոյս եւ ճըշմարիտ կենդանարար տէր*
*զՊարոն Լոյս նոր վըկայն մեծարեցեր տէր*
*յերկիրէ յերկինս տարար եւ պատուեցեր տէր։*

---

7 հոգով A հոգւոյ N։ — 8 պարոն A։ — 10 պարոն A։ — 11 ժԸ A ժ. եւ Ը B նայ A։ — 17 [illegible] B։ — 19—20 [illegible] B

*Երկին 'ւ երկիր ամէն դու արարեր տէր*
*այսաւր ըղձքո ծառայն զաւրացուցեր տէր,*
*աւր ըր պարոն լոյս վըկայն դու սիրեցեր տէր։*

21 յասենին B։ — 22 հոգով A։ — 25 հօգոյ A հօր եւ որդոյ B։ — 27 պարոն A ըզպարոն B նոր [illegible] B։

Ընտրեցեր զքո ծառայն եւ օծեցեր տէր
բնաւիք եւ անուանի զնա արարեր տէր
եւ ի յանուրինացն ազատեցեր տէր
Հրեշտակաց հաւասար զնա կացուցեր տէր։

Թագաւոր երկնաւոր Յիսուս Քրիստոս տէր
Պարոն Լեւոն նոր վըկայն քեզ բարեխօս տէր
ըզմեզ դու ազատեա յանուրինաց տէր
բարեաց արժան արա եւ ողորմեա տէր։

Ժամանակի բարւոյ պատահեցուք տէր
ուրախութեամբ ձայնիւ ըզքեզ ուրհնեմք տէր
սուրբ Պարոն Լեւոն վըկայն առ քեզ միջնորդ տէր
զի զմեզ ազատեսցես յամէն չարէ տէր։

Ի քենէ զաւրացաւ հաստատեցաւ տէր
անաւրինաց յաղթեաց եւ քաջացաւ տէր
ըզմեզ ուրախացոյց հոգւով մըտաւք տէր
սուրբ վըկայն Պարոն Լեւոն պարծանք եղեւ տէր։

Լուսաւորիչըն մեր երեւեցաւ տէր
Պարոն Լեւոնն առաց մի վախենար տէր
Քրիստոս քեզ օգնական եւ պահապան տէր
այլ եւ ըզքեզ յիշէ Հայրն երկնաւոր տէր։

Խաչեալ Քրիստոս Աստուած զքէն գոհանամ տէր
որ նոր ծաղիկ բուսաւ ի քո խաչէն տէր
պայծառ եւ գեղեցիկ երեւեցաւ տէր
նոր վըկայն Պարոն Լեւոն քեզ քաղցրացաւ տէր։

Ծառայն քո պատուական գեղեցկացաւ տէր
որպէս զառն անարատ ընծայեցաւ տէր

---

29 զքո չունի B ըզծառայն B։ — 31 անուրինացն A յանօրինաց B։ — 35 ազատեայ անուրինաց A։ — 36 ողորմեայ A։ — 37 բարոյ A։ — 40 զի չունի B ազատեսցէ B։ — 41 քէնէ B։ — 42 յանուրինաց A քաջացաւ A։ — 43 այս տողը չունի B հոգով A։ — 49 զքեզ A։

զի զվարդագոյն արիւնն եհեղ յերկիր տէր
մարտիրոս կոչեցաւ եւ քեզ վկայ տէր։

Կամաւոր պատարագ քեզ մատուցաւ տէր
կամաւ յաւժարութեամբ ընդ քեզ սիրեաց տէր
կենդարար ձայնիդ հետեւեցաւ տէր
կենացն յաւիտենից ժառանգ եղեւ տէր։

Հաւատոց քո բանին բոլոր սրտով տէր
հաստատեցաւ յաւսով որպէս վկայ տէր
հայաստանեայց ազգի պարծանք եղեւ տէր
համբերէն ընտրելոցն գտանեցաւ տէր։

Ձայնիւ աւետաւոր զմեզ կոչեցեր տէր
ձայնիդ հետեւեցաւ քո սուրբ ծառայն տէր
ձգմտնացեալ ժամանս ծաղիկ բուսաւ տէր
որպէս վարդ մանուշակ երեւեցաւ տէր։

Ղամբարափայլ ջահիւք պայծառացաւ տէր
ղեկավար եւ ճարտար երեւեցաւ տէր
ղեկաւք զնով աշխարհիս ցաւաք անցաւ տէր
ղեկավարիդ կենաց արժանացաւ տէր։

Ճանապարհիդ կենաց հետեւեցաւ տէր
ճշմարիտ մարտիրոս գըլխատեցաւ տէր.
ճշմարտութեան բանին սիրող եղեւ տէր
ճշմարտութեան կենաց արժանացաւ տէր։

Մանուկըն Պարոն Լոյս դու ընտրեցեր տէր
մանուկ քաջ եւ յաղթող զնա արարեր տէր
մանուկ տիաւք ալեւոր զնա կոչեցեր տէր
մանկանց առաջաւորի զնա դասեցեր տէր։

55 յերկիր եհեղ B։ — 60 եղաւ B։ — որդամէ B։ — 63 եղաւ B։ — 65 զքեզ B. — 66 ձայնիւ A։ — 67 ժամնյս B։ — 69 ղամպարափայլ A։ — 70 [illegible] B։ — 71 ծով A ցաւաք B։ — 72 ղեկավարիս A հետեւեցաւ B [illegible] B զօղեալ ընդ այլ տողոց հետ վերացաւ տէր։ — 73 Ճանապարհիս A։ — 78 յաղթաւղ դու ա. B։ — 80 մանկանցն B։

Յաւիտենից Աստուած գիտէն գոհանամ տէր
յաւիտենան յաւիտենից բարեաց պատճառ տէր
յաւիտենից յառաջ դու ընտրեցեր տէր
յաւիտենից կենաց ժառանգ արեր տէր։

Նախանձելի սիրով բորբոքեցաւ տէր
նախանձ բարի բուռաւ առ քո ծառայն տէր
նըմանեցաւ սրբոյն Անտիփանոսի տէր
նըմանեալ Աբելին քեզ հաճեցաւ տէր։

Շնորհաւք թագաւորիդ նա զաւրացաւ տէր
շնորհաւք Հոգւոյդ սրբոյ պարգեւեցեր տէր
շնորհաւք պայծառագոյն գեղեցկացաւ տէր
շընորհաւք իմաստութեամբ պատասխանեաց տէր։

Ուրախութեամբ ձայնիւ երգարանեմք տէր
ուրախալի գինւոյ զուարճանամք տէր
ուրախութեամբ յիշեմք ըզքո ծառայն տէր
ուրախացան այսաւր զաւրք երկնային տէր։

Զարչարանաւք իւրովք քեզ հաճեցաւ տէր
չարչարանքից եղեւ հաղորդ գրաւու տէր
չարեաց անաւրինաց յաղթահարեաց տէր
չարեացըն համբերեաց բարեաց հասաւ տէր։

Պսակակից եղեւ քո ընտրելոց տէր
պըսակըն անթառամ դու շնորհեցեր տէր
պարծանք քրիստոնէից զնա արարեր տէր
պայծառագեղ փառաւք զնա հանդուցեր տէր։

81 գոհանամք B։ — 83 յաւիտենից A զնա B։ — 84 արարեր B։ — 88 յաբելին B։ — 89 նայ A։ — 90 հոգույդ A։ — 92 շընորհք A պատասխանի A։ — 93 երգայրանեմք A։ — 96 ուրախացայց B զաւրքն B։ — 98 հաղորդեցաւ B։ — 99 չարեաց A։ — 100 հասա A։ — 104 պայծառ. ահեզ B։

Ջահազգեստիւք փառաւք զարդարեցեր տէր
Ջահիւք եւ լապտերաւք զնա պատուեցեր տէր
Ջրէն անմահութեամբ զնա արբուցեր տէր
Ջանիւն իւրով մեծաւ ընդունեցեր տէր։

Ռահ կենաց Քրիստոս քեզ գոհութիւն տէր
ռահիդ կենդանութեան հետեւեցաւ տէր
ռամկական մարդկան որոշեցեր տէր
ռահին կենաց երկնից արժան արեր տէր։

Սիրով փափագանաւք քեզ ցանկացաւ տէր
սիրով յաւժարութեամբ նա համբերեաց տէր
սիրով գըլխատեցաւ կատարեցաւ տէր
սերովբէից նըման պայծառացաւ տէր։

Վրդանէս վարդապետըն քո ծառայն տէր
վասն Պարոն Լեւոնին զայս արարի տէր
ով որ յաւժար սիրով զայս երգանակէ տէր
թող մէկ բերան մեղի ողորմիս ասայ տէր։

Տոնըս Հայաստանեայց մեծ աւետիս է
Լուսաւորչի ցեղի շատ խընդութիւն է
որ Պարոն Լոյս վըկայն նահատակեալ է
եւ ամէն որբրոց ընկեր եղեալ է։

Բամեալ որդւոց մարդկան ընտիր եղել է
սուրբ Պարոն Լոյս վըկայն փառաւորել է
վերայ գերեզմանին հանապազ լոյս է
զհոգին յերկնից խորանըն հանգուցել է։

---

106 ջանիւ B։ — 113 փափագանաւք B։ — 114 ա. չարչարանաց B նայ A։ — 116 սէրովբէից B։ — 117 ծառայ B։ — 118 զայս բանս երէ B։ — 119 արբ-անիւ B չ—նէ տէր B։ — 120 մեղի հայր (է բա-ղադրմի) մեղայ ասէ B չ—նէ տէր B։ — 122 լուսաւոր-չին ցեղին B։ — 123 նահատակեր է B։ — 125 որդւոց A եղեր B։ — 126 փառաւորեր B։ — 127 վասն A։ — 128 երկնից B հանգուցեալ B։

Ցանկան զուարթըն երկնից սուրբ Պարոն Լուսին
ցանկալի առ մահուանն սուրբ նահատակին
ցընծան եւ զուարճանան ընտրեալքն առաջին
ցընծութեամբ ելանեն ի դիմաց նորին։

Իւծեալըր մաշեցան որդիք մարդկային
ւիւծեալըք ծուլացան զբարին առեցին
բայց Պարոն Լոյս մանուկըն յորժամ տեսին
ուրախութեամբ զԱստուած փառաւորեցին։

Փառք քեզ Հայր եւ Որդի եւ սուրբ Հոգի տէր
փառք քեզ երրեակ անձինք եւ միութիւն տէր
փառաւք զարդարեցեր ըզքո ծառայն տէր
փառաց պըսակ աւեր Պարոն Լուսին տէր։

Քրիստոս Աստուած Փըրկիչ եւ ապաւէն տէր
քեզ գոհութիւն եւ փառք յամէն լեզուէ տէր
աղաչանաւք սորայ մեզ ողորմեա տէր
յաւիտենից կենացն արժանի արա տէր։

Վարդն անուանըդ քո չարչարեցաւ տէր
վարդն սիրոյ քոյին գըլխատեցաւ տէր
վանեաց ըզթըշնամին եւ զաւրացաւ տէր
վերացաւ քան զերկինս եւ զքեզ տեսաւ տէր։

Անուն մարտիրոսիս սուրբ Պարոն Լոյս է
անուն տալոյ տաղին Տէր Վրթանէս է
յԱյրարատեան յերկրէն Կաճան եկել է
արդիւնաւոր բանիւ զտաղս տաղեալ է։

---

129 ցանկացան զուրք B յերկնից A։ — 130 մահուան B։ — 133 ւիւծըրք A։ — 134 իւծեալըք A։ — 135 բայց ը—նչ B պարոն լ. մանուկն յ. որ տ. B։ — 136 ու. մեծա. փ. B։

Ը.

## ՄԻՆԱՍ ԴՊԻՐ ԹՈԽԱԹԵՑԻ

Շատ անգամ խօսուած է Մինաս Թոխաթեցւոյ անձին եւ գրութեանց վրայ. բայց անոր կենսագրութիւնը կը կարօտի դեռ լուսաբանութեան եւ գրական աշխատութիւնք պէտք են խնամով ի մի ամփոփուիլ։ Նոր փորձ մը կ՚ուզեմ փորձել։

Մինասի ծննդավայրն եղած է Եւդոկիա, միջին դարու մէջ Թոխաթ անուանուած, այն որ ԺԶ—ԺԸ դարերուն որրանն եղաւ կարգ մը երգիչներուն եւ յաճախ ներբողուեցաւ տարագիր որդիներէն կարօտալից։

Յովհաննէս կը կոչուէր իւր հայրը եւ Ղանիմաթ իւր մայրը (Յիշատ., Թ. 5*)։ Ծնունդն կ՚իյնայ 1510ին, ինչպէս ինքնին կ՚ակնարկէ 1565ին, փետրուարին, իւր տարիքը նշանակելով 55 ամեայ (Յիշատ., Թ. 2, Հմմտ. եւ Թ. 3—4)։

---

* Դիւրութեան համար տեղիքներն այսպէս կը նշանակեմ. Յիշատակարանները տես վարը էջ 64–67 ի մի ամփոփուած:

Իւր կենաց առաջին երեսնամեակը անցուց հայրենիքի մէջ ի լռութեան։ Նկատելով որ անիկա ինք զինք իւր առաջին տեսութեան 1544ին «դպիր-նոտար» կը ներկայացնէ մեզի (Յիշատ., Թ. 1), կազմարարութեան արուեստին հմուտ, կրնանք ենթադրել, թէ այս երեսնամեայ շրջանին կատարեց նա Թոխաթի մէջ ուսման ընթացք մը, երբ հմտացաւ գրչութեան արուեստին եւ յարակից ճիւղերուն՝ մանրանկարչութեան եւ կազմարարութեան։ Այս երեք արուեստներու մէջ ալ նշանաւոր հանդիսացաւ։ Այս իմաստով հասկնալու է իւր յորջորջանքն՝ դպիր, ինչպէս ինքն ալ յայտնապէս կը բացատրէ համազօր նոտար բառով։ Յամենայն դէպս անճիշդ է երբ ժամանակակից մը զինքը իր 1551ին Օլախաց երկրի հայերու վրայ յօրինած Ողբին խորագրին մէջ «Մինաս սարկաւագ Թոխաթցի» կը կոչէ։ Մինաս մինչեւ խոր ծերութիւն դպիր կամ նոտար մնաց։

Կամ հայրենիքին չքաւորութիւնն եւ կամ կեանքի անապահովութիւնն պատճառ կ՚ըլլան իրեն առոյգ հասակին 30ամեայ «տարագիր ըլլալ» հայրենի անէն (1539/40)՝ պանդխտութեամբ օտար երկրի տակ հայթայթելու աւուր պարէնը (Յիշատ., Թ. 2)։ Առաջին անգամ կը պատահինք իրեն 1544ին Կամենից, Լեհահայոց գաղթականութեան մէջ, ուր Սաղմոսարան մը կը նորոգէ (Յիշատ., Թ. 1)։ Կ՚երեւայ թէ[1] ժամանակ մը վերջը անցած է անկէ Սուչաւա (Մէշով), ուր—ինչպէս կ՚ըսէ, ականատես եղած

է 1551 Օգոստոս 16ին տեղւոյն Հայոց դէմ յարուցուած հալածանաց, որուն պատմութիւնն գրած է ողբախառն (Տաղ Ա. տ. 425).

Զայս դառն աղէտս ոչ տեսի,
Այն Օլախաց փոքրիկ երկրի։

Բայց Թոխաթեցւոյ տեւական բնակութիւնն եղած է Լեմբերգ, ուր կը գտնենք զինքը 1563 փետր. 5էն սկսեալ։ Այս թուին յօրինած է Հերիսայի «գովքը», ուր կը գրէ իր մասին.

Բայց այս դարիպըս Թոխաթցի
Մինաս անուն մեղաց գերի.
Եկի անկայ Լովայ երկրի,
Կարօտ մնացի ես հերիսի։

Հօս ի Լեմբերգ իւր բնակութիւնն ունէր Հաճկատարի վանքը՝ ընծման Ս. Աստուածածնի եկեղեցին, որ մի եւ նոյն ժամանակ Արքեպիսկոպոսարանն էր եւ Դատարանը, ուր նոտարութեան պաշտօնը կը վարէր, անդադար յարաբերութեան մէջ ժողովրդեան հետ։ Զայս կ'ակնարկէ Թ. 2 Յիշատակարանին մէջ, երբ կը գրէ թէ «մեր բնակութիւնս երթ եւ եկ էր բազմաց»։ Իւր նոտարական արձանագրութիւնները պահուած են մեր Մատենադարանի Թ. 441, 446 եւ 452 ձեռագիրներու մէջ (տես վարը)։

Գրիգոր Վանեցին էր այս տեն Լեմբերգի Հայոց արքեպիսկոպոսը[1], որուն հետ

1 Տես ասոր մասին վերը էջ 3-5։

մանրամասն յարաբերութեան մէջ էր Մինաս իբրեւ քարտուղար եւ յաճախ սեղանակից։ Առանձին յարգանքով կը յիշէ զինքը իւր Հերիսայի գովքին մէջ (Բ, ա. 29).

Սուրբ վարդապետ քաջ եւ արի,
Արթուն անուամբըն Վանեցի,
Շատ հերիսայ կերցուց մեզի,
Մէկին հազար իւրեանն տացի։

1565 թուին կ'այցելէ Լեմբերգ Հռոմայ քահանայապետին նուիրակը Փրանկիսկոս Յովհաննէս[1], որուն խնդրանօք կը յանձնարարուի Մինասի օրինակել Եփրեմի ճառերը, որ եւ կ'աւարտէ նոյն տարւոյն փետրուար 20ին (Յիշատ., թ. 2)։

Ինքն է նաեւ թ. 3—4 Յիշատակարաններու (1565—1589) գրիչն՝ Մինաս Տիւերկցի, այս ինքն Մ. Արեւելցի, այսպէս բառախաղով ծածկած իւր ծագումն Արեւելքէն[2]։

1572, Ապրիլ 15ին գրած է Լեմբերգի Հայոց կողմանէ թուղթ մը առ Միքայէլ կաթողիկոս (տես վարը)։

---

[1] Զինքը կը յիշէ նաեւ կամենեցի տարեգիրն (էջ 35)։ "Թվ. ՌԺԳ (1564) Նոյեմբեր ամսեան Գ. Ոմն լէհարդ Հռոմայ փապայէն եկաւ ի Կամենից, յաղագս նուիրակութեան համար. եւ էր ինքն գրագէտ ոմն եւ կատարեալ գիտուն. եւ զՀայոց գրեանք ուր եւ որչափ գտաւ, զամենեցուն գիրքերն նայեց եւ գիր էառ. եւ էր ինքն աղահասակ ոմն"։

[2] Հ. Տաշեան (Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Կայսեր. Մատենադարանի Վիեննայ, էջ 22) կ'իմանայ Տիվրիկցի. բայց ինձի հաւանականագոյն կը թուի նկատել բառախաղ՝ իբրեւ բարդութիւն տիւ — "ցորեկ, արեւ" եւ երէկ բառերէ։

Այլ եւս ծերացած է Մխիթար եւ ալեւո-րուած. Հերխայի տաղին մէջ կը ներկայացնէ ինք զինք 1563ին (Բ, տ. 93).

Եա ծեր ալեւորս մեղաւոր,
Զքեզ կու սիրեմ որբութիւ բոլոր...
Ծեր ալեւք եմ եւ աշխատակ,
Ակռայ չի կայ բերանս դատարկ.

Երդեամբք ալ բոլորած էր նա իւր կենաց առա-ջին յոբելեանը. երկու տարի ետքը՝ 1565ին, Փետրուարին, օրինակելով Եփրեմի Ճառերը՝ ընթերցողներէն կը խնդրէ, որ «չլինիք մեղա-դիր սակաւ գծիս, զի ԾԵ ամեայ գոլով գծա-գրեցի եւ այս ԻԵ ամ է որ ի դառն ղարիպու-թեան եմ, վասն մեր դառն մեղացն տարագիր եղեալ եմ» (Յիշատ., Թ. 2). Նոյնը կը կրկնէ ուրիշ Յիշատակարաններու մէջ ալ (Համեմ. Թ. 3, գրուած 1565 Օգոստոսին, ուր տարիքն կու տայ «Կ ամեայ գոլով՝ սակաւ պակաս». եւ Թ. 4՝ 1567էն «Կ ամեայ գոլով զգայարանքս ի յուժոյ թափեալ է»).

Այս յառաջացած տարիքին ամէնէն աւելի դառն եղած է իրեն օտարութիւնը, պանդխտու-թիւնը. իւր աչքերն հայրենիքին ուղղուած են միշտ. նոյն իսկ 60 ամեայ հասակին հոն երթալ հանգչիլ կը փափաքի. Հերխայի տաղին մէջ թողունք կը գոչէ (Բ, տ. 41).

Այս դառն տեղին որ մեք անկաք...
Պատճառմք երթամք ի մեր տեղի

այս ինքն ցանկալի Հայրենիքն, զոր ցոյց կու տայ (Ա. 423)՝

Նա եմ՝ զարիպ Հայաստանցի
Թոխաթ անուն քաղաք կոչի.

Այս երջանկութեան չի կրնար հասնիլ սակայն. կքած տարիներու ծանրութեան տակ «ի Լովոյ տունն վախճանեցաւ»։ Մինաս, ինչպէս կ՚ըսուի Կերլայի Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ Թ. ԽԳ ձեռագիր Տաղարանին մէջ (հմմտ. մեր Մատենադարանի թ. 797, թղ. 104բ), զոր ընդօրինակած է Յակոբ երէց 1605—1629 թուին։

Մահուան տարին յայտնի չէ. հիմնուած յիշեալ Ձեռագրին վրայ՝ ենթադրելու է Ժ.Զ. դարուն վերջաւորութիւն՝ 1605էն յառաջ. բայց առ այս դժուարութիւն կը հանեն մեր Մատենադարանի թ. 441, 446 եւ 452 ձեռագիրները, որ ամփոփուած են Թոխաթեցւոյ գրչութեամբ Լեմբերգի հայ դատարանին դատաստանական եւ ժողովարարութեանց ատեանները. Դատաստանական արձանագրութիւնք կը սկսին եւ կը շարունակուին մի եւ նոյն գրչութեամբ առանց ընդհատութեան մինչեւ 1619 փետր. 13 (թ. 441, թղ. 147ա. հմմտ. եւ 149ա)։ Իսկ ժողովարարութեանց ատեանը թաթարերէն է եւ կը սկսի 1599, Մարտ 12ին եւ կը շարունակուի մինչեւ 1618 փետրուար 6 (թ. 452)։ Հոս ընդհատած է (թղ. 49բ) եւ կրկին սկսած 1619 Յունուար 9ին, զոր շարունակած է մինչեւ նոյն տարւոյն Մարտ 18 (թղ. 53ա)։

Այստեղ դադրած է Մինասի գործունէութիւնը. 1620, Ապրիլ 13էն սկսեալ ուրիշ գրիչ մը շարունակած է. բայց 1621 Մարտ 23էն մինչեւ 1621 Օգոստոս 13 դեռ կը տեսնուին հոն Մինասի գրչին հետքերը (մինչեւ թղ. 62)։

Այս զննութեամբ Մինաս նահապետական կեանք մը ապրած կ'ըլլայ. քանի որ նա ծնած է 1510ին՝ 1621 Օգոստոսին կը գտնուի իր 110 տարեկան հասակին մէջ։ Բայց անհաւատալի պիտի երեւայ այս տարիքին համար այն հաստատուն՝ անդողդող գիրն, որ կը նկատուի իր վերջին օրինակութեանց մէջ. գրչութեան միօրինակութիւնն երկարամեայ տոմարիս մէջ ակնյայտնի է. անտարակուսելի է նաեւ առաջին մասին Մինասի հարազատ ինքնագրութիւնն ըլլալը. ուրեմն բնական ճամբով պիտի յանգինք այն եզրակացութեան թէ Մինաս Թոխաթեցի ապրած է 110 տարեկան հասակ մը եւ վախճանած է 1621/22 թուին։ Այս հիմամբ Յակոբ երէցու ակնարկութիւնն Մինասի մահուան նկատմամբ լոկ ենթադրութիւն մըն է յեցած անճիշդ հաշուի վրայ, եւ կամ 1622էն ետքը գրուած է այն հատուածը[1]։

---

1 Կերլաչի Տաղարանը երեք գրիչ ցոյց կու տայ. Թղ. 1—427ը գրած է Յակոբ երէց, ըստ յիշատակարանին (Թղ. 427բ). «Ով ընթերցողք, յորժամ որ կարդայք կամ օրինակէք, մեղաւոր Յակոբ երիցուս եւ ծնողին ամենայնի եւ ուսուցողացն իմոց Աստուած ողորմի տայցէք։ Աղաչեմ զձեզ որ չի մեղադրէք անկատարութեան գրի զի երբեմն գրեցի. ի թվ. ՌԿԹ. մարտ ժ»։ — Թղ. 428ա—449ր գրած է 1620էն Տէր Յակոբի որդին Աստուածատուր դպիր.

Մեր Թ. 441 Ձեռագրին գրչութիւնն կռուան կու տայ մեզի լուսաբանելու խնդիր մ'ալ։ Ձեռագրիս նկարագրական գիրն եւ զարդագրերը մեծ՝ մանաւանդ թէ ճշգրիտ նմանութիւն ունին մեր Թ. 344 ընտիր Տաղարանին ա. մասին (թղ. 1ա—204բ) գրչութեան հետ, որուն ոչ գրիչն ծանօթ է եւ ոչ գրութեան ժամանակը։ Հիմնուած այս նմանութեան վրայ կրնանք Տաղարանիս գրիչն ալ համարիլ Մինաս Թոխաթեցին։

Այս տեղ ի մի կ'ամփոփեմ Մինաս Թոխաթեցւոյ գրչէն ինծի ծանօթ Յիշատակարանները։

1. «Կրկին նորոգեցաւ Սաղմոսարանս եւ կազմեցաւ ձեռամբ յոգնամեղ գրչի ՃՃ ԹԹ ՄՄ ՕՕ ՈՈ ԹԹ դպրի, ի քաղաքս Կամենից, թվին ՌՂԳ, մարտի Ի աւարտեցաւ։ Եւ Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս. ամէն։

Վենետիկի Մխիթարեանց Թ. 40 Ձեռագիրը. Հմմտ. Սարգիսեան՝ Ցուցակ, էջ 225։ Նոյն Հրտ. Նաեւ Կամենից, էջ 162։

2. «Դարձեալ կրկին կ'աղաչեմ զգաղափարողդ, որ չլինիք մեղադիր սակաւ գծիս, զի ԾԵ ամեայ գոլով գծագրեցի եւ այս ԽԵ ամ է որ ի դառն զարիպութեան եմ, վասն մեր դառն մեղացն տարագիր եղեալ եմք, յոյս ունիմ

որ Թղ. 449ր կը յիշատակագրէ. «Գրեցաւ այս տաղս թվ. ՌՀԸ ձեռամբ Աստուածատուր դպրի որդւոյ տէր Յովհաննէսի, յորժամ որ երգէք նմա։ զիս ի ձեր աղօթն յիշեցէք»։ — Թղ. 450էն սկսեալ երրորդ գրչի մըն է։

առ Աստուած որ զնոյն ի բարին արասցէ։ Ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս առ Հասարակ ողորմեսցի, առաջնոց, միջնոց եւ վերջնոց. ամէն։

Դարձեալ կ՚աղաչեմ որ մեղադիր չլինիք աղաչանացս, զէրայ թուխտս խալապի էր. եւ ոչ գըմըշխի. եւ ոչ էր կոկուած. եւ մեր բնակութիւնս երթեւեկ էր բազմաց. զթերին լցուցէք. եւ պակասութեանն ներեցէք. եւ զմեզ առանց պարտաւանաց թողէք։

Գրեցաւ ձեռամբ Մինասի ձաբռատող նօտարիս. թվ. ՌԺԴ. յամսեանն փետրվարի, ի Լով քաղաքի։

Դարձեալ կազմեցաւ ձեռամբ Մինասի անարժանս գրչի եւ ծաղկեցաւ ըստ կարի մերում։

(Թղ. 183բ.) Արդ գրեցաւ սուրբ վարդապետութիւնս Սուրբ Հաւրն երանելոյն Եփրեմի, ի աստուածաշէն քաղաքն ի Լով, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին նշանն. ի թագաւորութեան Զիգմունտ Ակուստոսին. հայրապետութեան տեառն տէր Ստեփանոս կաթողիկոսին Առընջեցւոյ եւ առաջնորդութեան մերում նահանգի պարոն տէր Գրիգորի արհիեպիսկոպոսին, ի խնդրոյ նուիրակին Հռոմայ բարբային Ֆրանցիսքոսի Յօհանիսին. թվ. ՌԺԴ փետր. Ի։

Ճառք Ս. Եփրեմի յEscorial Մատենադարանին Մադրիդի. Հրտ. F. Macler ի թերթին Revue des Etudes Arméniennes I (1920), էջ 110—111։

3. «Արդ գրեցաւ պարզատումարս ի լաւ եւ յընտիր օրինակէ. ի յաշխարհս Խլախաց.

ի քաղաքս Լով․ ի թագաւորութեանն գրուլ Ժիկմոնդ Ակոստոսին ի կաթողիկոսութեան Ս. Էջմիածնի տէր Ստեփաննոսի Առընձեցւոյ. ի յարհիեպիսկոպոսութեան այս աշխարհիս տէր Գրիգոր վարդապետի Վանեցւոյ. ի թվականութեան հայկազեան տումարի ՌԺԴ (1565) ամի. յամսեանն Օգոստոսի երկու. զըստ. մագաղաթ պարզատումարի, ձեռամբ թերավարժ գրչի Մինաս նօտարի Տիւերիկեցւոյ, ծերացեալ աչերօք գծագրեցի. Կ-ամեայ գոլով, սակաւ պակաս...„ (Յաշեան՝ Ցուց. Հայր. Մատ. Վիեննայ, թ. 25, էջ 38.)

4. "Շնորհիւ Տեառն սկսայ եւ ողորմութեամբ Նորին կատարեցաւ քնարս աստուածահայրն մարգարէին Դաւթի, ի յաշխարհս Իլախաց ի քաղաքս Լով, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին. թվին ՌԺԶ Յունվար ամսոյն աւարտեցաւ ի լաւ եւ յընտիր օրինակէ, ձեռամբ թերավարժ գրչի Տիւերիկեցւոյ՝ զոր անուամբ չեմ յիշելոյ. Նորա անկեալ կ'աղաչեմ զգաղափարողաց որ մեղապիր յիշիք գրիս. ծերացեալ աչերօք գրեցի, կ ամա գոլով. զգայարանքս ի յուժոյ թափել է. Եւս առաւել՝ մագաղաթս կոկ չէր. խիստ դժարանօք գրեցի։ Բայց գրեցաւ սա ի թագաւորութեան այսմ աշխարհիս գրուլ Ժիկմոնդ Ակոստոսին։ Եւ ի կաթողիկոսութեան Ս. Էջմիածնի տէր Ստեփաննոսի Առընձեցոյ։ ... Եւ երկու զըստ. Սաղմոսարանիս։ Նորա անկեալ կ'աղաչեմ զգաղափարողաց որ զՏիւերկեցի ձամբըռտողս՝ անպարսաւ թողուք յընթեռնուլն ձեր։...„

(Ցաշեան՝ Ցուց. Կայս. Մատ. Վիեն., թ. 15, էջ 22, տես եւ յիշատակարանին Բ. մասն՝ անդ, 1589 թուէն)

5. «Արդ մի՛ մանկունք նոր Սիոնի,
Որք հանդիպիք այսմ տառի,
Յիշման առնէք զիս արժանի,
Ըղձեզապարտ յամենայնի՝
Զմինաս անուն մեղաց գերի,
Տրդուպ ծառայ ամենայնի.
Այլ եւ ծնողաց իմոց բարի,
Յովհան անուն եւ Ղանիմաթի,
Որ զատածեալս մեղօք գերի,
Ծընեան զաւակ ողորմելի...

Գրեցաւ ի յաշխարհս Խլաթայ, ի քաղաքս Լով. թվին Հայոց ՌԺԶ. յուլիս Ա. աւարտեցաւ (1567)»։ (Մաշտոց մեր Մատ., թ. 68. Ցաշեան՝ Ցուց. 310 = կամենից, 163։)

Ն կ ա ր ա գ ի ր։ Մինաս Թոխաթեցի իր կենսագրական գծերու մէջ կը ներկայանայ ծերունի մը, որ ունեցած է արդիւնաւոր կեանք մը նուիրուած հասարակական գործերու։ Հմուտ գրչութեան արուեստին՝ գործած է ազգային հաստատութեանց մէջ իբրեւ նօտար-դպիր, ի ձեռին ունենալով պաշտօնական արձանագրութիւններն եւ թղթակցութիւնները։ Ազատ ժամերուն պարապած է ձեռագիրներու ընդօրինակութեան, մանրանկարչութեան եւ կազմարարութեան։ Իւր գրչութիւնն գեղեցիկ բոլորգիր է եւ կանոնաւոր՝ եկեղեցական-պաշտաման գրքերու ընդօրինակութեանց մէջ. արձա-

նագրութեանց եւ ընտանեկան գրուածոց մէջ (Տաղարան) անցման բոլորգիր ոլորուն վերջաւորութիւններով։

Զգայուն հայրենասէր մ'եղած է հայրենեաց կարօտով մաշած, ազգին ցաւերուն ցաւակից. Օլախաց երկրի հայերու հալածանաց վրայ գրած Ողբին մէջ արտացոլուած է իր զգայուն սիրտը։ Բայց ապրած է նաեւ զուարթ օրեր. Հերիսայի գովքը զաւեշտական արտաբուած մըն է իր կեանքէն։

Իր գրիչը հաստ է Ողբին մէջ՝ հարուածելու հայ ազգին թշնամիները, ճարտարախօս լեզուն՝ բացատրելու ազգին ցաւերը եւ բողոքելու, թէեւ քիչ մը կրկնաբան։ Նաեւ զաւեշտաբանելու ճաշակն չի պակսիր իրեն։ Լեզուն գրաբարախառն է աւելի գրաբարին մօտ, բայց խառն աշխարհաբարի տարրերով։ Ծանօթ է նաեւ թաթարերէնի, զոր կը սիրէ կիրարկել, ոչ միայն գաւառանական արձանագրութեանց, այլ եւ տաղերու մէջ։

ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ.

1. *Ողբ ի վերայ Օլախաց երկրին Հայերուն:* — Օլախաց երկիրն է այժմեան Վալախիան կամ Մոլտաւիան (Ռումանիա), ուր սկսեալ ԺԴ. դարէն գաղթած էին բազմաթիւ հայեր այլ եւ այլ ուղղութեամբ. Սուչաւա (Սեչով) բերդաքաղաքն էր Հայերու գլխաւոր կեդրոնը, ուր ունէին ԺԶ. դարուն եկեղեցի մը եւ վանք մը՝ Հաճկատար։ Ընդհանրութեան մէջ

կը յառաջանար Հայ գաղթականութիւնը, նոր յաւելուածներ ընդունելով Արեւելքէն։ Հոս էր ԺԶ. դարու առաջին կէսին Վրթանէս Սոնկեցի։ Ցանկարծական մրրիկ մը կը վրդովէ Հայ գաղութը։ Ստեփանոս Ռարէշ է (1551—1552) Ռումանացւոց պատմութեան մէջ իբրեւ մեծ բռնաւոր ճանչցուած իշխանը 1551ին բովանդակ երկրին մէջ հրատարակեց որ իւր բոլոր հպատակները որթոդոքս հաւատքն ընդունին. եւ ով որ ուրիշ հաւատք ունի՝ իբրեւ հերետիկոս պիտի հալածուի։ Նաեւ զՀայերը, որ այն ժամանակ հերետիկոս համարուեցան, ուզեց ամէն հնարքով որթոդոքս դարձնել. եւ երբ Հայք ընդդիմացան, հրաման տուաւ 1551, Օգոստոս 16ին՝ Վերափոխման տօնին, Սուչաւայի, Պոթուշանի, Ռոմանի, Հաշի եւ ուրիշ կողմանց Հայոց եկեղեցիները կողոպտել, աւերել կամ փակել, սուրբ անօթներն ու սպասները յափշտակել, եկեղեցական մատեաններն այրել, եւ Սուչաւա նստող Հայ եպիսկոպոսն ու քահանաները բռնել։ Դաւանափոխութեան այս փորձը նպատակ ունէր աւելի հարուստ Հայերու դրամը կորզել[1]։ Հալածանքս, որ շատ աղետաբեր եղաւ Հայ գաղթականութեան, կարճատեւ եղաւ բարեբախտաբար. իշխանը յաջորդ տարին սպանուեցաւ դաւաճանութեամբ։ Այս հալածանաց յիշատակութիւնն կ՚ընէ նաեւ Կամենիցի տարեգիրն.

---

1 Դ. Ցան. Արեւելեան Հայք ի Պուքովինա, Վիեննա 1891. էջ 20–21։

«Ի թվին Ռ. Օլախի երկրին Շտեփան պարոնն՝ Օլախի երկրին զհայերն եհան ի հաւատէ, եւ զեկեղեցիսան քակեց զամէն բովանդակ[1]»:

Ահա այս գիրքը ողբախառն պատմութիւնն կը հիւսէ Մինաս իբրեւ ականատես, զգայուն տողերով։ Իր ողբին ծանօթ կ'երեւայ Երեմիա Չէլէպի (Համմ. Կամենից, էջ 18, ծան.)։

Ողբիս լաւ ծանօթ մը՝ կը նկատէ զայն «կենդանի, վառվռուն ու ազդու, եւ թէպէտ կրկնութիւններ շատ կան մէջը, եւ տաղերուն շատին մէջ ալ խիստ ազատութիւն շնորհած է ինքն իրեն, բայց մէկալ կողմանէ ոճը շատ բնական, պարզ, ընթացիկ ու հաճոյական է։ Լեզուն աղաւաղեալ է, եւ կը ցուցնէ գրաբար լեզուին՝ աշխարհաբարին անցումը» (Հ. Գ. Գովրիկեան, Հանդ. Ամս. 1888, էջ 39)։

Խորագիրն եւ սկզբնաւորութիւնն է.

«Ողբ ի վերայ Օլախաց երկրին հայերուն ի Թօխաթցի Մինաս սարկաւագէ ասացեալ։

Գուշեմ առ ձեզ ողբերգական,
Հառաչելով յոյժ լալական.
Քահանայք եւ աշխարհական
Ծուներ դըրէք ամենեքեան։»

*Ձեռագիրք:* 1. Վեբլայի Ցաղարանը. թղ. 304բ—316բ = A. — Ասկէ ծագած են՝ 2. Մեր Թ. 797, թղ. 313ա—322բ (Համմ. թղ. 206բ—207ա) = $A^1$, եւ 3. Պաս.

[1] Ալիշան՝ Կամենից. էջ 18.

մատեանի օրինակը = B (աղճատուած)։ — 4. Օրինակ Վենետիկի Մխիթ. Մատենադարանի = V։ — 5. Պարիզի Ազգային Մատենադարանի թ. 185 (= Ancien Fonds arm. 101), թղ. 3ա (Հմմտ. Macler, Catalogue, p. 103) = P։ — 6. Էջմիածնի գէորգ. ցուց. թ. 144 (յամ. 1595) = E։

Հրատարակութիւնք: 1. Ք. Պատկանեան՝ «Աշխարհ մատենագրութեան Հայոց. Ս. Պետերբ. 1884, էջ 53—58. Հմմտ. յուշը. III—VIII = P¹, բնագիրն P։ — 2. Կ. Յ. Պասմաճեան՝ Ողբ ի վերայ Ուռհայոց երկրի Հայերուն, Մասիս 1886, թ. 3832—3837 = B, ծագած Aէն։ — 3. Հ. Գ. Գովրիկեան՝ Մինաս Թոխաթեցի, Հանդ. Ամս. Բ (1888), էջ 37—40, 62—63 = H, բնագիրն A. Հմմտ. անդ 1889, էջ 43 «Տարբերութիւնք Օրինակին Պր. Պասմաճեանի»։ — 4. Հ. Ղ. Ալիշան՝ Կամենից, 20—27 = K, բնագիրն V։ — 5. Պետրոս Ք.Հ. Մամիկոնեան՝ Ռումանահայոց ներկայն եւ ապագայն, Կալաց 1895, էջ 52—70 = M, ծագած AVէն։ Սորա կը հրատարակեմ Ողբս համեմատութեամբ A (A¹) V (K) P (P¹) օրինակներու, որոնք կրկին խմբի կը բաժնուին, VP կը միաբանին իրարու հակառակ Aի. կ'երեւայ թէ Թոխաթեցի ակզբնագիրն (VP) ապա նոր խմբագրութեան ենթարկած է (A)։ Մեզի բնագիր կ'ընտրենք A (A¹). միւս օրինակներու, յատկապէս ապագիրներու կարեւոր ընթերցուածներն միայն կը նշանակուին

ծանօթութեանց մէջ. կամայական փոփոխութիւններ շատ մուծուած են հրատարակիչներէն։

*Թարգմանութիւնք եւ քննութիւնք:*

1. Die Verfolgung der Armenier in der Moldau vom Jahre 1551, beschrieben vom Diakon Minas aus Tocat, ins Deutsche übertragen und erklärt von Demeter Dan, Czernowitz [1894], 8°, էջ 18. — 2. Cânt de Jâlire asupra Armenilor din ţara Vlahilor de diaconul Minas Tokatţi, traducere din limba armeană, cu o introducere de Grigore M. Buiucliu. Bucuresci 1895, 8°, p. 44 (արտատպ. ի թերթէն Convorbiri Literare, 1895), էջ 3—30 ներած., 31—44 թրգմ.։ Ներածութիւնն հայերէն թարգմանութեամբ հանդ.՝ Գ. Մ. Պըյըքլեան՝ Մինաս Թոխաթեցւոյ ողբ ի վերայ Հայոց աշխարհին Ուլախաց, Հանդ. Ամս. 1895, էջ 97—103, 131—137։ — 3. Թոխաթեցւոյ վրայ ընդհանրապէս հմմտ. Յովհ. Գազանճեան՝ Մինաս սարկաւագ Թոխաթեցի. ի թերթին «Իրիկ», Եւդոկիա 1912, էջ 85—86։

2. *Գովասանք Հերիկի:* — Զաւեշտ մըն է, ուր կը փառաբանուի Հերիկան, քաղցրահամ եւ քաղցրահոտ հայկական ճաշակին՝ նաեւ հեռաւոր գաղթականութեանց մէջ։ Զայս երգած է Մինաս 1563, փետրուար 5ին, Բարեկենդանի օրերուն, երբ «կիսահիւանդ» կը գտնուէր անկողին։ Իւր հիւանդութիւնն Հերիկայի կարօտէն էր. ուստի եւ միակ դարմանն՝ անոր

վայելքը՝ Գաղտնիքս կը հանի Գրիգոր Արքեպիսկոպոսին ականջը՝ Մինչդեռ տակաւին հիւանդութեան անկողին կը գտնուէր՝

Յանկարծակի զդուռըն բացին,
Զմահհրած նամակն ի յիս տուին,
Այցին կարդա դու առանձին
Զքո թըղթին պատասխանին։

Գրիգոր արքեպիսկոպոս Կիրակի օրը՝ Բուն բարեկենդանին Հերիսայ ուտելու կը հրաւիրէր զինքը՝ Անակնկալ մ'իրեն։ Այսպէս կը բացատրէ իւր զգածումները.

Հիւանդ մարմինս ի դող եկաւ.
Յանկարծ շուտով առողջացաւ.
Հոգւով մարմնով ուրախացաւ,
Երբ հերիսի խապար հասաւ։

Ուրախ տրամադրութեան մէջ է այլ եւս. անկողնէն դուրս կը նետէ ինք զինք. եւ հերիսայ ուտելու պատրաստութիւն կը տեսնէ.

Ով Թոխաթցի Մինաս դըպիր,
Ի հերսինի փեչըն կըպիր,
Թուլցուր զգօտիդ եւ կըշտացիր,
Փափուքանացըդ քո հանիր։

Այնուհետեւ կը հիւսէ Հերիսայի գովքը՝ Հերիսան Ս. Լուսաւորչին յօրինած կերակուրն է. կերակուրներուն թագաւորը, որուն համին հետ շաքար կամ մեղր չեն կրնար համեմատուիլ։ Անոր հանէն "մեռած հոգիքն ուրախանան", իսկ կենդանիքն կը ցնծան. մանաւանդ թէ

Ամէն մարդիկ դէմ քեզ դողան,
Խուս տալով են անարժան։

Հերխան ամէն կողմ գովուած է միաբերան.

Երուսաղէմ 'ւ ամէն տեղի
Առանց քեզի մարդ չլինի։

Կը յաջորդեն ազգագրական պատկերներ եւ սովորութիւններ Հերխայի շուրջը, որոնք որչափ ծանօթ պատկերներ են, այնչափ հետաքրքրական իրենց անփոփոխ հնութեամբ։

Իբրեւ զաւեշտ կամ ինչպէս հեղինակն կը նկատէ "Բարեկենդանի ուրախութիւն„ յաջող է տաղս եւ ուրախ տրամադրութիւններով. ու աղքատ նաեւ պատկերներու մէջ։ Լեզուն ալ հոս աւելի ժողովրդական է՝ խառն ռամկօրէն ասացուածքներով։

Տաղս ձեռագիրներու մէջ շատ անգամ յապաւումներով պահպանուած է. նոյնպէս ալ տպագրուած է։ Կը կորսուի քննական վերակազմութեան եւ նոր հրատարակութեան, զոր մտադիր եմ կատարել ստորեւ։

Տաղին հարազատ խորագիրն եւ սկզբնաւորութիւնն է.

"Տաղ եւ գովասանք հերխի ի Թոխաթցի Մինաս դպրէ ասացեալ (որ ի Լովայ տունն վախճանեցաւ)„.

Ի հողոյ հաւատար անձնէ,
Եւ անարժան ձեր ծառայէ.
Ի Թոխաթցի Մինաս դպրէ,
Շատ կարօտով բարեւ հասցէ...

*Ձեռագիր:* Մեր Մատենադարանի թ. 797, 104բ (=Ձ. Կ. 155ա). — 160, 201բ. — 343, 213ա (Ն տնէն). — 493, թղ. 68բ եւ 499, 3ա (սկսեալ Ժ.Գ. տնէն).

*Հրատարակութիւնք:* Արեւ. Մամուլ 1886, 18—19. — Սիօն, 1874, 132—135. — Կոստանեանց՝ Նոր ժող. Ա. 50—56 (Ժ.Գ. տնէն), Հանդ. Ամս. 1921, էջ 159—162. Մեր Մատենադարանի թ. 343 կը սկսի.

„Յանկարծակի դղուռն բացին" (= Ն տուն).

Կոստանեանցի օրինակը (= մեր թ. 493 եւ 499).

„Բարեկենդան է մի մեղադրէք" (= Ժ.Գ. տուն).

Ինձի ծանօթ բոլոր օրինակները պակասաւոր են, բայց փոխնակի կը լրացնեն զիրար: Բնագրին հիմ ընտրուած է թ. 797, որուն պակաս տողերը լրացուած են թ. 343ի վրայէն, որ էականս նոյն բնագիրը կ'ընծայէ: Սիոնի (= S) օրինակը նոր խմբագրութիւն մըն է Թոխաթեցւոյ տաղին, վերջին ժամանակներէ, ընդարձակ յաւելուածներով եւ կամայական փոփոխութիւններով. աւելորդ համարեցանք զայն համեմատութեան առնուլ: Համեմատութեանց մէջ չենք նշանակած նաեւ M եւ K, նոյնպէս DCE օրինակներու աննշանակ տարբերութիւնները, որոնք լոկ կամայականութեան արդիւնք են:

3. *Գովասանք ի Գրիգոր վարդապետն:* — Առաջին հրատարակիչն Սրուանձտեանց որ եւ իցէ խօսք չէ ըրած այն ձեռագրի թուականին վրայ, ուսկից հանած է տաղս. այսու միայն կրնայինք կռուան ունենալ մեզի ստուգելու թէ ո՞վ է գովասանն Մինաս, եւ ո՞վ Գրիգոր վարդապետ, առ որ կ'ուղղուին գովութիւնք։ Վայրկեան մը կրնայ կարծուիլ թէ Գրիգոր Կեսարացին ըլլայ, եւ Մինասն՝ Խրզըրումցի Մինաս վարդապետն, որ սերտ բարեկամ էր Կեսարացւոյ։ Բայց աւելի հաւանական կը թուի ինձ ընծայել տաղս Մինաս Թոխաթեցւոյ, որ նուիրած է զայն Գրիգոր վարդապետ Վանեցւոյ՝ Լեմբերգի արքեպիսկոպոսին։ Հերիսայի վրայ գրած տաղին մէջ զԳրիգոր կ'անուանէր (Թ. 797, 105ա).

Հոգեւոր Տէր եւ քի ծառայ...
Սուրբ վարդապետ քաջ եւ արի,
Արթուն անուամբքն Վանեցի։

Այս ձեւով ըսուած է հոս ալ՝

Անունդ Արթնութիւն կոչի Գրիգոր
զուարթ պետական։

Ամբողջ տաղն երգուած է Գր. Աղթամարցւոյ տաղերուն ազդեցութեան տակ։
Տաղին սկզբնաւորութիւնն է.

"Պայծառ արեգակն ես դու
ի գարնան օրերն ի նըման.
Շառաւիղք ի ծաղկունք իջնուն,
ու ծագի լոյսըն զանազան։

Վերջ՝

Ու ձեզ պաղատանք յընկնիմ
իմ եղբարք հոգեւորական.
Բերան մ'աղօթքիս տուէք
Մինասիս մեղքը պարտական։"

*Հրատարակութիւն*՝ Գ. Վ. Սրուանձտեանց՝ Արեւելեան Մամուլ, 1885, էջ 123։

4. *Տաղ սիրոյ*, կամ ըստ Բրիտանական Մուզէոնի օրինակին՝ "տաղ գեղեցիկ ի ժամ ուրախութեան երկու լեզուէ"։ Ծանօթ է ինձի այս խորագրով տաղ մը՝ հայերէն եւ տաճկերէն տողերով. որուն հեղինակն է Մինասն, զոր ես կը համարիմ Մինաս Թոխաթեցին. ինձի կ'երեւայ թէ տաղս ուղղուած է Գրիգոր Վանեցւոյ (Վարագեցւոյ) Լեմբերգի արքեպիսկոպոսին։ Սկզբնաւորութիւնն է.

Ես քու սիրուն չեմ դիմանար,
եուրակ իմ թութուշուր եանար.
Սուրբ Գրիգոր զիս մի մոռանար,
պէնի տօվլաթան ունութմա...

Վերջ՝

Մինասն ասաց զայս բանս յիւրմէ,
տուշտի փէյսա էյլամինէ.
Կէնա զՄինասն յիշել օրն է։
Միսկին Մինասն ասաց հէմի,
չինափ զարինպլէրուն քեանի.
Տես դատաստանն ինչպէս լինի....

*Ձեռագիրք:* Մեր Մատենադարանի, Թ. 797, Թղ. 280բ (= Զ. Կ. 430բ)։ —

343, թղ. 207ա։ — 643, թղ. 9բ։ — British Museum, Թ. 110, 51ա։ — Ըմառեան՝ Ցուց. Թաւրիզի, էջ 63բ։

*Հրատարակութիւն:* Գիրք Դպրութեան եւ Տաղարան, Կ. Պոլիս 1714, էջ 209—211։ Գրքոյկս որ կոչի Տաղարան, Կ. Պոլիս 1740, էջ 310—312 (խորագրուած՝ Տաղ կարօտով առ սուրբ Լուսաւորիչ)։

5. *Տաղ զղջական:* — Նորայր Բիւզանդացի իւր Միջնադարեան հայ հեղինակներու ձեռագիր ցուցակին մէջ կը յիշէ յանուն Մինասի 18 տունով տաղ մը սկզբնաւորութեամբս.

Ես գիտէի թէ աշխարհս էր ինձ մնալու։

Այսպիսի սկզբնաւորութեամբ տաղ ինծի ծանօթ չէ. հետեւաբար չեմ կրնար ըսել թէ կարելի՞ է վերագրել Թոխաթեցւոյ։ Կայ տաղ մը "Ողբ համօրէն ննջեցելոց", որ կը սկսի.

Ես գիտէի զաշխարհս ինձ մուլք էր տուած...

Բայց առանց անուան հեղինակի, որ շատ յաճախ կը տեսնուի ձեռագիր Մաշտոցներու մէջ (Հրատարակուած նաեւ ԲԶՄ. 1853, էջ 212) եւ աւելի հին կ'երեւայ քան Թոխաթեցւոյ ժամանակը։

6. *Տաղ ի վերայ ընդունայնութեան աշխարհի:* — Ընխորագիր է տաղս, ուր կ'ողբայ երգիչն աշխարհի անցաւորութեան վրայ, լաւ եւս՝ կը գծէ մահուան պատկերը։ Զայս օրինակած է Մինաս Ինքնագիր՝ Գրօրէնքի սկիզբը,

առանց նշանակելու թէ իւր հեղինակութիւնն է թէ լոկ արտագրութիւն մը հնագոյն տաղի, որ ինձի ուրիշ հաւանական կ'երեւայ։ Սկզբնաւորութիւնն է.

Տեսէք դուք զարմացք բազում,
թէ քանի մարդ ի հող դարձեր.
Մահն բաժանեաց զմեզ,
կորուսաք զոր ինչն ժողովեր։

Համարս տալոց եմք մեք,
արարչին զոր ինչ եմք գործեր,
Այլ վայ զանաչառ ատեանն,
ու զահեղ բարբառն լսել...

*Ձեռագիր:* Մեր Մատենադարանի Թ. 441, թղ. 4ա։

7. *Գրօրէնք Լեմբերգի Հայոց Դատաստանի:* — Մինաս Թոխաթեցի կ'ըսէ. "Նոտար„ Լեմբերգի հայ Դատաստանին բանած է դատաստանական տոմարը, սկսեալ 1572էն, գրելով բոլոր անձնական կտակագրական եւ այլ դաշնագրութեանց պատճէնները թաթարերէն մէկ մատենի մէջ։ Այս նոտարութիւնն շարունակած է մինչեւ 1619 փետրուար 13 (Թ. 441, թղ. 149ա)։ Տոմարս, որուն մէջ ամփոփուած են "Գրօրէնքն եւ Տիաթիկն„ կը գտնուի մեր Մատենադարանի Թ. 441 սկզբնագիր ձեռագրին մէջ։

Այս մասին սկիզբն (Թ. 441, թղ. 3բ) կայ ոտանաւոր յառաջաբան-մուտք մը 1572 Յունուար 1 թուակիր, ուր կը յայտնէ թէ

կազմած է մատենանս հրամանաւ Լեմբերգի դատաւորին "վասն ամբոխութեան դատաստանի"։ Ցառաջ կը բերեմ հոս յառաջաբանն ամբողջութեամբ.

Ի յայս աշխարհս Իլախի,
  Լով կոչեցեալ այսմ քաղաքի,
Ցարեթական տոհմէ ցեղի,
  բնակեալ կան Հայոց ազգի.
Թագաւորաց հրամանաւ,
  զազգս դատեն դատաստանաւ.
Կաշառ չառնուն նոքա բընաւ,
  ոչ երեսպաշտ կամ սուտն իրաւ.
Եւ թէ բարձաւ թագաւորութիւն
  Հայոց ազգի իշխանութիւն
Սակաւ հայ կայ ի մէջ Լովուն,
  են իմաստուն եւ քաջ գիտուն.
Զհայոց ազգն դորա՛ դատեն,
  ուխտ եւ դաշինք կու հաստատեն
Զապըստամբեալն խրատեն
  զկարգ եւ զսահմանըն կու պընդեն։
Երկոտասան դատաւորք են,
  զծուռն եւ զշիտակն դորա՛ քննեն.
Զմեղապարտն վիրաւորեն,
  եւ զզուղիղն ազատեն
Հին դատաւորքն առաջին,
  Իլով քաղքի Հայոց ազգին
Շատ բաներ կայր որ փոյթ չարին,
  թէ հոգեւոր թէ մարմնային.
Արարիչ Տէրն երկնի 'ւ երկրի
  ողորմեցաւ Հայոց ազգի.
Որ ի յայժմու ժամանակի,
  են դատաւորք իմաստունք ի լի։
Զամենայն բան դատաստանի,
  յիստակեցին իբր զհայելի.

Սահմանեցին անդրդուելի,
 զամենայն բանն տիփառքի։
Գրոբէնքի Ցիաթիկի,
 սահմանեցին միատեղի.
Ով այս բանիս հակառակի,
 մեծ ամօթով լինի յերկրի։
Երդումն արած երկոտասան
 եւ երկու մեծ երեսփոխան
Որոց անուանքն վերոգրեցան,
 նոյա բանիւն պընդեցան։
Ի յետ գոյա ով որ որ գան,
 երդումն արած ի դատաստան
Այնպէս առնեն զինչ որ ասեան,
 չի պակասեն ոչ մէկիկ բան։
Եւս առաւել զգրոբէնքին
 եւ անցելոց տիաթիկին,
Յայս տիփառքի մէջն որ չդրուին,
 ամենեւին ոչ հաստատին։
Որք առաջինքն են եւ միջին,
 յետ մեզ գալոցք են եւ վերջին.
Զմեր Ցիաթիկն բռնողին,
 արքայութեան լինին բաժին։
Զայս բանքս որ մեք սահմանեցաք,
 փոխնձ մանուշակ ձեռվիս եդաք.
Ամենեքեան զուք հաստատայք.
 եւ մեր հոգուն աղօրմիս տայք։
ՌԻԱ. Հայոց թվին.
 ՌՃՀԲ էր փռանկին,
Յունվար ամսոյ մի համարին
 զգայս տիփառքս սահմանեցին։
Մինաս անուն մեղօք ի լի,
 որ զայս գրիկս գրեցի.
Վեշտասան անով յաւարա ածի,
 հրամանաւ Լովցոց դատաւորի.
Վասն ամրութեան դատաստանի.
 ամէն ամէն եւ եղիցի։

*Բացի այս տաղաւարէն գրած է Մինաս նոյն գրոց սկիզբը Թաթարերէն լեզուաւ ընծայական մասն մը, զարդարուն մեծատառ գրերով, ուր արձանագրած է Լեմբերգի Հայոց 14 երեսփոխաններուն անունները. վերջաւորութեան կան հետեւեալ տողերը (Թ. 441, թղ. 3ա).*

*«Գրեցաւ սակաւ գլխագիր յիշատակարանս ձեռամբ թերավարժ գրչի՝ Մինասի Թոխաթցւոյ.*

*Ի թվականութեանս յաբեթական տումարի. Ի. յոբելենի. եւ ԻԱ. ամին, ի յունվար ամսի. ի քաղաքս Լովի, յաշխարհս Իլախի, վասն Հայոց ազգի, որ կան յայսմ երկրի. վասն գրորէնքի եւ տիաթիկի, որ անշարժ մնասցի. ի միատեղի. սովաւ ամրասցի, կարգ Հայոց ազգի. եւ խռովութիւն չլինի։ Յայս ժամանակի եւ ի միջոցի. վերջին գալոցի. փառք վերատրեսցի. անմահ արարչի. ապենիազի. երկնի եւ երկրի։ Ամէն եղիցի։»*

*Դարձեալ թղ. 4բ.*

*«Ով ընթերցողք. քան զմեզ յառաջ եղած գրօրէնք եւ զՑիաթիկ՝ յայս տիփտարիս մէջն չմտուցաք. ում որ ի պէտք լինի. զայն ի խաղնան թող բընտռեն. եւ զմեզ չպարսաւեն կաղաչեմք։*

*Հայոց թվին. ՌԻԱ. էն ի վեր ի հօս թող նային։ Բաւ է։*

*Հայոց թվին ՌԻԱ.* (1572)
*Լատինացոց թվին ՌՇՀԲ.*

Յունվար ամսոյ. Ա. ի Լով քաղաքի։ Ընդ-հովանեաւ սուրբ Աստուածածնին։ Ձեռամբ՝ ՃՃ. ԺԺ. ՄՄ. ՇՇ. ՈՈ. ԺԺ. թերավարժ գրչի,

Ծածկագրութիւնս կը կարդացուի «Մինասի». Համեմատէ ասոր հետ վերը թ. 1 Յիշատակարանին ծածկագիրը։

7. *Տոմար ժողովարարութեանց:* — Բացի Գրիգորէսէ բռնած է Մինաս նաեւ Լեմբերգի թեմին մէջ կատարուած ժողովարարութեանց տոմարը (սկզբնագիրն պահուած մեր Մատենադարանի թ. 446 եւ 452 ձեռագիրներու մէջ), թաթարերէն լեզուաւ։ Ա. մասն կը սկսի 1566էն եւ կը հասնի 1608. իսկ Բ. մասը ՌԽԸ (1599) Մարտ 12էն մինչեւ 1618 փետր. 6, ապա ընդհատութիւններով՝ 1619 Յունուար 9էն մինչեւ Մարտ 18։ Այնուհետեւ շարունակած են ուրիշները (Հմմտ. Տաշեան, Ցուցակ, էջ 922—923).

8. *Թուղթ Հայոց Լովայ առ Միքայէլ Կաթողիկոս Էջմիածնի* (15 Ապրիլ 1572). — Մինաս իբրեւ նոտար Լեմբերգի դատարանին՝ ընդունած է յանձնարարութիւնն գրել թուղթս 1572 Ապրիլ 15ին, երբ Գրիգոր Վանեցի հեռացուած էր Լեմբերգէն։ Հոս կը յայտնեն Լեմբերգի Հայք թէ կաթողիկոսական նուիրակն՝ Տէր Մարտիրոս Ամդեցի եկած է իրենց եւ սիրով հիւրասիրուած. ապա կը խնդրեն մերձաւոր խնամութեան թոյլտուութիւն՝ ազգայնոց սակաւութեան պատճառաւ։

Վայելուչ յօրինուածով գրած է Մինաս Թուղթս, մէջ ընդ մէջ խառնելով նաեւ ոտանաւոր տողեր։

Սկզբնաւորութիւնն եւ վերջաւորութիւնն է.

«Հուր մաքրութեան եւ տեղի հանգստեան, լայնատարած բուրաստան եւ այգի ցանկապատ՝ լրման բոլորեալ․․․»

Վերջ՝ «Գրեցաւ քարտէզս ի յաշխարհն Խլախաց ի քաղաքս Խլով, ըստ ի մեզ մարդեղութեանն Քրիստոսի՝ ՌՇՀԲ ամի, եւ ի մերում յաբեթական տումարի Ի. յօրեկինի եւ ԽԱ. աւելի, յամսեանն ապրիլի Հռոմայեցոց ամսի, ԺԵ համարի յորն։ Ձեռամբ Թերավարժ գրչի Ի. Բ. Գ. Ժ. Ի. Բ.[1]» (Հրատարակուած կամենից, էջ 228—231։)

9. *Թաթարերէն Թարգմանութիւն Մխիթար Գօշի Դատաստանագրոց:* — Հաւանօրէն ինքն է թարգմանիչն Մխիթար Գօշի Դատաստանագրոց այն թաթարերէն թարգմանութեան, որ լոյս տեսաւ ԺԶ. դարու կէսին ի Լեմբերգ։ Թէեւ այս մասին կը պակսի բացայայտ վկայութիւն, բայց այն պարագան, որ Մինաս Թոխաթեցի իբրեւ նոտար Լեմբերգի Դատարանին իւր ուսոց վրայ ունէր բոլոր գրաւոր աշխատութիւնները, հաւանական կ'ընեցնէ այս ենթադրութիւնը։

---

[1] Ծածկագրութիւնս կը կարդամ «Մինասի»։

# 1.

*ՈՂԲ Ի ՎԵՐԱՅ ՕՂԱԽԱՑ ԵՐԿՐԻ ՀԱՅԵՐՈՒՆ*

*ի Թոխաթցի Մինաս սարկաւագէ ասացեալ։*

Գոչեմ՛ առ ձեզ ողբերգական,
Հառաչելով յոյժ լալական,
Քահանայք եւ աշխարհական,
Ծունըր դըրէք ամենեքեան։

Ի թըվին Հայոց հազար ամին,
Տասն եւ վեցն էր աւգոստոսին,
Աստուածածնի փոխման աւուրն,
Ի տէրունի աւր կիրակին։

Ի այս վերջին ժամանակի,
Փորձանք եկաւ Հայոց ազգի,

---

Ձեռագիր՝

A¹ = թ. 797, թղ. 318ա (Չ. Կ. թղ. 304բ)։

Հրատարակութիւն՝

H = Հանդ. Ամս. 1888, էջ 37—40, 62—63։
B = Մասիս 1886, թ. 3832—3837։
K = Ալիշան՝ Կամենից, էջ 20—27։
M = Մաթիկեան, Ռումանահայոց ներկայն եւ ապագայն, էջ 52—70։
P¹ = Պատկանեան, Նշխարք, էջ 53—58։

Խորագիր՝ ուլախաց B Թուխաթեցի AH Թոխաթցի K սարկաւագէ AH չունի M Մինաս Թոխաթեցւոյ ողբ ի վերայ հայոց աշխարհին ուլախաց P։

4 ծունդըր AK։ — 9 եւ այս A։

Վասն մեղացըն մեր յայտնի,
Զոր գործեցաք ի յաշխարհի։

Հիւսիսական կողմ աշխարհի,
Փոքրիկ երկիր կայ Օլախի,
Բազում Հայք կայր իւրեանց մէջի,
Լաւ քրիստոնեայք եւ անուանի։

Երիցանիքն ուսեալք էին,
Ժամասացողք պայծառ էին,
Խիստ փառաւոր Հայեր կային,
Յանկարծ փորձանք եկաւ նոցին։

Օլախ ազգին մեծ վոյվոտան,
Անուամբ կոչէր ինքն Շտեփան,
Մանուկ տիոյք ամբարտաւան,
Բազում չարիք արար մարդկան։

Նա Հաւատովն էր Հոռոմի,
Դաւանութեամբ Քաղկեդոնի,
Նոր չար գործեաց Հայոց ազգի,
Զոր ոչ բընաւ եղեւ երկրի։

Չար թագաւորքըն առաջին,
Այսպէս չարիք ոչ արարին,
Զոր դա գործեաց Հայոց ազգին,
Լուսաւորչի փոքրիկ հաւտին։

Աստուածածնին աւրըն փոխման,
Օլախ ազգի չար վոյվոտան,
Իւր պարոնայքըն միաբան,
Սեչով քաղքի բերդըն մըտան։

Եպիսկոպոսք իւրեանց ազգին,
Աւագերէցք ի միասին,

12 գործեայն AK։ — 17 ուսած K։ — 18 ժամասացողք A։ — 22 ըշտեփան AK։ — 37 իւրայ K։ — 38 աւագերէցք A։

*Նըստան ի հաց ի սեղանին,*
*Ուրախանալ ի միասին։*

*Խորհուրդ արին իւրեանց միջին,*
*Չարիք թագուհւոյն սերմանեցին,*
*Շատոց ոխ կայր իւրեանց սրտին,*
*Սուրբ Հաւատոց Լուսաւորչին։*

*Ի լուանալ տուր կիրակի,*
*Շամփան պարոնն ձիաւորի,*
*Գայ մըտանէ եկեղեցի,*
*Աստուածածնի Հայոց ազգի։*

*Եղաւ ատիւքն ի խորանին,*
*Զխորհուրդն առաւ ի իւր ձեռին,*
*Ցանկարծակի զարկ ի գետին,*
*Եւ չար ատիւք կոխան արին։*

*Ըզսուրբ մեռոնն Էջմիածնին,*
*Զայն ալ վաթեց վերայ գետնին,*
*Շունք եւ մարդիկ կոխան արին,*
*Եւ աղիք մեր խարշատէին։*

*Զինչ որ գիրք կայր եկեղեցին,*
*Եւ զմեծ պատկերքըն խորանին,*
*Խաչեր 'ւ բոլի մաղըզմանին,*
*Ոսկէջըրած եւ մեծագին։*

*Ժողովեցին ի միասին,*
*Տարին գըրին ի վիատեռին,*
*Ըզվարդապետն Եւ զարեղանին,*
*Ձեռքըն կապած բանդ արգելին։*

*Մէջով քաղքին Հայոց ազգին,*
*Զեկեղեցիքըն փակեցին,*

---

46 *ըշաէ-ֆան* A։ — 50 *ի յիւր* K։ — 54 *ի վերայ* A։ — 55 *մարդիք* A։ — 57 *յեկեղեցին* K։ — 59 *եւ* AK։

Զգըրունկըն ամէնըն մօհրեցին,
Որ չի հանեն սուրբ անուըթնին։

Ի լուսանալ միւս աւրին,
Եկաւ պարոնն ի վլոստեօին,
Առման գըրկեց Հայոց ազգին,
Բռնալ եասուր գեկեղեցին։

Զինչ անուըթ կայր իւրեանց մէջին,
Խաչեր, բուկիք եւ շուրջառնին,
Ոսկէջըրած եւ մեծագին,
Բաժկամաններըն եւ բուրվառնին։

Արծաթապատ աւետարան,
Շարակնոցեր եւ սաղմոսարան,
Այսըմաւուրք եւ տարէգիրք,
Գանձատետր, մաշտոց եւ այլ գըրեան։

Զինչ անուըթ կայր եկեղեցին,
Զամենեսեան ժողովեցին,
ԶԱստուծոյ տունն կողոպտեցին,
Տարան դըրին ի վլոստեօին։

Վարդապետին 'ւ աբեղային,
Շատ չարչարանք նոցա տուին,
Աղէկ մարդիկ ի մէջ մըտին,
Հազար ձօրով ազատեցին։

Չոր հըրաման տըւաւ կըրկին,
Բերել եասուր զթօփեր բերդին,
Սէչով քաղքին գեկեղեցին,
Մեծ մեծ թօփով աւերեցին։

---

60 մեծագին A։ — 62 վլոստեօին K։ — 63 զաբեղնին K։ — 64 ոսչով A։ — 69 մեւս K։ — 70 վլոստեյին A վլոստեօին K [illegible]։ — 71 խըրկեց H։ — 73 մէջի H։ — 74 խ. շապիկք K։ — 75 մեծագին A։ — 76 բաժկամաններըն A։ — 80 եւ մ. H։ — 87 մարդիք A։

Վասն մեղաց մեր անքննին,
Փորձանք եկաւ Հայոց ազգին,
Աշխարհականք 'ւ իրիցանին,
Ամենեքեան փախուստ տային։

Շատ որք փախան մայրին մտան,
Ոմանք բաղերըն պահուեցան,
Մերկ եւ բոկիկ ի շուրջ եկան,
Եւ լալագին մոլորական։

Հարք ի որդւոց բաժանեցան,
Որ այս չարիս հանդիպեցան,
Բուն սիրելիքըն քակեցան,
Վայ եւ եղուկ մխարերան։

Ի լուսանոյլ շորեքշաբթին,
Պարոնն եկաւ ի վխատեռին,
Եւ զինչ Օլախ կայր Սեչովին,
Ժողովեցան ի միասին։

Այլ չար հրաման տուար կըրկին,
Զինչ որ գըրեանք կայր վխատեռին,
Զարծաթապատ աւետարնին,
Զանգին գըրեանք Հայոց ազգին։

Հանին ի դուռն ի վխատեռին,
Եւ փայտի պէս կըտացեցին.
Այն անուրէն պեղծ Օլախնին,
Զամէն գըրեանքըն այրեցին։

Շահեփան պարոնն ի վխատեռն էր,
Ի բարձր տեղէքը նըստել էր,
Զհայոց աւրէնքըն բամբասէր,
Վերուստ հայէր եւ ծիծաղէր։

---

101 որոց A։ — 114 կըտորեցին K։ — 117 շահեփան A։

Սեչով քաղքի գեղեցկին,
Եւ բդվաներն Հայոց ազգին,
Զորն այրեցին 'ւ աւերեցին,
Մինչեւ ի հիմըն հաստուցին։

Զամէն գանկակն եւ պատկերքնին,
Տաճարն իւրեանց եկեղեցին,
Ասին. Արժան չէ այս հային,
Դուրս վայել են մեր ազգին։

Ցեառդ հրաման եհան կրկին,
Ասաց. Բերէք զհայ երիցնին,
Զվայթ տանուտէրքն եւ պըռակարնին,
Զկանայք 'ւ աղջկունքն ի միասին։

Բազում ամաշեր որփուեցան,
Քաղքին արներն եւ մերեստան,
Զհայոց ազգըն գորս որ գըտան,
Թէ քահանայ թ' աշխարհական։

Զամէնքը փոսէն ի գուրս հանին,
Շաղք ի մօրին գըտան բերին,
Կանայք բազում եւ աղջիկնին,
Նորահարսներ 'ւ երիցակին։

Զամանց ըղձեոքն կապեցին,
Եւ շատք մաղէն ի քարշ բերին.
Բերին ի գուռըն վիստեռին,
Անտանելի չարչարեցին։

Այն վայվասան պեղծ Շահէֆան,
Որ ինքըն եղեւ դիւաց գարան,
Ասաց. Հայեր դուք միարան,
Ականջ դըրէք ամենեքեան։

---

127 աւեն K. — 129 եկա. K. — 130 իրիցնին H. — 132 աղչկուենքն A. — 136 թէ ա. AK. — 138 հա-նե -[-] P. մօրին P. — 139 աղջիկնին A աղջըկնին KP. — 140 երիցակին P. — 143 վիստերին P.

Այդ ինչ հաւատ է որ կու՞ պաշտէք,
Ամէն ազգէ դուք ի դուրս էք.
Եկէք ամէնքդ Օլախ եղէք,
Ի մեր հաւատն մըկըրտեցէք։

Ասեն Հայերըն միարան.
Լըսէ պարոն մեր Շահեփան,
Քրիստոնեայ եմք ամենեքեան,
Եւ մըկըրտած ի յաւազան։

Պեղծ վայվոտան Օլախ ազգի,
Պատասխանեաց Հայոց դասի.
Եկէք մըտէք հաւատ Հռոմի,
Շատ մեծութիւն տամ եւ ձեզի։

Ի Սեչավայ Ջըրեղերին,
Զաթանէտուն սահմանեցին,
Եւ ի վերայ շատ ծեղ լըցին,
Փըքրիկ դըռնակ իւրեն թողին։

Կըրկին ասաց Հայոց ազգին.
Թէ չըմըտնողքըն հաւատ Հռոմին,
Լընում ըղձեղ այս տան միջին,
'Ի ի հուրըն այրեմ զամենեսին։

Քահանայք եւ աշխարհական,
Կանայք 'ւ աղջկունք ամենեքեան,
Բոլոր որդուի յաւժարեցան,
Թէ հուրըն այրինք մեք միարան։

Այն անիծած 'ւ ամբարտաւան,
Օլախ ազգի չար վայվոտան,

---

148 ունկըն KP։ — 149 այս A հաւատք KP է չունքն KP։ — 151—152 որ դուք ամէնքըդ մեյտր էք | եկէք ի մեր հաւատն մըտէք KP։ — 153 ասցին KP. — 155 մեք քրիստոնեայ եմք միարան KP։ — 158 ազգի P։ — 164 իրեն K։ — 166 թէ ով չըմտնէ KP։ — 168 եւ A։ — 172 ի հուրըն այրէին միարան KP։ — 173 եւ A։

Եկաւ Հայոց ազգըն լըման,
Որ այրմանէ ոչ վախեցան։

Չար հըրաման եհան կըրկին,
Զհայոց ազգըն ժողովեցին,
Ըզվայթ, պըռկար, գերիցանին,
Զկանայք 'ւ աղջկունքըն ի միասին։

Պիղծ անիծած չար Օլախնին,
Զնորա ծորով մերկացուցին,
Հռոմի հաւատ դաւանցուցին,
Եւ ակամայ մըկըրտեցին։

Պարոնն ասաց. Եա իշխան եմ,
Եւ չարաչար ըզձեզ տանջեմ,
Ձեռուիդ կըտրեմ դաշուրդ հանեմ,
Դարձեալ կըրկին ըզձեզ կընքեմ։

Զոմանց մօրուքըն կըտրեցին,
Զոմանց մազերըն մըկրատեցին,
Անտանելի չարչարեցին,
Յետոյ կըրկին մըկըրտեցին։

Զաբեղաներն եւ գերիցնին,
Ըզկուսակներն ածիլեցին,
Հռոմի հաւատ մկըրտեցին,
Աշխարհական կերպ հագուցին։

Զեպիսկոպոսըն բըռնեցին,
Զմազն եւ զմօրուքն ածիլեցին,
Եւ հաւատոյ գինքըն հանին,
Եւ մեծ փողպատ վիզն հագուցին։

---

178 ազգս P։ — 180 եւ A։ — 184 յակամայ A։ — 187 Ձեռվին… աչվին A։ — 189 մօրուքն A ածիլեցին KP։ — 190 կտրեցին KP։ — 191 անտանի A։ — 194 գրչէշներն K գրչեզներն P։ — 196 ազցուցին A ազուցին P հագցուցին H։ — 200 գինքն A։

Զկանայք լալով տանէն հանին,
Բռնութեամբ տանան կացուցին,
Զամենեսեան մերկըրտեցին,
Հումի հաւատ դաւանցուցին։

Զգըլխընուն հագուստ առին,
Եւ զանձներուն շապիկըն հանին,
Եւ Օլախի կերպ հագուցին,
’Ւ ի գըլխըներըն տուլպանդ դըրին։

Զտանըն տապըշանըքըն քակեցին,
Զհանգըստարանըն աւերեցին,
Օլախի պէս սահմանեցին,
Զտունն եւ զհանգիստ Հայոց ազգին։

Օլախ երիցներ շուրջ եկին,
Եւ զՀայերուն տունըն աւրհնեցին,
Ըզամաններըն եւ զզաւթըրնին,
Աւրհնած ջըրով լուանալ տուին։

Ով է տեսել այսպէս խեղճ բան,
Որ այս երկիրըս գործեցան.
Վայ եւ եղուկ միաբերան,
Որ այս չարիս հանդիպեցան։

Յասուած եկաւ Հայոց ազգին,
Այս Օլախաց երկրի մէջին.
Զեկեղեցիքըն աւերեցին,
Եւ զսուրբ գըրքանքըն այրեցին։

---

202 եւ զաղջիկներն (զաղջկներն P) ի միասին KP։ — 205 զգըլխըներուն KP։ — 206 շապիկ A ըզշապիկն KP։ — 207 եւ] ի KP տգուցին KP։ — 208 եւ A ու K չ—նչ P գլխներն K տոլպանտ K տուլպանդ P։ — 209 տապշանքըն P քակեցին K քանդեցին P։ — 212 եւ զհագուստ P։ — 215 ամանանեղ եւ զզաւթնին K զամանաներն եւ զպատաթննին P։ — 216 տըվին A։ — 224 զսուրբ չ—նին KP։

Այսպէս չարար պեղծըն Վլաղէս,
Յուլիանոս, Հաղեփնոնէս,
Մարկիանէ եւ Հերավգէս,
Եւ փարաւոն 'ւ Աղեքսանդրէս։

Բազում չարիք որ գործեցաք,
Եւ աւրինաց ի դուրս ելաք,
Եւ ադաւթից մեք ձանձրացաք,
Զողորմութիւն տալն ուրացաք։

ԶԱստուած սըրտէ ոչ սիրեցաք,
Ըզհայր եւ զմայր ոչ պատուեցաք,
Ընկերատեաց մեք խիստ եղաք,
Եւ զհիւրն ի տուն ոչ ընկալաք։

Ախտապահ եւ խըռով կացաք,
Անհաշտութեամբ զաւր անցուցաք,
Բամբասանաց տեղի տուաք,
Որ այս չարիս հանդիպեցաք։

Լալով ասեմ թէ Տէր մեղայ.
Դու արարիչ մեզ ողորմեա.
Ի այլազգեաց զմեզ ազատեա,
Ի այս ցաւէս դու կազդուրեա։

Դարձեալ կըրկին հրաման հանեց,
Ամէն քաղաք առմաշ ղըրկեց,
Զգըլուխ հայերն ամէն բըռնեց,
Զեկեղեցիքըն ամէն մահրեց։

Զերիցանին զվըշթըն ձենեց,
Եւ ակամայ զիւրեանք կընքեց,

---

226 հողէփնոնէս A։ — 228 աղէքսանդրէս A։ — 232 մոռացաք K։ — 239 տեղի տուաք բամբասա-նաց P։ — 244 դու] չուտ P փարատեա KP։ — 246 յարմաշ A արմաշ P խրկեց HP։ — 247 ղամէն KP։ — 249 զերիցանին A։ — 250 յակամայ A։

Լուսաւորչին հաւատէն հանեց,
Մեծ հրամանաւ ապրապըրեց։

Թէ զինչ հայ կայ թող մըկըրտին,
Կանայք 'ւ աղջկունք ի միասին,
Թող հայ չկենայ ի մեր երկրին,
Ըմէնն Հռոմի հաւատ լինին։

Իկեղեցի զինչ կայր հայի,
Խոթին, Սերաթ, Խաշպազարի,
Վասլուի, Պոտշան, Սուչաւանի,
Ըմենեքեան հիմըն քակի։

Սաստիկ հրաման եհան կըրկին,
Զեկեղեցիքըն աւերեցին,
Զինչ անօթ կայր կողոպտեցին,
Զհայոց գըրեանքըն այրեցին։

Պոտշան քաղքին եկեղեցին,
Ոսկով պատկերք գըրած միջին,
Շատ մալ խարճած վերայ նորին,
Յիշատակ էր Քրիստոսուրին։

Վոյվոտային աղաչեցին,
Հազար կարմիր տանք քեզ ասին,
Ըսկիք, խաչեր եւ զանօթնին,
Մի աւերել զեկեղեցին։

Պեղծ վոյվոտան նոցա ասաց,
Զխընդիրքըն նոցա ոչ կատարեաց,
Ընպատճառ քակել տաց,
Թէ չէ գըլխոցդ էլ գուք զըրկած։

---

254 եւ A. — 255 ի յիմ K. — 257 եկեղեցիք KP. — 258 սէրաթ A յասպազարի KP. — 259 վասլով A վասլու P պոշան P. — 260 հիմնէն KP. — 263 եւ զինչ K եւ զանօթք կողոպտեցին P. — 264 եւ զհայոց P. — 264 պոշան KP. — 266 ոսկով A. — 270 ասցին KP. — 272 աւերեր KP.

Քաղաք մի կայր Ուռումանի,
Ինքըն փոքրիկ բարով ի լի,
Շատ հայ ազգ կայր ի յայն տեղի,
Խիստ տովլաթվորք եւ անուանի։

Երէց մի կայր իւրեանց միջի,
Եւ շատ գանձով բարեաւք ի լի,
Հեզ եւ հանդարտ ամենայնի,
Հիւրամեծար էր աղքատի։

Տարին յառեան գնա կացուցին,
Ասցին թէ մուտ հաւատ Հոռմին,
Թէ չէ տանջենք անհընարին,
Բանդ եւ ի մահ աղջամղջին։

Տէր Խաչատուր քաջ եւ արին,
Պատասխանեաց ի դէմ նոցին,
Չեմ ուրանալ զհաւատքս հին,
Զդաւանութիւն Լուսաւորչին։

Ի Մինթանայ երկրէն եկայ,
Հաւատս համար պանդըխտեցայ,
Ըզիմ հաւատն ոչ ուրացայ,
Ի այս երկիրս բընակեցայ։

Եւ այլ բազում բանեք ասաց,
Թէ ձեր հաւատն ու դուք կորած,
Ամէն ազգէ աչքից ելած,
Օլախաց ազգ հոտած նեխած։

Պատասխանեաց չար վոյվոտան.
Տայ հայ երէց ամբաստութեան,

277 կայր [illegible] P։ — 280 տօլվայթորք K։ — 282 բարով KP։ — 285 գինըն P։ — 286 ասացին A։ — 288 աղջումըղջին K։ — 293 Մինթանայ P։ — 299 աչիչ A։ — 300 օլախացն հոտածն KP եղած P։ — 301 պէղծ P։ — 302 ծո՛ P տո K երէց A։

Դարձիր առ բէնք քաղկեդոնեան,
Որ չի ամենքեմք գրեզ յաւիտեան։

Դարձեալ հրաման ետ ծննկանին,
ԶՏէր խաչաւորքն ամենեցին,
Ըզձեռն եւ զոտքն կապեցին,
Եւ զերկու աչքըն փորեցին։

Արկին ասաց թէ Ուրացիր,
ԶԼուսաւորչին հաւատն ընտիր,
Թէ չէ զգրլուխըդ կորուսիր,
Զդուստր եւ զորդիքըդ խեղճ արիր։

Առաջնորդուն ասաց. Գնացէք,
Զդուստր եւ զորդիքըն չարդեցէք,
Ըզտուն եւ զանդըն թալնեցէք,
Ցետոյ զերէցըն կրնքեցէք։

Երբոր եկան պեղծ առաջնին,
Կին եւ որդայքըն ձիչ բարձին,
Լալով անկան յոտքս ծնողին,
Աղաչելով կողկողագին։

Արա ըզկամք թագաւորին,
Եւ մըկրտիր հաւատ Հոռմին,
Թէ չէ անմեղ զաւինք քոյին,
Սըրոյ ճարակ տուեր գահճին։

Ծընողական գութն շարժեցաւ,
Եւ իւր որդոցն ողորմեցաւ,
Եւ ակամայ մըկրտեցաւ,
Եւ Օլախի հաւատ մըտաւ։

303 արի եզիր KP քաղկէդոնեան A։ — 304 որ չամենքեմ (ամենքեմք K) գրեզ ի յաւտեան KP։ — 305 ծննկանին KP։ — 307 ձեռվին եւ զոտըն KP։ — 308 երկու աչկունքըն KP։ — 316 զէրէցն A, տոշ 315 Ի— 316 Ի+Ի———Է·—Ի—Ի P։ — 319 յոտքս անկան K։ — 320 կողկողայգին A։ — 324 տուիր K։ — 327 յակամայ A։

Ի այս վերջին ժամանակի,
Հայոց ազգըս կայ վըտանգի,
Եւ տարագիր ի աշխարհի,
Այս Օլախաց փոքրիկ երկրի։

Վայ եւ եղուկ հազար բերան
Հառաչեցէք ամենեքեան,
Այս Օլախի Հայերս որ կան,
Ի հաւատոցըն զըրկեցան։

Եկեղեցիքըն քակեցան,
Այն սուրբ տաճարքըն անտեր եղան,
Ազնիւ գըրեանքըն հուրն այրեցան,
Զայնք պաշտամանցըն վերացան։

Խիստ գեղեցիկ անօթք կային,
Խաչ եւ ըսկի եւ շուրջառնին,
Աղէկ մարդկաց յիշատակնին,
Բաժին եղաւ Օլախ ազգին։

Այն քաջ ուսած երիցանին,
Քաղցրաբարբառ սարկաւագնին,
Թագաւորքըն եւ գալէշունին,
Ցանկարժանի խափանեցին։

Այն հրաշալի գիշերժամին,
Եկեղեցեաց ուխտի նորին,
Զայն հանդիսաւոր մատաղնին,
Զնընջեցելոց մեծ թաղումին։

Մեծի ծնընդեան ջըրօրհնէքին,
Առաջաւոր եւ մեծպասին,

329 կան KP։ — 330 տարայգիր A։ — 335 Օլախաց KP։ — 338 ա. այրեցան KP։ — 340 ի ժամանակին (-ակդքն P) ոչինչ դարձան KP։ — 345 երիցանին A։ — 347 գալէյուքնին HP։ — 350 եկեղեցեաց ուխտ ի յորին K եկեղեցեցեայց ուխտի որին P։ — 351 զան A հանդիսի զմատաղնին KP։ — 353 ջըրօրհնէացն որին KP։ — 354 առաջաւորք սուրբ մեծ պա-

Տեառնընդառաջ քառասնօրդին,
Եւ աւետման սրբոյ Կուսին։

Արմաւենեաց ծաղկազարդին,
Մեծահանդէս զատկի աւուրն,
Յինանց վըճար համբարձմանն,
Եւ Հոգւոյ գալըստեան աւուրն։

Վարդավառին աւր կիրակին,
Աստուածածնի ննջման աւուրն,
Խաչվերացի սրբոյ ուխտին,
Եւ այլ սրբոց որ տաւնէին։

Այն հրաշալի մեծ աղաւթքնին,
Որ կարդացուէր ժամատեղին,
Զաւանըն սրբոց խիստ պատուէին,
Եւ զտէրունի աւր կիրակին։

Ամենեքեան ոչինչ դարձան,
Ժամ եւ աղաւթքն խափանեցան,
Երիցանիքն կարգէն անկան,
Եւ ժողովուրդքն մոլորեցան։

Յերկրոց երկիր շատոք անկան,
Քահանայքն եւ աշխարհական.
Բազում եղբարքն բաժանեցան,
Ղարիպութիւն վըտարեցան։

Արք ի կանանց խիստ հեռացան,
Ի այլ քաղաքս բընակեցան,
Ով է տեսել այսպէս խեղճ բան,
Վայ եւ եղուկ հազար բերան։

---

սին K առաջաւորի աւուրք պասին P։ — 355 քառասօնորդին KP։ — 360 հոգւոյ A յորին P։ — 363 եւ աւուրք խաչի մեծի տանին KP։ — 365 աղօթնին KP։ — 367 զօրն KP։ — 373 շատոնք KP շատ որ H։ — 375 եղբայրք AP։ — 377 որք K։

*Ով անիրաւ չար Թագաւոր,*
*Թող դու լինիս գըլուխ ի կոր,*
*Քո մեծութիւնդ լինի խոտոր,*
*Որ Հայոց ազգն արիր մոլոր։*

*Երնաւ դու չես մեղադրելի,*
*Ով արդարանեակ ատեանոյի,*
*Աստուած երկրի մի բարկացի,*
*Զար Թագաւոր յայտնի լինի։*

*Ի մեր անիրաւ գործոց չարեաց,*
*Ցասումն եհաս Հայոց ազգաց,*
*Իւր սուրբ մարմինն ոչ խընայեաց,*
*Ետ արկանել ներքոյ ոտաց։*

*Ցաւալին իւր սուրբ աւանդըն մատնեաց,*
*Ըզսուրբ մեռոնն յերկիր ցըրուեաց,*
*Զիւր սուրբ գըրեանքըն հըրով այրեաց,*
*Զեկեղեցւոյ հիմըն շըրջեաց։*

*Եկեղեցին քար եւ կիր է,*
*Եւ իւր անօթըն ի այլ նիւթէ,*
*Եւ սուրբ գըրեանքըն ուսուցիչ է,*
*Խաչ եւ բոկերք ի արծաթէ։*

*Երբ ան չունին որ բամբասեն,*
*Ոչ ձեռս եւ ոտք որ մեղանչեն,*
*Վասըն մեղաց մարդկան որ են,*
*Ցըյցըս մարդկան պատիժ կըրեն։*

*Զ՚Հայոց ազգըն դառըն մատնեաց,*
*Ի ձեռս արանց բըռնաւորաց,*
*Ի հաւատոյ պիւրեանքըր զըրկեաց,*
*Ծաղըր եւ նախատինք դըրբացեաց։*

---

384 *արեր* K։ — 396 *զեկեղեցի հիմնէ* KP։ — 399 *պէսպէս նիւթէ* KP, *տող* 399—400 [illegible] P։ — 407 *զհուրբեանք* KP։ — 408 *ծաղր ն. արար գ.* KP։

Աստուած փրկէ ի այլ չարէ,
Եւ այլ մեծ մեծ պատուհասէ,
Ի յաշխարհիս թէ չարչարէ,
Անանց կենացն անտես չառնէ։

Յոյս ունիմք առ Տէրն ամենի,
Որ ողորմի Հայոց ազգի,
Ով որ չարկամ եղաւ մեզի,
Ընդ ահագին ատեանն դատի։

Քահանայք եւ աշխարհական,
Խնդրեմք ձեզնէ հառաչական,
Դարձիք մեղաց ապաշխարական,
Լալով առէք ըզՏէր մեղան։

Ես անարժան մեղաց գերի,
Մինաս անուն պարոնաւելի,
Ես եմ ղարիպ հայաստանցի,
Թոխաթ անուն քաղաք կոչի։

Զայս դառն աղէտս աշխարհ տեսի,
Այն Օլախաց փոքրիկ երկրի.
Փորձանք եկաւ Հայոց ազգի,
Քահանայից եւ ժողովրդի։

Ցանդէտ մտացս յառաջ եկի,
Եւ տակաւին ողբս ասացի.
Ձեզ աղաչեմ յոյժ անեղջայլի,
Զիս յիշել առնէք արժանի։

Մեղաւորս լի եմ անարժան,
Ոտից ձերոց լինամ կոխան.

410 եւ չունին KP մեծամեծ KP։ — 413 անդ ամեղ P։ — 415 եղեր KP։ — 417 եւ չունին KP։ — 418 խնդրեմ KP։ — 423 հայաստանցի K։ — 426 այս KP։ — 428 եւ չունին KP։ — 429 եկան KP։ — 430 եւ տակաւ ողբս գրեցան KP։ — 431 ա. զամենեսեան KP։ — 432 զիս յիշելոյ արէք արժան KP։ — 433 եմ ՚ւ H։ — 434 լինիմ KP։

Զկորնայէք բղձայր մեզան,
Ըղձուրք աղաւթքըն ամէրունական։

Աւրհնութիւն տուք գուք միաբան,
Երրորդական աստուածութեան,
Որ զմեզ փրկէ ի այլ ցասման,
Այժմ եւ յաւէտ եւ ապագան։

## 2.

### ՏԱՂ ՄԻ ԳՈՎԱՍԱՆԱՑ ՀԵՐԻՍԻ

*ի Թոխաթցի Մինաս դպրէ ասացեալ որ ի Լեհաց տունն վախճանեցաւ:*

Ի Հոգոյ Հաւատոյ անձնէ
եւ անարժան ձեր ծառայէ
ի Թոխաթցի Մինաս դըպրէ
շատ կարաւտով բարեւ Հասցէ։

---

436 ամէրունեան K։ — 437 գուք տուք K։ — 440 աւէտ AP ապագայն KP։

Ձեռագիրք՝ A = Թ. 797, Թղ. 104բ—108ա (Չ. Կ. 155ա—159բ)։
D = Թ. 343, Թղ. 213ա։
B = Թ. 160, Թղ. 201բ։
C = Թ. 493, Թղ. 68բ։
E = Թ. 499, Թղ. 3։

Հրատարակութիւնք՝
K = Կոստանեանց՝ Նոր ժող. Ա. 50—56։
S = Սիոն, 1894, էջ 132—135։
M = Արեւելեան Մամուլ, 1886, էջ 18—19։

Խորագիրն ... Թոխաթցի ... Լեհաց ... ընդօրինակեալ կայ Յիսուս որդու [գոյնն առա] A չունին DCE վասն Հերիսի K այս գովասանք Հերիսայի | գոր (չունի M) ասացեալ (+է M) Մինաս դպրի | որ քաղաքացի էր Թոխաթցի | յետոյ մեռաւ Լովանտացի (Իլովատանի M) BM գովութիւն ի վերայ Հերիսայի S։ — 1 յանձնէ A։ — 2 յանարժան B։ — 3 Թուխաթցի A չունին տողը BM։ — 4 կարօտու B Հոս կ'աւելցնեն երեք տողեր տող ծունրըս կրկնեմ յուզիք արած BM։

Սուրբ վարդապետ քաջ եւ արի
Արթուն անուամբըն Վանեցի,
շատ Հերիսայ կերցուց մեզի,
մէկին հազար իւրեանն տայի։

Թէպէտ որ եմ խիստ մեղաւոր
հիւանդ հոգւով, ծեր ալեւոր,
ի ձեր առջեւն եմ գըլխիկոր
ղապուլ արէք որբաքիւ յորդոր։

Բուն բարեկենդանըն մօտեցաւ
ուրախութեան ժամըն հասաւ
արեգաթոցըն բարձրացաւ
մորթէթոթոյն անհետ եղաւ։

Այս զատրն տեղըն որ մեք անկաք
ամէն բանէ մահրում եղաք
հոգեւորէն զըրկըւեցաք
եկաք մարմնոյ ծառայ եղաք։

Յոյս ունիմ առ Տէրն ամենի
որ մեզ շուտով նա ողորմի
միթէ փութով մահ չի կամի
զատանամք երթամք ի մեր տեղի։

Բարեկենդան է մի մեղադրէք
զինչ որ ասեմ ի վեր շառնէք

---

31 ընծի B ինծի M։ — 32 իւրեանց D իւրն BM։ — 33 եռ եմ M։ — 34 հոգով AD։ — 35 գլուխիկոր D։ — 36 որբութիւ D։ — 37 բարեկենդանն BDM։ — 39 հարեգայթոցըն D հարեգաթոցըն M։ — 40 մորթէ թոթոյն A թորթով D։ — 41 յայս BM [illegible] A։ — 42 եղանք M։ — 43 հոգեւորէ B զրկուեցանք M։ — 44 եկայք A եկանք... եղանք M։ — 46 միթէ չ. BM նայ A ինձ BM։ — 47 դառնե. փ. BM չըBM։ — 49 [illegible] CEK բարեկենդան BCDEKM մեղայդրէք A։ — 50 զոր ինչ BCEK ի վեր առէք BC մի անտպէք EK։

*ըզՀերիսին Թապաւորն արէք*
*եւ կանըխնկեկ ուտեցուցէք.*

*Ով Թոխաթցի Մինաս դըպիր*
*ի Հերիսին փէշըն կըպիր*
*Թուլցուր զգաւաթդ եւ կըշտացիր*
*փափուքանայրդ քո Հասիր.*

*Ա՜յ Հերիսայ իմ սիրելի*
*ամենեցուն ես ցանկալի*
*յերուսաղէմ 'ւ ամէն տեղի*
*առանց քեզ մատաղ չըլինի.*

*Ա՜յ Հերիսայ իմ գովական*
*ոչ ով չըկայ ի քեզ նըման*
*ամէն մարդիկ գէմ քեզ գողան*
*եւս առաւել ես անարժան.*

*Ա՜յ Հերիսայ դու Թագաւոր*
*քաշկակըն քեզ է սպասաւոր*
*խորվուն է քեզ մեծ գինաւոր*
*փիլաւըն քեզ նըմանաւոր.*

*Ա՜յ Հերիսայ ընտիր գոված*
*ապուրներուն մէջն ես առըՀնած*
*մեռեալքըն ի քեզ ապաշխարած*
*քենով փրկին յամէն մեղաց.*

51 զՀերիսայրն BDM Թապաւոր B Թէպաւորն EK Թապաւորէ C Թագաւոր M. — 52 կանխնկիկ AEK կանուխնկեկ C կանխորկէկ M. — 53—56 այս տունը տ. 92ին տունէ կը կրկնուի BCEK չկան M. — 57—60 տ. 92ին տունը չկան M. — 58 դու BC դուն E. — 59 եւ A ու K. — 60 չի լինիլ C. — 61—64 չկան C. — 62 ոչ ուրիշ կայ M քեզի DE քեզ K. — 63 գէմ քեզ] առնէւք EK. — 66 քէշկէկըն BCE կէշկէկն K է քեզ DK. — 67 խորված C զօրաւոր EK. — 68 փլաւն CD է քեզ C. — 69 ապուր որՀնած EK. — 70 գոված EK. — 71 մեռեալն D մեռեալք K զքեզ BCEK ապաշխարած K. — 72 ի քեւ K.

Ով զիւր մեռեալըն կու սիրէ
պատարագաւ ըզնա յիշէ
գիշերն ի քուն ըզքեզ եկէ
եւ վարդուրնէն առատ քաշէ։

Այն մարդոյ հեշա ուտելի
եւս առատել ծերոց դասի.
առանց ծամել ի կուլ տանի
եւ իւր հոգին փառաւորի։

Այ հերիսայ իմ գովելի
բաղդում բարեաց եւ արժանի
շաքարն եւ մեղըն ի դէմ քեզի
բընաւ ի քեզ ոչ նըմանի։

Այ հերիսայ ապուր գոված
ամենեցուն ես դու պատուած
թէ կենդանեաց եւ թէ մեռած
դեղթափ ես դու փորու քաղցած։

Այ հերիսայ իմ գովելի
արժան լինիս դու իմ բերնի
կակուղ լուշով ի կուլ տալի
կարմիր գինով զքեզ թաղէի։

Նա ծեր ալեւորքս մեղաւոր
զքեզ կու սիրեմ օրըստիւ բոլոր
զինչ կերակուր կայ խիստ աղուոր
ամենեցուն դու թագաւոր։

---

73 մեռելըն A. — 74 ըղնայ AD. — 76 վարդմե-նէն A վարդմնէն BDEK վարդնիւն C. — 77 մարդու A. — 83 շէքէրն K շաքար . . . մեղր M. — 84 չի BCE չէն K. — 85—89 տ. 93էն յետոյ դրած M. — 85 օրհնած BCEK. — 86 յամենեցուն BM. — 87 եւ. չունի B մեռեալաց BC մեռոյ K. — 88 դեղթափ K դու. չունի K փորոյն M բարու C. — 91 լեղով A լուշով C. — ըն՞դ մէջ տ. 92—93 կը տեսնես BCEK տ. 53—56. — 93 ալեւորքն A հմմ մ, D. — 94 կը A սրտովս K սիրտիւ D բոլոր չունի D. — 95 զ. որ աղա

Ա՜յ հերիսայ գիս խեղճ արիր
որ յայս երկիրըս ծըգեցիր
տարին անգամ չես հանդիպիր
որ գըլեղ ինծիկ ի կեր տայիր։

Ամ խիստ անուշ ես հերիսայ
երբ արդար եղըն շատ լինայ
կակուղ հացիկն ընկերանայ
ով որ ուտէ ուրախանայ։

Ա՜յ ինչ գովանք տանք հերիսի
երնէկ անոր որ հանդիպի
կամ ես եւ դուն մէն պիտէի
ի սրբախս մէջ անեղըն տայի։

Զինչ ազգ որ կան ի յաշխարհի
քեզ գովանք տան ի հետ ինծի.
եւ փափագին ի դէմ քեզի
որպէս մեղու ի դէմ ծաղկի։

Վարդապետաց դասք ամենայն
կրաւնաւորքըն միաբան
յորժամ լըսեն բըհերիսան
ամենեքեան զվանքըն ուրանան։

Իրիցականքըն ամենեքեան
զերիցկընոջն բըլթարկըն տան,

---

այս փոխէ D։ — 122 որ ի Լեհաց երկիրս ձ. K։ — 123 ա. մը B ա. մի D։ — 124 ընծի B ընձի C ինձի KM կեր M։ — 125 այ BCM անուշ CDK։ — 126 եղը KM։ — 128 Հա՛ն կը Ֆրքէոհոյ C։ — 129 զինչ M տամ BM տանք D հերրոի B հերիսին DM։ — 131 եւ ես ու. B գու. DM մէկ B մինակ լինէի D։ Հա՛ն կը փոփոխէ D։ — 132 ի յոռնէ M մէջըն BM անեղի B քեղ անեղ M։ — 133 զի B։ — 134 գովասանք B ի յոռնէն BM ընծի B ինծի M։ — 138 եւ կ. M։ — 139 ամենուն M։ — 140 Հա՛ն կը օխօէ A ...քն ուրանան բառերով։ — 141 երիցականքըն BKM ամենայն K։ — 142 զերեցկընոջն M թասկն K։

զամէն ուսումքըն մտաւոր
վայելն 'ւ երթան ի հերիսան։

Աղքատք եւ կոյրք որ կու մուրան
ծերք եւ որդոյք կին պատուական
ամենեքեան համանգամայն
վայելն 'ւ երթան ի հերիսան։

Մահմետականքն ամենեքեան
թողուն զփիլաւն եւ բղղարման
բղփախլաւան եւ բղզըրվան
եւ զան ուտեն բղհերիսան։

Կերակրոց մէջն ես դու գոված
Լուսաւորիչն դքեզ յօրինեաց
արար բղքեզ եւ հաստատեաց
եւ կերակուր մեզ պատրաստեաց։

Այնիւ ծաղկանց դու նման ես
համասփիւռ վարդի թերթ ես
յոր տեղ որ է եփեն բղքեզ
անմահութեան հօտքն բուրես։

Որպէս զանկի անապական
եւ անգին քար պատուական
մեռած հոգիքն ուրախանան
եւ կենդանիքըն քեւ ցընծան։

---

143 ուսումն BKM։ — 146 պատուական A։ — 147 համայնգամայն A։ — 149 տաճիկն պարսիկն մահմետական M։ — 150 զփէրաւն BK։ — 151 բղփխրնման M։ — 153—156 բացակայ M։ — 153 մէջ K արհեստ B։ — 154 լուսաւորիչ K յօրինեց A օրինեաց K։ — 158 համասփիւռ ի վ. A համասփիւռ եւ (B եւ չկայ) վ. BKM տերեւ ես B։ — 159 ուր K որ M։ — 160 հոտ կու բ. BM հոտը K։ — 161 ակի K։ — 162 քան զանգին M ակ ես B ակն K ես պ. BKM պատուական A։ — 163 քեւ (քեզ K) ցնծան BK։ — 164 ուրախանան BK։

Հարք եւ եղբարք իմ պատուական
մարեր քուրեր ամենեքեան
խնդրեմ ձեզնէ լալոտական
որ չի մոռնաք ըղձերիան։

Երբ որ եփէք զհերիան
ինձ զարիպիս կեր տաք արժան
ի յԱստուծոյ դարձցի փոխան
արքայութիւնն անանցական։

Մեռանէքն ամէն ի հող տապան
յորժամ լըսեն ըղձերիան
ցընծան հոգիքն եւ զուարճանան
եւ արարչին մերոյ փառք տան։

Ի թուականիս հազար ամի
եւ տասն 'ւ երկու թիւ աւելի
եւ ի յամենայնն փետրուարի
աւուրն էր ութրաթ հինգ համարի։

Բայց այս զարիպըս Թոխաթցի
Մինաս անուն մեղաց գերի
եկի անկայ Լեհաց երկրի
կարաւտ մնացի եւ հերիսի։

Ծեր ալեւոր եմ եւ բազմիտակ
ակռայ չի կայ բերանս դարտակ

---

166 մայրեր քոյրեր M։ — 167 ի ձէնջ K լալո-գական BK լալովական M։ — 168 մոռնայք B։ — 170 տայք M։ — 171 դարձի A տացի M։ — 172 զար-քայութիւնն A արքայութիւն K։ — 173—176 տողերն չունի M։ — 173 մեռանելքն BK։ — 175 հոգւով BK։ — 176 մերոյ չունին BK գոհութիւն B զփառս K։ — 177 թվականիս AKM։ — 178 եւ մր A 'ւ չունին BM։ — 179 եւ չունի M յամենան B։ — 181 այս] եւ K թոխաթեցի B։ — 183 Լէհ B Լօհ K քա-ղաքի BK։ — 184 եւ չունի B հերիսայի B։ — 185 եւ չունին BK։ — 186 չկայ K։

որ հերխան լինայ տաք տաք
կակուղ պիտոյ սէր ու կարգ.

Երգը՛ գըրած է Մինասի
անմիտ յիմար եւ փանտալի
ձեզ արմաղան ընծայեցի
ըղձիղ յիշէք սիրով որբասի.

Եւ որ տայ մեզ ողորմի
բիւրապատիկ իւրենն տացի
արժան լինի ինք հերխնի
եւ մատուցման պատարագի.

Հայր մեր յերկինս ով որ տայ
ուղեղ սրբտով ըղձըն յիշէ
ինքըն ընկալցի ձայնըն լսէ
յաջակողման դասն անցանէ.

3.

ՏՈՂԱՍԱՆՔ Ի ՏՈՒՏՈՒՐ ՎԱՐԴԱՊԵՏ

Պայծառ արեգակն ես դու
ի գարնան օրերն ի նըման,
Շառաւիղք ի ծաղկունքն իջնուն,
ու ծաղի լոյսըն զանազան.
Ախիծու նման ես դու
որ անվախին է իշխանական.
Աստուած օգնական լինի
քեզ աջավըն աէրունական.

187 լինի BK. — 188 պիտոյ K մեզը K կարգը AK. — 192 ըղձիս BM յիշեցէք M որբի M. — 194—200 չ—կ M. — 194 իւրեանն K. — 195 ինք չ—կին BK հերխայի BK. — 198 սիրով B զիս K. — 199 ընկալցի որհնեալ BK.

Հրատարակեցին՝ Արեւ. Մամուլ, 1885, էջ 123.

Քո աչքն իմ սրտիս միջին
  է պատրուս, ծաղկեալ զանազան.
Դու ես վարդ անոյշ հոտով
  ու կանանչ գինջ բալմանուշակն։
Դու ես պայծառ հոտով
  եւ բուրմամբ հոգւոյն սրբութեան։
Շնորհքն որ ի քէն բղխէ,
  նա խնդան հոգիք բանական։
Քարոզ ես Հոգւոյն Սրբոյ
  եւ խրախոյս առ որդիս մարդկան,
Հաւնեց ու քաղցրիկ խօսիս,
  որ գտանեն աստուածսիրութեան։
Մոլորելոց խրատ ես
  եւ դարձուցիչ խիստ անըզգամաց,
Լոյս ես դու ի Հոգւոյն Սրբոյ,
  քեւ ցնծան հոգիքն ի կայանս։
Դու ես նունուֆար ծաղիկ
  որ բուսնի անհուն գետերն այն.
Խիստ ես գեղեցիկ գունով,
  որ խնդան մարդիկն ի վրան։
Հիրիկ, կինամոն, շուշան
  եւ նարգոս, ծաղիկ մեռանի,
Եղէգնախունկ ես հոտով,
  որ ծըխեն ի սուրբ սեղանի։
Քրքում եւ զմուռս, հալուէ
  եւ բալասան, զաղբէ Հնդկական.
Մարգրիտն որ վաճառ գընան
  ու գընեն, խնդութեամբ դառնան։
Անունդ Արթնութիւն կոչի
  Գրիգոր զուարթ պետական.
Աստուած զատակից անձնէ
  զքեզ գնդին առաքելական։
Ես ձեզ պաղատանք յընկնիմ
  իմ եղբարքս հոգեւորական.
Բերան մ'ողորմի առէք
  Մինասիս մեղաց պարտական։

## 4.

### ՏԱՂ Ի ՎԵՐԱՅ ՄԱՀՈՒԱՆ

Տեսէք դուք զարմանքը բաղում,
Թէ քանի մարդ ի հող դարձեր.
Մահն բաժանեաց զմեզ,
կորուսաք զոր ինչ ժողովեր.
Համարս տալոց եմք մեք,
արարչին զոր ինչ եմք գործեր,
Այլ վայ զանազան տանջանն,
ու զահեղ բարբարան լսել.

Քանի Ադամայ որդիք
են ծնել յայս կեանքս ու մեռել
Ու գերդ զանասուն անբան,
կենդանիքս տանէն մոլորել.
Բայց որ իմաստունքն են լել,
նա զայս կեանս ունայն համարել,
՚Ի յանդէնն իւրեանց տուն շինել,
միամիտ ի ներս գնացեր.

Սուտ է այս կենացս փառք,
՚Ի աշխարհի վայելքս ամենայն,
Դաւիթ զայս երազ տաց,
Սողոմոն ունայնի ունայն.
Խայլի ծաղիկ ասէ,
եւ ստուեր որ միշտ ընթանան,
Յոր սակաւակաց կոչէ,
ի յերկրի զկեանք որդւոց մարդկան.

Երբ Թիւն կենաց լնուի,
ու մահու օրերն մօտէ
Ոչ ոսկի ՚ւ արծաթն ազնէ,
՚Ի ոչ հեծելն թէ անհնարին է.
Բայց արդարութիւնքն մեն,
որ փրկէ զմարդն ի մահուանէ,

Ձեռագիր՝ A = Թ. 441, Թղ. 4ա.
Խորագիր՝ չունի A.

Որպէս արքային եղեւ,
 որ առեն իւրն Նըղեկիէ։

Է մարդ խմացիր զայս կեանքս,
 դու գիտես որ չէ մնացական,
Զմահն մոռացեր ես դուն,
 ամէնքս նա ապրընջական
Զոր ինչ յԱդամայ ի վեր
 են ծնեալ ամէն կու գրնան,
Ջանայ ու բարի գործէ,
 որ յանդէնն չլինիս փոշիման։

Մեռաւ նախահայրն Ադամ,
 ու ծնեալքն ամէն ի նմանէ
Հող էր 'եւ ի հող դարձաւ,
 զոր եւ Տէրն էառ ի յերկրէ։
Մենք որ մնացինք յետոյ,
 կարծեցինք մեզ մահ ոչ տիրէ.
Հանցեղ գնալոց եմք մեք,
 դերդ զուռն որ հողմն հալէ։

Մարդուն ինչքն յոլով լինի,
 նա ընաւ ինքն չի հանդչի.
Ոչ անուշ ի քուն լինի,
 'ի ոչ ցերեկ ինքն դադարի,
Զերդ գնաւ ի մէջ ծովին,
 հանապազ ինքն տատանի,
Մինչ մահու հրաւէրն գայ,
 ըմբռնէ զնայ յանկարծակի։

Խօսք ոչ խրատին մարդիկ,
 թէ մահու օրն գալոց է,
Մոռանան զահարդին տանջանքն,
 զըստուգումն անդրր ժողովէ
Զինչ որ առա գործեալ լինին,
 անդ մէկին հայար վճարէ
Ջանայ դքեզ ի զառ պահէ,
 ի մեղաց եւ ի չար գործէ։

Գ.

## ՍՏԵՓԱՆՈՍ ԹՈԽԱԹԵՑԻ

Եւդոկիա կամ Թոխաթ ԺԶ. դարու երկրորդ կէսին Փոքր Ասիոյ ամենափարթամ եւ վաճառաշահ քաղաքներէն մին էր, վայելուչ դրից մէջ։ Բնիկներէն մին՝ Յակոբ Թոխաթեցի, օտար երկնքի տակ հայրենիքին կարօտով՝ այսպէս կ'երգէր անոր գեղեցկութիւնը (Հայապատում, Գ. էջ 317—318).

Եւդոկիա դու գովական,
  Նման երկրին Պաղեստինեան
Բազում բարեաց եւ զանազան,
  ի քեզ բնակել շատ որ ցանկան...
Վայելչագեղ է նկար քոյին,
  ի մէջ երկու ձորամիջին,
Թիկունք առեալ ես դու դարին,
  եւ կու հայիս յերես դաշտին։
Ի քէն բղխէ ջուր աղբերաց
  ի շուրս անկիւն քո տարածեաց,
Անուշահամ ի ծառուեաց,
  առողանող անդաստանաց...։
Այգի դրախտ եւ բուրաստան
  շատ կար ի քեզ 'ւ էր աննըման,
Պտուղք նոցա անուշահամ,
  եւ բուսանէր վարդ եւ շուշան։

*Այսպիսի վայելչութեան մէջ կուշտ կուշտի կ'ապրէին անդորրութեան մէջ Հայ, Հոռոմ եւ տաճիկ ժողովուրդները։ Առանձին կերպով բարգաւաճած էր Հայ ժողովուրդը անտեսապէս՝ նուիրուած ըլլալով վաճառականութեան, եւ կ'ապրէր բարեկեցիկ կեանք մը։ Նոյն Թոխաթցի բանաստեղծը կը պատկերացնէ այս անդորրութեան օրերը հետեւեալ խօսքերով* (Հայապատում, էջ 318)։

> *Նաեւ բնակիչք դ. ամէներեան*
> *եւ քահանայք քո սրբայան*
> *Արք եւ կանայք միանգամայն*
> *ի բարութիւն քո զուարճանան.*
> *Քո այգեստանքն եւ խոծանին*
> *փարթամ եւ անուանիք էին.*
> *Մեծահամբաւ պաղերկեանին*
> *խորոխատալով գործնային...*

*Սրտի եւ մտաց կրթութիւնն ալ նոյն չափով առաւելած էր. Ստեփանոս Թոխաթեցւոյ վկայութեամբ այս մասին մեծապէս արդիւնաւոր եղած է Յակոբ Ջէյթունցի, որ ԺԶ դարուն վերջերը կը վարէր Թոխաթի առաջնորդութիւնն, առանձին կերպով հոգալով մտաւոր զարգացման վրայ՝ Ստեփանոս կը գրէ* (Հայապատում, Գ. էջ 313)։

> Ի ժամանակս էր իւր կարէ
> Յակոբ անուն վարդապետն,
> Որ քաղաքաւ էր Ջէյթունցի
> եւ առաջնորդ Թոխաթ քաղքի.
> Տէր վարդապետներ կայր [illegible],
> եպիսկոպոս, հաբեղանի,

Սարկաւագունք եւ դըպըրնի,
շատ մանճակայք եւ մըշակնի։
Երբ կանգնէին ի ժամանցի,
գուայր տաճարն նըման ամպի,
Երգք, Թագաւորք 'ւ Ալէլուքնի,
Գանձեր, Տաղեր եւ Մեղեդի։

Խաղաղութեան այս շրջանը երկար չվայելեց Թոխաթ։ 1599—1602ի ապստամբական շարժումն ի Փոքր Ասիա՝ առաջնորդութեամբ Արդուլհալիմ Գարա Եազըճի (Սեւ գրիչ) կոչուած աւազակապետին, որ Օսմանեան բանակի Եւրոպական ռազմագաշտէն փախստական զինուորներու գլուխը անցած կ'ասպատակէր Փոքր Ասիան, — մեծապէս քայքայեց Ռուհա, Սեբաստիա եւ ուրիշ կեդրոնները այն ինչ սկիզբն առած բարգաւաճումը։ — 1600, Ապրիլ 25ին երբ օսմանեան բանակն Հաջի Իպրահիմի առաջնորդութեամբ՝ պարտուեցաւ Կեսարիայի քով՝ Գարա Եազըճի իւր 30.000 հրոսակախմբով տէր եղաւ բովանդակ Փոքր Ասիոյ Սեւ Եազըճիի մահուընէն ետքը (1600) ահաւոր բանակին գլուխն անցած անոր եղբայրն Դէլի Հիւսէին՝ ասպատակեց Թոխաթի շրջակայքը, եւ ինքնին Թոխաթ, ուր կը գտնուէր Վէզիր Հասան, ամսոյ մը պաշարումէ ետքը աւար եղաւ Դէլի Հասանի (1602 Մայիս 29), որ հրով եւ սրով մաշեց բովանդակ քաղաքը։ Այնուհետեւ բանակն հրոսակախումբերու բաժնուած՝ ասպատակ սփռեց բովանդակ Փոքր Ասիա[1]։ Ճամա-

1 Hammer, Geschichte des Osmanischen Reiches II, S. 651–652.

նախակից յիշատակագիրները "Ճէլալիներու ապստամբութիւն„ կ'անուանեն այս շարժումը եւ մանրամասն կը պատմեն անոնց աւերածութիւնները։ Թոխաթ քաղաքի առման մասին մանրապատում է մանաւանդ Ստեփանոս Թոխաթեցի իր ընդարձակ Յիշատակարանին եւ Ողբին մէջ։ Առանձին ողբեր յօրինած են նաեւ Յակոբ եւ Ղազար Թոխաթեցիները։

Թոխաթի բնակիչներէն որոնք որ ապաստան գտան լեռներու վրայ, կրցան ազատիլ մահուան օրհասէն։ Անոնք որ քիչ յետոյ յաջորդեց, աւելի դառնացուց մնացածներու կեանքը, որոնք ստիպուած թողուցին հայրենի հողն եւ օտարութեան դիմեցին։ Սարսափի օրերու կարճառօտ նկարագիրն է հետեւեալը՝ Ստեփանոս Թոխաթեցւոյ գրչէն (Հայապատում, Գ. էջ 315)։

Երբ չարն եկաւ յանկարծակի,
Եւ Նազըճին ի Թոխաթի
Ցրուեց զամէնըն ոնց փոշի,
Զրգեց զամենն մի մի տեղի։
Ոմանք գնացին յԸստամպօլի,
Ոմն ի Պուրսայ, յԱտրանայի,
Շատք գնացին յՈւռումէլի,
Ֆռանկաց տուն, Պուղտան, Լեհի։

Այս փախստականներու թուին մէջ էին նաեւ Ստեփանոս, Ղազար եւ Յակոբ Թոխաթեցիները, որոնք օտարութեան մէջ ապրեցան այնուհետեւ եւ անուանի հանդիսացան իրենց գրական արտադրութիւններով։ Կ'ուզեմ այս

երեք հայրենակիցներու կենսագրութիւնն տալ հետզհետէ՝ համառօտ ակնարկով մը անոնց գրական գործունէութեան վրայ։

Ստեփանոս ծնած է 1558 (ՌԷ) թուին, Օգոստոս 15ին Թոխաթ քաղաքը (Ցիշատ., թ. 2 ա.)։ Հօրը անունն էր Աբգար, եւ մօրը՝ Ճանիփաշա (Ցիշատ., թ. 2 բ. եւ Հայապատում, էջ 316). ունէր երկու քոյր՝ Յուստանէ եւ Էմին (Ցիշատ., թ. 2 բ.) եւ կրտսեր եղբայր մը՝ Տէր Յակոբ, որ միաժամանակ աշակերտած է իրեն եւ վաղամեռիկ եղած 1601ին ի Թոխաթ (Ցիշատ., թ. 2 բ.). եղբօր մահն ողբացած է ապա նաեւ առանձին ողբով մը (տե՛ս վարը)։

Իր բնակութիւնն ունեցած է Ստեփանոս Թոխաթի Պազարճուխ թաղին մէջ (Ցիշատ., տե՛ս վարը), ուր կը գտնուէր քաղաքին աւագ եկեղեցին եւ անշուշտ նաեւ դպրատունը, ուր ինքը կ'ուսանէր։ Թոխաթի Ողբին մէջ կը հրաւիրէ ընթերցողները (Հայապատում, էջ 313).

Երթանք ի թաղ Պազարճուխին,
որ է աւագ եկեղեցին.
Եւ է անուն Ս. Սարգըսին,
արագահաս զօրականին
Շատ քրիստոնեայք կայր յայն թաղին,
ամէնքըն ճոխ տանուտէրնի,
Կարդացողներ հասկցողնի,
առատաձեռըն խոնանի։

Ուսուցիչն եղած է Պետրոս վարդապետ. ունինք գրուածք մը՝ կ'երեւայ 1590էն,

որուն խորագիրն է՝ «Թուղթ գովասանութեան ի Ստեփանոս Թոխաթեցւոյ առ ուսուցիչն իւր Պետրոս արքեպիսկոպոս» (տես վարը)։ Յակոբ Ջէյթունցի հաւանօրէն իւր աշակերտաց թուին մէջ ունեցած չէ զինքը։

1677 (ՌԻԶ) թուին կ'ամուսնանայ Ստեփանոս Յուստինէի հետ (Յիշատ., թ. 2 ա. ղ.), ունկէց կ'ունենայ Նայսի[1] եւ Հոփիսիմէ անուն զաւակներ։ Ստեփանոս որ եկեղեցական միճակի հետամուտ էր՝ քիչ ետքը՝ 1580 (ՌԻԹ) թուին կը ձեռնադրուի երէց (Յիշատ., թ. 2 ա.)՝ հաւանօրէն վերոյիշեալ Պետրոս արքեպիսկոպոսէն (կարկառեցին)։

1589 (ՌԼԸ) թուին ուխտագնացութեամբ այցելած է Երուսաղէմ, ուր եւ «մղտեսի» եղած է ընտանեօք (Յիշատ., թ. 2 ա.)։

1602ին՝ Թոխաթի պաշարման ժամանակ հոն կը գտնուէր Ստեփանոս եւ կրած է Սեւ-Նաղըճիններու անագորունութիւնն սեպհական կաշւոյն վրայ։ Իւր գլխէն անցածներու մանրամասն նկարագրութիւնն տուած է այն Ճառակնոցին մէջը, զոր իւր եղբայրն՝ Տէր Յակոբ սկսած էր գրել եւ վաղաժամ մահուամբն ընդհատելով՝ շարունակած էր Ստեփանոս եւ աւարտած։ Այն աղեխարշ տողերէն յառաջ կը բերեմ հոս միայն հետեւեալ պարբերութիւնը.

---

[1] Նայսի կ'ամուսնանայ Խասամելիքի հետ եւ կը հետեւի եկեղեցական կոչման. 1621ին կ'անուանուի տէր «մղտեսի տէր Նայսի» (Յիշատ., թ. 2 ղ.)։

"...Եւ զիս զանարժան զՍտեփանոս երէցս բանեցին ի՛ Հոգի եւ չոքեցուցին եւ Հանեալ պշպղախ թուրն կամէին քերշել զշլինքս. եւ մի ոմն ի նոցանէ ասէ. Նեկայք թուփանքով նշան զնենք. եւ այլքն սկսան շպղախ թրի յետեւով ծեծել զիս մեղ մանչ եւ ըռզակ ցըցուք. եւ յետոյ տարեալ ի դուռն մի եւ կապեցին զձեռն ի յետեւս եւ կախեցին այնպէս որ թեւերս շիռկեցաւ եւ առեալ. Բ Հոգի Հասա բրոք այնչափ Հարին որ ձայնս Հատաւ եւ շուանն կարեցաւ.. եւ անկայ ի բարձրութենէն ի վայր եւ խելքս անցեր էր. եւ նորա թողեալ գնացեր են թէ քաշիշն մեռաւ.. եւ կատարեցաւ բանն Դաւթի մարգարէին թէ քանՀանայք նոցա անկան ի սուր։ Եւ այլ զինչ տառապեցի զի ոչ թւլին չարչարանք եւ տանջանք ժամանակիս[1]։„

Այսպիսի օրհասական արհաւիրքէն ազատելով փախած է Ստեփանոս (Հաւանօրէն ընտանեօք) սարսափի քաղաքէն իր ապաստանարանն փնտռելով Կ. Պոլիս։ 1603 (ՌԾԲ) թուին կը գտնուէր նա Կ. Պոլիս "ի դուռն Ս. Նիկողայոսի„, ուր անդորրութեան մէջ կը շարունակէ եւ կ՚աւարտէ իր եղբօր՝ Տէր Յակոբի կիսատ ձգած Շարակնոցը (Յիշատ., տես Յոյս, անդ)։

Մեծ ապաւորութիւն ձգած է իր վրայ Սուլթաններու քաղաքը իր վայելչութեամբն եւ ճոխութեամբը. վերոյիշեալ Յիշատակարա-

[1] Յոյս. 1870. էջ 126–127։

նին մէջ գրոշմած է տողերս. «Նաեւ էր Ամասիոյ քաղաք իբրեւ զերկիրս եւ կամ զժամանակս կոստանդիանոսի եւ թարգմանչացն»։ Բայց կ՚երեւայ թէ Կ. Պոլիս իւր բոլոր հրապոյրովն հանդերձ չէ կրցած երկար գոհացնել զինքը. 1604/5ին կը գտնենք զինքը Ղրիմ (Կաֆա, Թէոդոսիա)։ Թոխաթի նուիրած Ողբին մէջ յիշելէն ետքը՝ թէ շատերն դիմեցին օտարութեան՝ կ՚աւելցնէ (Հայապատում, էջ 315).

Որպէս եւ ես խեղճ Ստեփանոս
տահեալ անկայ ի մէջ Կաֆայի,
Տընանկ, պանդուխտ, նըշդեհ գարիպ,
կամ իբրեւ գնու ի մէջ ծովի։

Կաֆայի մէջ իւր բնակութիւնն գտած է Ս. Լուսաւորչի եկեղեցին, ուր եւ յօրինած է այլ եւ այլ տաղաւոր գրութիւններ. տեղ մը կը գրէ (Հայապատում, էջ 316).

Զողբս տացի Թոխաթ քաղքի,
Ի Կաֆայու եկեղեցի,
Առ տառ սուրբ Լուսաւորչի։

Նոյնպէս կ՚արտայայտուի «Գովասանութիւն Կաֆայու քահանայից վերայ» տաղին մէջ (Ազգագր. Հանդ., Թ. էջ 72).

Տէր Ստեփանոսս Թոխաթցի,
Եկի հանդեպ ձեր քաղաքի,
Առ տառ սուրբ Լուսաւորչի,
Գովահայեաց սուրբ տաճարի։

Այլուր կ՚անուանէ ինքզինքը «սպասաւոր սուրբ Լուսաւորչին եւ Անտոն սուրբ ճգնաւո-

րին»։ Հոն կը պատահինք իրեն արդէն 1606ին, երբ կ'ընդօրինակէ Տաղարան մը (այժմ Վենետիկ, Մխիթարեանց քով. Հմմտ. ԲԶՄ. 1907, էջ 401)։

Բացի այս Տաղարանէն, որ «իբր 600 էջ է՝ Հաւաքածոյ այլ եւ այլ տաղերու, Հ. Պոտուրեանի ծանօթ է Ստեփանոսի գրչէն ուրիշ տաղերու «Ճոխ Հաւաքածոյ» մ'ալ (ԲԶՄ. անդ), անյայտ թուականէ. սոյնք ըլլալու են Վենետիկի Մխիթ. Մատենադարանի թ. 1330 Տաղարանն, որուն 484—675 էջերը գրուած են «1604ին ի կաֆայ (Պոտուրեան՝ Առաքել Սիւնեցի, էջ ԺԸ) եւ թ. 1683, գրուած նոյնպէս ի կաֆայ, թուականը անյայտ (անդ, էջ ԻԵ)։

1608ին (ՌԾԷ) օրինակած է հոն նաեւ Սեբաստիոյ Ս. Նշանի վանուց թ. 82 ձեռագրին մէկ մասը (Գուշակեան՝ անդ)։

1614ին կը հանդիպինք իրեն Ղրիմի Ս. Խաչի վանքը, ուր յօրինած է իր «Գանգատ ի ձեռաց լուոց»։

Թուին հազար եւ վաթսունի
Եւ երեք թիւ այլ աւելի,
Եկի ուրբ Խաչն ի Ղրիմի
Եւ դատապարտել բաներս տափի։

Կ'երեւայ թէ հոն ուսուցչութեամբ կը պարապէր Ստեփանոս, վասն զի նոյն տաղի մէջ կ'ըլլայ ակնարկութիւն «աշակերտներու» վրայ, որոնք իր խնամոց տակն են.

*Ճանճեր բազում է յայս տեղիս,*
*ու կու կենան ի յայս պատերըս,*
*Կ'անհանգըստեն զաշակերտներս*
*եւ կու նեղեն գըրագիրներս։*

Իւր աշակերտներէն կը յիշուի յանուանէ մին միայն՝ Յովսէփ սարկաւագ (Յիշատ., Թ. 2 Ե.)։

Բացի ուսուցչական գործունէութենէ՝ Ստեփանոս պարապած է նաեւ գրչութեան արուեստի։ Տեսանք վերը իւր գրչէն Շարակնոց մը, երկու Տաղարան. "Գովասանութիւն կաֆայի քահանայից վրայ" տաղին մէջ կ'ակնարկէ թէ օրինակած է նաեւ Յայսմաւուրք մը. խօսքն ուղղելով Պարխուտար Սեբաստացւոյ՝ կ'ըսէ (Ազգագր. Հանդ. Թ., էջ 72).

*Ձեր Այսմաւուրքն եսաք ընձի,*
*որ զօրինակըն գըրեցի։*

1608—1621 շրջանին ալ կ'օրինակէ Պատարագի Մեկնութիւն մը։ Անշուշտ ունեցած է ուրիշ ընդօրինակութիւններ ալ, որոնք չեն հասած իմ ծանօթութեանս։

Թէ երբ եւ ո՞ւր վախճանած է, չենք գիտեր։ Այսչափ ծանօթ է միայն, որ նա 1621 (ՌՀ) թուին, Յունիս 25ին կը գտնուէր Թոխաթ, ուր կը շարունակէր Պատարագի Մեկնութեան ընդօրինակութիւնը (Յիշատ., Թ. 2 Զ.)։ Այս պարագայէն կրնանք թերեւս հետեւցնել, թէ նա 63 ամեայ հասակին պանդխտութեան 20րդ տարին թօթափեց ղարիպութեան ցուպն եւ վերադարձաւ Թոխաթ, հոն հայրենեաց

թարմ օդով եւ զով ջրով կազդուրելու իր ծերութեան օրերը, եւ այլ եւս չհեռացաւ անկէ։ Բախտաւոր պիտի համարուի ինքը այս տեսակէտով, որ այս ցանկալի օրուան հասաւ, որուն այնչափ կարօտալից կը փափաքէին հասնիլ իր միւս հայրենակիցներն՝ Մինաս, Ղազար եւ Յակոբ Թոխաթեցիները եւ չհասան եւ կնքեցին իրենց մահկանացուն օտարութեան մէջ։ Սանփանոս այնուհետեւ հաւանօրէն երկար չապրեցաւ եւ հազիւ թէ շօշափեց 30 ական թուականը։

Նկարագիր։ Երջանիկ շրջանի մը մէջ ծնած՝ տեսաւ դառնութեան օրեր. բախտը իր դժպհի խաղերն հեգնօրէն խաղաց անոր հետ։ Բայց նա տէր լայն սրտի՝ ծիծաղեցաւ բախտին փոփոխականութեան վրայ։ Կենաց մէկ երրորդը ապրեցաւ օտարութեան մէջ, անձնատուր իր կոչման գործերուն. հալուեց ժողովուրդը, վարդապետեց, պարապեցաւ գրչութեան արուեստի. ունեցաւ աշակերտութիւն։ Զուարթ, կրակոտ բնութեամբ օժտուած՝ սիրեց ազգային երգերն (ինչպէս ընդօրինակած տաղարաններէն յայտնի է) եւ ինքնին երգեց։ Թէպէտ իր սեպհական արտադրութեանց ամբողջականութիւնն կ'անգիտանամ, բայց մնացեալ հատուածներն բաւական են համոզելու համար, թէ Սանփանոսի չէր պակսեր բանաստեղծելու աւիւն։ Ինծի ծանօթ բոլոր տաղերը գրուած են օտարութեան մէջ 1603էն վերջը. անոնց մէջ անշուշտ ամենէն քնքուշն էր իր վաղամեռիկ «քաղցրիկ եւ

անոյշ» եղբօր վրայ գրած ողբն, որ ինծի անծանօթ է։ Ասոր համանման ըլլալու են այն Մխիթարական խօսքերն, զոր գրած է «ի տէր պապան վասն տարաժամ դատերն իւրոյ մահուան»։ Իր ամէնէն ընդարձակ գրութիւնն է «Ողբն ի վերայ Եւդոկիա մեծ քաղաքին», ուր պատմական դիպաց զգայուն նկարագրութիւն մը կը պարզուի մեր աչքեւ, կապուած դառն յիշատակներու հետ, որոնք անբաժին ընկերն եղած են իր կենաց։ Իբրեւ ականատես եւ ականջալուր կ՚ողբայ հոս Ստեփանոս 1600—1603 շրջանի Սեւ Եաղըճիներու աւերածութիւնները եւ անգթութիւնները, որոնց նշաւակ եղան Եւդոկիայի եւ առ հասարակ փոքր Ասիոյ քրիստոնեայ բնակչութիւնք։ Բոլորովին ուրիշ խառնուածքի արտադրութիւններ են իր միւս գրուածքները, որոնք աւելի զաւեշտի նկարագիր ունին եւ ծնունդ են իր զուարթ ժամերուն. *Գանգատն ի ձեռաց լուոց* կը ցոլացնէ անոր զուարճախօս բնաւորութիւնն. այս տիպէն է նաեւ *Գովասանութիւնն Կաֆայի քահանայից վերայ*, ուր Ստեփանոս ի վեր կը հանէ եւ կը հեգնէ ժամանակակից եկեղեցականաց ինքնատիպ բարքերը՝ զաւեշտաբան լեզուով. ծիծաղել եւ ծիծաղցնել է միշտ իր նպատակը, ոչ երբեք վիրաւորել։ Թէ՛ այս գրուածքն եւ թէ՛ Ողբն կարեւոր վաւերագիրներ են Կաֆա քաղաքի եւ ժամանակակից պատմութեան համար։ Լեզուն շատ անմշակ է, ռամկօրէնի նկարագրով. բայց հաճելի։

*Յիշատակարաններ Ստեփանոս Թոխաթեցւոյ կենսագրութեան վերաբերեալ:*

1. "Գրեցաւ ազնիւ եւ պատուական եւ ընտիր տաղերս ի յաստուածաշէն քաղաքն ի Կաֆա, ի դառն ժամանակիս որ զօթանախան ճալալիքն երեցին եւ աւերեցին, եւ Ղզլբաշէն Սաֆարն ի գինհաց մի. անոր եկայք փախըստական. մինթէ ի հոս հանգչինք. նա վասն մեր բազում մեղացն ի հոս մեծ սով եղեւ որ բնաւ մարդ տեսնալ չէր. զի մէկ կապիճ ցորեանն Դ. կարմիր ելաւ. եւ Ա կարմիրն ԴՃ եւ Ծ ըստակ։ զոր Տէր Աստուած զբարքն եւ զողորմութիւնն տայ ամենայն աշխարհի, մանաւանդ Կաֆա քաղաքին, բարեխաւսութեամբ սրբոց երկնաւորաց եւ երկրաւորաց ամէն։

Աւարտեցաւ սա թվին Ռ՟Ծ՟Ե (1606) յունվարի Ա. ձեռամբ անարժան եւ անպիտան Ստեփանոս Թոխաթցի իրիցուն ի դրունս սուրբ Լուսաւորչին։ Որք բան ինչ օգտիք՝ յիշեցէք եւ ասէք "Հայր մեր որ յերկինս". (Յիշատակարան Վեննա. Թ. 1330 Տաղարանին. Հրտ. ԲԶՄ. 1907, էջ 401)։

2. —. Տէր Ստեփանոսն ծնօ թվին Ռ.Է. Օգոստոսի Ժ.Ե. թվին Ռ.Ի.Զ. կարգեցին. թվին Ռ.Ի.Թ. երէց եղօ. Ռ.Լ.Ը. յԵրուսաղէմ գնաց։

Ք. Գրեցաւ պատմէն տումարացս Հայոց եւ Հռովմայեցւոց եւ այլ խրատներս եւ միաբանութիւնս ի լաւ եւ յընտիր աւրինակէ որ ի յԱմիթ ի վարդապետաց եւ վարպետաց ընտրեալ. զոր ես Թօխաթցի Ստեփանոս երէցս օրինակեցի

*ի կափան, Թվին Ռ՚ԾԷ. որք բան ինչ օգտիք ի սմանէ յիշեցէք զնորոգող սորայ եւ ասասջիք Հայր մեր...* (էջ 486)։

*Է. Գրեցաւ Թվին ՌԿԷ. Սեպտ. Ե* (էջ 530)։

*Ը. Ով հանդիպողք զհողս եւ զփոշիս ոտից ձերոց զՍտեփանոս երէցս Թոխաթեցի յիշեցէք...* (էջ 555)։

*Թ. Ողորմի Քրիստոս Աստուած ստացողի եւ գրողի Ս. Ճառիս Յովսէփի մեղսաներկ սարկաւագի... մանաւանդ վարպետին իմոյ Ստեփանոս իրիցուն եւ իւրայնոցն. ամէն* (էջ 587)։

*Ժ. Գրեցաւ Մեկնիչս Ս. Պատարագին Թվականին Հայոց ՌՀ, Յունիս ամսոյ ԻԵ ձեռամբ ուռեմն անարժան եւ անյիշելի լոկ եւ սուկ Ստեփանոս չերիցու, ի քաղաքս Թոխաթ, որ է միջոց Սեբաստիոյ, ուր Ս. Քառասունքն կատարեցան, եւ Կոմանոյ, ուր Ոսկիբերան ապաշխարութեան վարդապետն Յովհաննէս յետ աքսորանացն սաստկաց վախճանեցաւ. եւ այլ բազմահաւաք սրբոցն, ի Թաղս Ս. Քառասունից, որք կարդայք կամ օրինակէք, կամ ի վեր անդ առէք, յիշեցէք զհողս եւ զփոշիս եւ զբարի ծնողս իմ զմահտեսի Սարգիսն եւ զմահտեսի Ճանիփաշան եւ զանէր Յակոբ վաղամեռիկ սիրեցեալ եղբայրս եւ զքորքս զՅուստանանէն եւ զԷմինն եւ զկենակիցն իմ զմահտեսի Ռուստանանէն եւ զորդեակն իմ զմահտեսի Խասային եւ զիւր ցաւակիցն զխասամէլիքն եւ զդուստր իմ զՀոխիփսիմէ եւ զայնոսիկ որք աշխատանօք եւ զիրախօք ունին ի վերայ մեր. Աստուած ողորմի եւ Հայր մեր որ յերկինս առէք*

*եւ ձեզ եւ մեզ եղիցի* (էջ 154)։ Հմմտ. *Թոր-գոմ եպիսկոպոս Գուշակեան՝ Ցուցակ հայերէն Ձեռագրաց Ս. Նշանի վանուց ի Սեբաստիա,* թ. 82 (անտիպ)։

ԴՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ։

1. *Ողբ եւ ոտանաւոր տաղ ի վերայ Եւդոկիա մեծ քաղաքին որ այժմ՝ Թոխաթ ասի, զոր անօրէն եւ անհաւատ Տէլու Հասան Ղարայ Եազըճին դալի եւ ճէլալի յայտնեցաւ, եւ զերկիրս Հայոց եւ Հոռոմոց յԱրհայոյ մինչ ի յԱսկուտարն՝ ծովեզերօք եւ բոլորօքն հանդերձ էրեց եւ աւերեց, թալանեց եւ գերեց. զքաղուսս սպանեց եւ զշատս փախոյց. զոր ես Ստեփանոս Թոխաթցի երէցս՝ զորն աչօք տեսի եւ զորն ակընջօք լուայ, եւ զսակաւ քանս ասացի անյարմար գոլով:*

Վեց հազար 'ւ ութ հարիւր թըւին
Եւ երկու թիւ աւելորդին
Յետ ելանելոյ հօր մեր նախնին
ի դրախտէն մինչ լոյս վայրին.
Ի ծնընդենէն Տեառն Յիսուսի
հազար եւ վեց հարիւր ամի,
Զորս թիւ այլ հետն յարադրի
մինչեւ լոյս օրըս համարի։
Եւ մեր թըւին Հայոց ազգի
հազար 'ւ յիսուն մէկ աւելի (= 1602 Մայիս 29)
Մայիս ամսոյ քըսան 'ւ ինն
օրըն շաբաթ չորրորդ ժամի
Եկաւ Եազի եւ Ճէլալի,
Տէլու Հասան Սեւ Եազըճի . . .

Վերջ՝

Տաղիս երգող Ստեփաննոսի,
 Եղբօրն իմոյ Տէր Յակոբի
Հօրըս Սարգսի, մօրս Ճանփաշի,
 Հայր մեր յերկինս ասըք եղիցի։

Ձեռ. Մեր Մատենադարանի 797, թղ. 183ա (= Ձ. Կ. 268ա)։

Հրտ. *Հայապատում* Գ. § 393, էջ 307—316 եւ § 381, էջ 252—253 (տաղ ի Կաֆայ, որ այս տաղիս վերջին մասն է. Հմմտ. անդ. էջ 315—316)։

Հ. Ալիշան՝ ԲԶՄ. 1865, էջ 187 ծն. (= Յուշիկք Բ. 341) տաղիս գրութեան ժամանակն կը նշանակէ 1596. որ ընականաբար անճիշդ է։ Հեղինակն որոշ թուական չէ նշանակած. բայց ժամանակակից սուլթան Տաճկաց զԱհմէտ ցոյց տալէն (1603—1617) կրնայ հետեւցուիլ թէ գրած ըլլայ այս ընդ մէջ 1604—1617 տարիներու։

1ա. *Տաղ ի Կաֆայ:* Այս խորագրով առանձին հրատարակուած է *Հայապատում*, Գ. էջ 252—253, վերոյիշեալ Ողբին (§ 1) վերջին մասը, այսպիսի սկզբնաւորութեամբ.

Կաֆայ քաղաքը նըման դրախտի,
 'ւ Երուսաղէմ ասըք քաղաքի...

2. *Ողբ ի վերայ վաղամեռիկ եղբօր իւրոյ Յակոբ քահանայի Եւդոկեացւոյ* գրեալ յամին 1604.

Ի թվականիս հազար 'ւ յիսնի...

Ծանօթ է ինձի միայն Նորայրի ցուցակէն։ Իսկ Յակոբ եղբօր վրայ ընդարձակ գրած է Ստեփանոս վերոյիշեալ Շարակնոցի Յիշատակարանին մէջ դնելով նաեւ անոր բերանն Յիշատակարանին սկիզբը՝ այսպէս.

«Գրեցաւ եղանակաւոր տառս որ կոչի Շարակունք ձեռամբ Յակոբ երիցու ի քաղաքն Թոխաթ ի Թաղն Պաղարճուխ...» այպս կը յաւելու՝ «Եւ այս Յակոբ երէցս յայսմ ամի վախճանեցաւ որ էր Թըվին Հայոց ՌՇԾ եւ Շարակնոցս գրելոյ էր մինչեւ ի Հռիփսիմեանց Հարցն։ Վայ ինձ հազար բերան Ստեփանոս եղբօրդ քո՝ քաղցրիկ եւ անուշ եղբայր եւ աշակերտ իմ եւ ամենայն շնորհիւ ի լի եւ անթերի տէր Յակոբ քաջ եւ իմաստուն քահանայ։ Եւ ես Ստեփանոս երէցս Թոխաթցի, եղբայր Յակոբ սուրբ եւ ընտրեալ քահանայի, առեալ զմնացեալ պակասն գրեցի եւ թմնեցի ... յիշեսջիք ... եւ մանաւանդ զվաղամեռիկ եղբայրն իմ զտէր Յակոբ շնորհաց քահանայն ... (Յոյս. 1870, էջ 126—127)։ Յիշատակարանս գրած է Ստեփանոս Կ.Պոլիս ՌՇԾԲ (1603) թուին. ուստի տաղս ալ նոյն տպաւորութեան տակ երգած ըլլալու է նոյնպէս Կ.Պոլիս՝ յաջորդ տարին։

3. *Գովասանք Կաֆայու Քանանայից վերայ:*

Տէր խաչատուր եպիսկոպոսն
  որպէս Անտոն Թեբայիթի,
Պահող հրեշտակ ճգնաւորի,
  սուրբ ծերունի մաքուր հոգի։ ...

Վերջ՝

Ես մեղաւորս եւ եղկելի,
լոկ Ստեփանոս Թոխաթեցի,
Հայրեր եւ լերր եւ փառաւորք,
այլ ամենայն պարով ի լի։

Հրտ. Ն. Շահազիզեան՝ Ազգագր. Հանդէս. Թ (1902), էջ 71—72։

4. *Գանգատ ի ձեռաց լուոց եւ ճանճից ասացեալ ի Ստեփանոս Թոխաթեցւոյ (1614):*

Երբ որ ամառըն մօտեցաւ
լուերըն ամէն նոր ցըկնեցաւ.
Խըցերըն ամէն լուով լեցուաւ,
՚ւ եկեղեցիներըն ճապըղեցաւ...

Վերջ՝

Թուին հազար եւ վաթսունի
եւ երեք թիւ այլ աւելի (= 1614)
Եկի աւուրք Խաչն ի Պըլրիմ
եւ գատատապել բաներս աստի.
Դուք կարդացողք լսողք բանի,
ուրախ կենայք ի սեղանի,
Տէր Ստեփանոս ձեր ծառայի
Հայր մեր երկինք սուրբ եղիցի։

Ձեռ. Մեր Մատենադարանի թ. 160, թղ. 206բ։ Ուրիշ մը՝ անթիւ։ — Տաղարան 1682 թուէ սեպհականութիւն Կ. Կոստանդեանցի. վերնագիրն հա՝ Տաղ ի վերայ լվերուն եւ ճանճերուն ի Թոխաթցի Տէր Ստեփանոսի ասացեալ (Նոր ժող. Գ, էջ Ձ)։

Այս տաղը կ'երեւայ թէ այլ եւ այլ խմբագրութեամբ լոյս տեսած է. Կոստանեանց՝ «Նոր ժող. Գ. Ղ. արդէն միտ դրած է որ այս տաղին եւ իւր հրատարակած «Ի վերայ ճանճի» տաղին մէջ «տներ եւ տողեր կան, որ նման են մեր հրատարակութեանը, թէեւ ամբողջութեան մէջ բաւական տարբերութիւն կայ»։ Ինձի ծանօթ է երրորդ խմբագրութիւն մ'ալ մեր Թ. 343 էն։ Թէեւ Բ. եւ Գ. խմբագրութիւնք անանուն են, բայց չեմ տարակուսիր թէ անոնք ալ Թոխաթեցւոյ ձեռքէն ելած են. եւ կը թուեմ հոս.

4ա. *Տաղ ի վերայ ճանճի:*

Յորժամ մրտանք Թամուզ ամիս
Ճանճերն շատցաւ ի գըլըխնիս.
Երբ զհոտն առին զթէնճէքիս՝
Նա թափեցան վերանիս...

Ձեռ. Ցաղարան 1695 թուէն՝ Կոստանեանցի.

Հրտ. Կոստ.՝ «Նոր ժողովածու. Ա. էջ 62—64։

4բ. *Պանգստ լուոց եւ ճանճից.*

Երբ օգոստոս ամիս մըտայք,
Ի լուանուն խիստ նեղացայք

Ձեռ. մեր Մատենադարանի Թ. 343. Թղ. 95 ա. եւ 248 բ։

5. *Թուղթ գովասանութեան ի Ստեփանոս Թոխաթեցի երիցուէ առ ուսուցիչն*

իւր Պետրոս արքեպիսկոպոս: Խորագրին բառական յառաջ չէ բերուած ցուցակագրողէն. սկզբնաւորութիւնն է. «Ի չնչին եւ ի նուաստէ, ի մեղաւմած եւ ի յեղեռնագործէ...»[1]: Կից ունի տաղ մը որ կը սկսի՝

Տեառն փրկչին մերոյ Յիսուսի
միշտ աւրհնութիւն անլռելի...

տուներու սկզբնագիրը տառերն կը կազմեն «Տէր Ստեփաննոս», եւ գրուած է 1590 թուին:

Ձեռ. Finck, Verzeichnis der armenischen Handschriften der königlichen Universitätsbibliothek zu Tübingen (Tübingen 1907), Ma XIII. 102, թղ. 90ա—92ա (էջ 165):

6. *Բանք եւ մխիթարանք Ստեփանոս Թոխաթեցի երիցուէս ի տէր պապայն վասն տարաժամ ղատելին իւրոյ մահուան.* «Ի նուաստ եւ անարժան ծառայէս Աստուծոյ եւ սպասաւորէ սուրբ Լուսաւորչին եւ Ընտանի սուրբ ծննդաւորին... (ի կափա) Լսեցէք թէ զինչ ասէ գիրն...»:

Ձեռ.՝ Թորգոմ եպ. Գուշակեան՝ Ցուց. Հայ. 22. Ս. Նշանու վանուց Սեբաստիոյ [ան-

[1] Նոյն սկզբնաւորութեամբ գրուած ուրիշ թուղթ մ՚ալ կը յիշուի նոյն Ձեռագրին մէջ, վերջաւորութիւնն տարբերակ (թղ. 84բ—89բ), որուն խորագիրն բառ ցուցակագրին է՝ Թուղթ Ստեփաննոսի [illegible] [illegible], սկիզբն է. «Ի չնչին եւ ի նուաստակէն ի մեղաւմած եւ յեղեռնագործէ ի Հոգոյ Համատարոյ եւ ի կրկնամեռ անձէ...»:

տիպ]. Թ. 82 (Մեկն. պատարագի եւն, 1621էն), էջ 489—511 (Հեղ. գրչէն).

7. *Պատմական Յիշատակարան Հաբանոցին* գրեալ յամի 1603, ուր կը պատմէ Գարա Եազըճիներու ապստամբութիւնք ի Փոքր Ասիա եւ առումն Թոխաթի (1602, Մայ. 29).

Հրտ. «Յոյս» ամսագիր (Արմաշ), Դ. (1870), էջ 126—127.

Չեմ կրնար ստուգութեամբ ըսել, թէ այս Ստեփանոսի գրչէն է նաեւ հետեւեալը.

8. *Քարոզ յաւուր տօնի Ս. Ստեփանոսի նախավկային հաւաքեալ ի մի ի Ստեփանոս լիաշնորհ* վարդապետէ Եւդոկեացւոյ. «Զի համանուանմբ ճոխացաւ Ս. Ստեփանոս ....»:

Ձեռ.՝ Finck, անդ. Ma. XIII, 103, 18բ—23բ (էջ 177).



Գ.

## ՅԱԿՈԲ ՆՐՒՃ ԹՈԽԱԹԵՑԻ

1573—1680

*Հայ մատենագրութեան լաւ ծանօթներէն մին՝ Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Գ, էջ 317, հրատարակելով Յակոբ Թոխաթեցւոյ Ողբն, կը գրէր ծանօթութեան մէջ. «Ուրիշ գրուածի մէջ չեմ գտած այս ողբացողիս յիշատակը»։ Նաեւ ուրիշ հեղինակներու անծանօթ մնացած է երգչիս անունը։ Բայց անիկա մեր գրականութեան նոր շրջանի ամենէն արդիւնաւոր դէմքերէն մին եղած է, թէ իբրեւ երգիչ եւ թէ իբրեւ թարգմանիչ։ «Կամենիցի» հմուտ հրատարակչին խոստովանութիւնն որչափ ալ անկեղծ է, բայց կը մնայ անարդարանալի, վասն զի Յակոբ չի կրնար նկատուիլ այն մատենագիրներու թուին մէջ, որոնք իբրեւ գլխաւոր աստղներ երեւցան հայ մատենագրութեան համաստեղութեան վրայ եւ անհետացան, այլ թողուց անիկա իւր յիշատակն բազմաթիւ յիշատակարաններու մէջ, որոնք քաջ ծանօթ էին Հ. Ղ. Ալիշանի, հրատարակուած մեծաւ մասամբ «Կամենից»-ի էջերու մէջ, եւ որոնց վրայ*

*յեցած հնարաւոր էր նոյն իսկ երեւան բերել անոր կենսագրութիւնն կարեւոր գծերով։*

*Հետագայ տողերուս նպատակն է ծանօթացնել այս անծանօթ երգիչն հայ բանաստեղծութեան եւ յատկացնել անոր ուրոյն տեղ մը հայ մատենագրութեան պատմութեան մէջ։*

*Յակոբ ծնած է Թոխաթ 1573ին (տե՛ս վարը) կը սերէր «ի Բաթթուկենց թոռանց» (Ողբ). «Մեծ պապին» անունն էր Աստուածատուր, հայրը կը կոչուէր Ալթուն եւ մայրը՝ Աննա, որոնք «ի միջակ տիս հասակի» վախճանած են (Յիշատակարան, Թ. 2 եւ Սաղմոսարան)։*

*Ամուսնացած երէց էր Յակոբ. երիցկնոջ անունն է Նաղուդ, ուսկից ունեցած է չորս արու եւ երեք աղջիկ զաւակ, զորոնք կը յիշէ 1617ին գրած Յայսմաւուրքի յիշատակարանին մէջ այսպէս. «Ողորմի Քրիստոս Աստուած (ստացողի) գրոցս Յակոբ քահանային եւ հօրն Ալթունին եւ մօրն Աննային. եւ Նաղուդ իրիցկնոջն եւ զաւակացն Գրիգորին եւ Ստեփանոսին, Յովհաննէսին եւ Աստուածատուրին. Աննային եւ Մարիամին եւ Շուշանին» (Յիշատ., Թ. 4)։*

*Նախնեաց անունէն առեալ կը յորջորջուի Յակոբ «Թոխաթցի Բաթթուկի տէր Յակոբ», կամ պարզապէս «Բադուկ Յակոբ երէց» (Թ. 797, Թղ. 228բ, 230ա). այսպէս կ'անուանէ ինք զինքը նաեւ իւր Թոխաթի Ողբին մէջ (Հայապ., Գ., էջ 322).*

"Զիս որ տրուպ եմ ամենի,
ԶՅակոբ երէցըն Թոխաթցի
Ի Բաթուկենց թոռանցն էի։"

Թոխաթի մէջ աշակերտած է Յակոբ համանուն Այվաթենց տէր Յակոբ վարժապետին, որուն հանդէպ մեծ սէր տածած է նաեւ ապա օտարութեան մէջ. Երբ Լեհաստան պանդուխտ եւ նժդեհ կը դեգերէր Յակոբ՝ իր վարժապետին կ'ուղղէր հեռաւոր տողերը, որուն խորագրին մէջ կ'ըսուի. "Ոտանաւորս ի դէմս վարժապետին իւրոյ Յակոբ քահանային որ ասի Այվաթենց" (Թ. 797, Թղ. 229բ).

"Սիրով քո կարօտաց սիրտըս կու վառի
Որ եմ նըժդեհ եղեալ ի տար աշխարհի.
Չունիմ հընար տեսանել զդէմքըդ բաղձալի
Զի ծովն Ովկիանոս ի մէջ մեր ծըփի։"

Թէպէտ անկէ հեռու ապրած, բայց անդադար յարաբերութեան մէջ եղած է անոր հետ թղթակցութեամբ. Նոյն տաղին մէջ կ'ըսէ.

"Սիրտ իմ քո նամակաւդ յոյժ մխիթարի։"

Յակոբ Այվաթենց ստորագրաբար "վարժապետ" եւ "քահանայ" կը յորջորջուի Թոխաթեցիէն[1]։ Թէ Այվաթենց տէր Յակոբ ալ տոհ-

---

1 Պէտք չէ շփոթել զինքը Յակոբ վարդապետ Զէյթունցւոյ հետ, որ մինչեւ 1602 առաջնորդ եղած էր Թոխաթի, ինչպէս կը գրէր Ստեփանոս Թոխաթեցի (Հայաստ. Գ. էջ 313).

Ի ժամանակս էր խիստ բարի.
Յակոբ անուն վարդապետի

պուած էր թողուլ Թոխաթն եւ փախչիլ, այս մասին յայտնի կը վկայէ իր աշակերտն, որ մինչեւ անգամ կը գրէ թէ

Եւ սա ի յայն գաւառ տանէն
Պանդըխտեցաւ այս նահանգի

այս ինքն Լեհաստան։ Բայց կ'երեւայ թէ այս պանդխտութիւնն կամ յետ ժամանակաց տեղի ունեցաւ եւ կամ անիկա կրկին վերադարձաւ Թոխաթ, վասն զի Յակոբ Թոխաթեցի կը թղթակցի իրեն հետ եւ յայտնի կ'ըսէ թէ

Նստեալ ես դու ի մէջ Թոխաթ քաղաքի
Ընդ հովանեաւ սրբոյն Ստեփաննոսի։

Յամենայն դէպս 1614ին անիկա Լեհաստան կը գտնուէր, ուր յորդոր կը կարդար իր աշակերտին թարգմանել Նոթն իմաստասիրաց պատմութիւնն եւ յօրինել Թոխաթի Ողբը։

Այվաթենցի Եւրոպա անցնելէն յառաջ հոն ապաստան փնտռած էր ընտանիքով Յակոբ Թոխաթեցի։ Թոխաթի 1602ի սարսափելի դէպքերը, որոնց ականատես եղած էր Յակոբ, ստիպեցին զինքն ալ յարիլ այն գաղթականաց թուին, որոնք ընտանեօք թողուցին հայրենիքն

Որ քաղաքաւ էր Ջէյթունցի
Եւ աւերման Թոխաթ քաղքի.

եւ 1602ին Թոխաթի կործանումէն ետքը փախած եկած էր Կ. Պոլիս ուր ժամանակ մը մնալէ ետքը քաշուած էր Ռո-դոսթոյ եւ հոն վախճանած 1608 թուին (Գրիգոր Դարա-նաղցի. Ժամանակագրութիւն. Երուսաղէմ, 1915. էջ 320)։

*եւ պանդխտեցան Եւրոպա։ Յակոբ իւր ընտանիքով հաստատուեցաւ Լեհաստանի Զամոսցա քաղաքը, «ի դուռն Ս. Աստուածածնի», իբրեւ տեղւոյն հայ գաղութին քահանայ։*

*Հոս կը գտնենք զինքը արդէն* 1603 *թուին սկիզբը, ուր արկածիւ մը եկեղեցւոյն Ճաշոցն եւ Յայսմաւուրքն այրելով՝ կը ձեռնարկէ այս թուին օրինակել նոր Ճաշոց մը, որ տասը տարի կը զբաղցնէ զինքը եւ «պէսպէս վշտօք եւ չարչարանօք», կ'աւարտէ* 1613*ին (Յիշատ., թ.* 1, *Նպաստիւք «Խլովցի պարոն Պետնարգին»,* † 1613)։

*Այս թուականէն* (1603) *ի վեր միշտ Զամոսցա մնացած է Յակոբ։*

1608*ի մօտերն կ'ասպնջականէ Սեչովցի Աբրահամ կրօնաւորն, որ կը ծախէ իրեն Աստուածաշունչ գիրք մը գոհացում տալու համար անոր փափաքին՝ փոխարէն «սակաւ ինչ ընկալեալ»* (*Յիշատ., թ.* 2)։

1613*ին վերջացնելով «Ճաշոցի» ընդօրինակութիւնը կը ձեռնարկէ օրինակել «Յայսմաւուրք» մ'ալ, զոր համեմատութեամբ աւելի կարճ ժամանակի մէջ կ'աւարտէ* (1617). *Նիւթականով նպաստամատոյց կ'ըլլայ իրեն այս մեծ գործին իւր «Գրիգոր որդեակն» «որ ետ յօգնութիւն գրոյս ութ դահեկան կարմիր»* (*Յիշատ., թ.* 4)։

*Այս միջոցին կ'երեւայ թէ եկած է իրեն այցելութեան իւր վարժապետն տէր Յակոբ Ալվաթենց, որուն «ի խնդրոյ» կը թարգմանէ*

1614ին «ի լաւոին գրոց». Եօթն իմաստասիրաց պատմութիւնը (տես վարը)։ Այվաթենց տէր Յակոբի խնդրանօք երգած է Թոխաթի առման վրայ իւր գեղեցիկ ողբն ալ, որուն յօրինման ժամանակը հաւանօրէն այս շրջանին կ'իյնայ։ Ողբիս վերջաւորութեան մէջ նուիրած է Յակոբ իւր վարժապետին թանկագին տողերս (Հայապ., Գ., էջ 321—322).

Տէր Յակոբ քահանայն բարի,
աղնուական եւ անուանի,
Վարժապետն իմ հայր հոգելի,
որ Այվաթենց անուամբ կոչի.
Եւ սա ի յոյն գաւառ տանի
պանդխտեցաւ այս նահանգի,
Ի Զամոսցան Լեհաց երկրի,
առ գուռըն սուրբ Աստուածածնի։
Զիս որ որբուկ եմ անձնի,
զՅակոբ երէցըս Թոխաթցի,
Ի Բաթուկենց թոռանցն էի
նշդեհ հոգով ի տար երկրի։
Նայ Տէր Յակոբ սուրբ քահանայն՝
ընդունապատեաց զիս զանարժան,
Որ այսքան բանս շարադրեցան՝
անդէտ մտացս ի կարգ անկան։

1626, Մայիս 19ին կ'այցելեն Զամոսցա եւ Տէր Յակոբի տունն կ'օթեւանին Էջմիածնի նուիրակները, որոնք վերոյիշեալ Ճաշոցի յիշատակարանին մէջ կ'արձանագրեն. «Թվ. ՌՀԵ մայիս ԺԹ օրն շաբաթ. եկաք ի Զամոսցա Պարոն տէր Մարտիրոս Ս. Էջմիածնայի եւ Պարոն տէր Եղիա Երզնկացի եւ տէր Խաչատուր արեղա

Լովցի վասն նուիրակութեան եւ հիմնարկութեան Ս. Եկեղեցւոյ. եւ ի հայրապետութեան Տեառն տէր Մելքիսեդ կաթուղիկոսին որ էր ինքն ի Լով եւ առաքեաց զՄեզ ի Զամոսցա քաղաք, եւ ի քահանայութեան Տէր Յակոբ քահանային եկաք հանգեաք ի տուն նորին. Աստուած փառաւորէ զինքն ի հոգի եւ ի մարմին. ամէն։ (Տաշեան՝ Ցուցակ հայ. 22. կայսերական Մատենադարանին ի Վիեննա, էջ 24)։

Վերոյիշեալ խաչատուր արեղայ Լովցի 1630 Սեպտ. 20ին միւսանգամ կ'այցելէ Զամոսցա՝ առաքուած խաչատուր վարդապետէն՝ որ Լով կը գտնուէր՝ «Նուիրակ սրբալոյս Մեռոնուն ի յայս աստուածապահ քաղաքն Զամոսցա, եւ ի ժամանակս քահանայից Տէր Յակոբին եւ Տէր Անդրէասին։ (անդ)։

Յակոբ այժմ արդէն յառաջացեալ տարիքի մէջ է, սակայն դարձեալ զբաղած. 1638 Փետր. 25ին կ'աւարտէ Մաշտոցի մը ընդօրինակութիւնը «ի վայելումն անդրանիկ որդւոյ իմոյ տէր Պետրոս քահանային»[1]։ (Յիշատ., Թ. 5)։

---

[1] Թուականներուս անդրանիկ որդւոյն անունն էր Պետրոս, «տէր Պետրոս» կոչուած է համանորէն ձեռնադրութեան ժամանակ. այսպիսի փոփոխութիւն ընդունուած էր այս շրջանին. Համմ. մեր Մատենադարանի Թ. 331 ուր Պօղոսին Ընտան Սերկերքայենց եպիսկոպոսէն կու տայ իւր քահանայական ձեռնադրութեանց ցանկը. 1651. Սեպտ. 28՝ «ձեռնադրեցի Սամոյէլի Դաւիթ կղերիկոս . . . երէց ի Սէմով քաղաքն . . . եւ փոխեցի անուն նորա տէր Յովհաննէս. 1655 Ապրիլ 29 «ձեռնադրեցի ի Սերաթ քաղաք Մարկոս քահանայ եւ փոխեցի անուն Գէորգ . . .» (Ցուցակ. էջ 776)։

Հոս կը զգայ ինք զինքը արդէն տկար «ծերացեալ եւ փտեալ մարմնով» մէջ (անդ). արդեամբք ալ ունէր ետեւը 65 գործունեայ տարիներ։ Բայց կեանքի պարգեւատուն Աստուած սահմանած էր իրեն դեռ երկար տարիներ։ Նիկոլ երէց 1667 Նոյ. 9ին ի Զամոսցա տեսած է զինքը դեռ կենդանի՝ թէեւ «ծերացեալ ամօք 94 ամաւ»։ Ասիկա օրինակած է այս թուին Հարակնոց մը Զամոսցա, որուն յիշատակարանին մէջ կ՚արձանագրէ մեզի համար շատ հետաքրքրական տողերս. «Գրեցաւ ի դուռն Ս. Նշման Ս. Աստուածածնի եւ այլ սրբոց եւ սպասաւոր սուրբ Եկեղեցւոյս ժամանակիս Մեղաքուիչ քահանայից, *աշխատաւոր եւ ծերացեալ ալեօք 94 ամաց տէր Յակոբ քահանայի*, եւ միւս այլ տէր Յովանէս պատուական քահանայի, որ է որդի Քրիստոսատուրի Կաֆայի քաղաքի...» (Կամենից, էջ 192, Ձեռագիրն այժմ Վիեննայի Մխիթ. Մատենադարանի մէջ)։ Յակոբ կենդանի էր դեռ 1678ին։ Այս թուին Յովհաննէս գրիչ ի Կ. Պոլիս օրինակած է «Յակոբի Սաղմոսարանն» տաղաչափեալ. ձեռագիրը կը գտնուի մեր Մատենադարանին մէջ թ. 304։ Զայս ապա Յակոբ աչքէ անցուցած սրբագրած է. եւ թղ. 8ա գողգոջուն ձեռքով յիշատակագրած է. «երգեալ Թոխաթցի Յակոբ իրիցէ յիշել աղաչեմ»։ Ի մէջ այլոց թղ. 168բ աւելցուցած է Յակոբ իւր գողգոջուն գրչով տող մը, զոր ընդօրինակողը կիսատ թողուցած էր, հաւանօրէն առջեւի

օրինակին մէջ անընթեռնլի եղած ըլլալով։ Այս թուին Յակոբ կը գտնուէր իր 105րդ տարեկին։ Դարձեալ բարձր տարիք մը, բայց սխալուած ենք ընդունիլ խօսող վկաներու աչքէն։ Հաւանօրէն այս թուականէն ետքը շատ չապրեցաւ «աշխատաւոր» ալեւորն տէր Յակոբ եւ վախճանեցաւ 80ական թուականին սկիզբը։

Նկարագիրը։ — Այն խաղաղ ոգիներէն կը ներկայանայ մեզի Յակոբ երէց Թոխաթեցի, որոնք լուռ ապրիլ, լուռ գործել եւ լուռ կրել կը սիրեն, հեռու բազմամբոխ կեանքի ժխորէն՝ նուիրուած իրենց ընտանեաց, կոչման եւ գրչի գործերուն։ Այս անդորրութիւնն սիրելի էր իրեն անշուշտ Թոխաթ գտնուած ժամանակ, 1602էն յառաջ, եւ այս է թերեւս պատճառն որ մեզի բոլորովին անծանօթ է անոր կեանքը այս շրջանէն։ Երբ իր անդորրութիւնն խանգարուած տեսաւ Թոխաթի այն սարսափելի օրերուն, ինքն ալ հեռացաւ այն աղմկալից շրջապատէն անոնց թուին հետ, որոնք

Ընկեցին զինչսն զամենայն
Հազիւ զմանկունս առեալ զերծան...
Յոտար երկիր պանդխտեցան
Ի Փռանկստան եւ Պարսկաստան[1]։

Զամօսցա Նորականույց փոքրիկ քաղաքին եղաւ իր ապաստանարանն, որուն հայասեր փոքրիկ գաղթականութեան եղաւ հայր եւ հովիւ։ Այս խաղաղ բոյնին մէջ ապրեցաւ անդորր

1 Հայապատում, Գ., էջ 318։

երկար տարիներ՝ մինչեւ հարիւրամեայ խոր ծերութիւն։

Մի եւ նոյն ժամանակ հանդիսացաւ գործունեայ, «աշխատաւոր» եւ արդիւնաւոր անձնաւորութիւն մը նաեւ գրական ասպարէզի վրայ, նախ իբրեւ քաջագիր գրիչ մը եւ ապա տաղասաց բանաստեղծ։ Ճաշոցի եւ Յայսմաւուրքի հսկայ հատորներու ընդօրինակութիւնները, որոնք 20 տարիներ զբաղցուցին զինքը, վկայ են իր համբերատար գործունէութեան սեղանի առջեւ։ Այս տեսակէտէ աւելի համակրելի է իւր գրածը ոգին Մաշտոցի ընդօրինակութեան մէջ, զոր 65 ամեայ հասակին ի գլուխ կը հանէ «ի վայելումն իւր անդրանիկ որդւոյն», գեղեցիկ առհաւատչեայ խանդաղատալից հօր որդեսէր գթոյն։

Այս նիւթական գրասիրութեան հետ մշակեց Յակոբ միաժամանակ նաեւ գրական գործունէութիւն։ Պանդխտած «ի մէջ այլասեռ ազգաց, այլախօս լեզուաց եւ անընդել աշխարհաց», կամաց կամաց ընտելացաւ դրացի ժողովուրդներուն, հմտացաւ անոնց բարբառին (լեհերէնի), եւ ինչպէս կը տեսնենք մինչեւ անգամ լատիներէն լեզուի որոշ ծանօթութիւն մը ձեռք բերաւ։ Իր ձեռքը կը տեսնենք 1614 թուին Եօթն իմաստասիրաց պատմութեան լատիներէն օրինակ մը, զոր կը հայացնէ։ Այս փորձին քիչ ետքը կը յաջորդեն ինքնագրութիւնները։ Յակոբ աւելի կը միտի չափաւոր գրականութեան, որուն քաջալեր կ՚ըլլայ նաեւ իւր նախկին ուսուցիչն,

որ այժմ իր մօտն է։ Թօխաթի առման վրայ յօրինած Ողբը, որ այս շրջանին կ'իյնայ, մին է իր գեղեցկագոյն արտադրութիւններէն, ուր վառ գոյնով կու լայ իր հայրենեաց երբեմնի փայլչութեան եւ այժմեան աւերակներուն վրայ, բայց միշտ լաւատեսութեամբ, յուսով թէ պիտի կանգնի նորէն եւ կրկին պիտի զգենու իր հին փառքը։ Թէեւ Յակոբ ամէն ձախորդութեանց պատճառ աստուածային զգածմամբ մեղքն կը համարի, որ կը կարճէ Ողորմութեան ձեռքերը, բայց ունի լիուլի վստահութիւն Բարութեան եւ Արդարութեան վրայ, եւ կը յուսայ թէ Գթութիւնն երկար պիտի չհանդուրժէ հայ ժողովրդեան աղաղակներուն եւ կրկին պիտի ծագէ երջանկութեան լոյսը հայկական տառապանքներու վրայ։ Ժէ։ դարու առաջին տասնեակին, երբ հայ ժողովուրդը իր գոյութեան ամէնէն օրհասական տագնապին մէջ կը գտնուէր, Փոքր Ասիոյ մէջ բնաջնջման ենթարկուած եւ Արարատեան նահանգներու մէջ Շահաբասի տեղահանութեան. հայրենասէր Թոխաթեցին հեռուէն ոգի ի բուն հանդիսատես էր մահուան ճգնաժամին, բայց դարձեալ լաւատեսութեամբ զգածուած։ Իր հայրենասէր զգացմանց հառաչանքներն ամփոփուած են Ճաշոցի յիշատակարանին մէջ, 1607/8 շրջանէն, երբ Գրիգոր-Սրապիոն Ուռհայեցի օրինաւոր կաթողիկոսն վախճանած էր եւ Դաւիթ եւ Մելքիսեդեկ կաթողիկոսներն առանց աթոռի կը թափառէին քաղաքէ քաղաք։ Այս թուին

կը գրէր Յակոբ. «Հայրապետ Հայոց ոչ գոյր ի Ս. Էջմիածին, որ նստէր յաթոռ Ս. Լուսաւորչին եւ հովուէր զժողովուրդ նորին, վասն պատերազմացն որ կայր ի մէջ պարսից եւ իսմայելացւոց. գերի եւ եղկելի եղեն ամենայն ազգն Հայոց, զի ցրուեցան ամենեքեան ընդ երեսս երկրի, որպէս փոշի հոսեալ ի հողմոյ՝ ծագաց ի ծագս, բաժանեալք ի սիրելեաց, հեռացեալք ի հայրենեաց, որոշեալք ի յընտանեաց, անջատեալք յամենայն բարութեանց, շրջէին պանդխտէին նժդեհացեալք ի մէջ այլասեռն ազգաց այլախօս լեզուաց եւ անընդել աշխարհաց, որպէս զոչխար որոց ոչ իցէ հովիւ, անտերունչ մնացեալ: *Ողորմելի եւ ատաղելի եղեւ մեծանուն ազգ Հայոց մեծաց.* վասն էր փըրկացար, տառապեցար եւ նուաղեցար: Վասն այն՝ զի մեղար, այգի՛ հայկազուն առհմիդ ոչ տուեր խաղող, այլ փուշ բուսուցեր, վասն այն խոպանացար, ցանկ քո քակեալ եղեւ եւ եղեր կոխան ամենայն ազգաց: *Այժմ զինչ առնելոց ես, զի որբ մնացիր ի հօրէ եւ ի մօրէ, այս ինքն ի թագաւորէ եւ ի հայրապետէ: Այլ յուսա առ Աստուած,* խոստովանեա նմա. զի փրկիչ քո նա է. թէպէտ եւ եհար վասն մեղաց՝ դարձեալ նոյն ինքն ողորմեսցի ըստ մեծի ողորմութեան իւրում եւ ժողովեսցէ որպէս հաւ զձագս իւր ընդ թեւօք եւ *սեփհականեսցէ ի հայրենի աշխարհն եւ հաստատեսցէ թագաւորաւ եւ հայրապետիւ* բարեխօսութեամբ սրբուհւոյ ամենօրհ-

նեալ Աստուածածնին[1]»։ Այսպիսի անձկալութեամբ կը նայէր անիկա ապագային. եւ նոյնպիսի յուսացուցիչ խօսքերով կը խրախուսէր հայ սրտաբեկ ժողովուրդը։ Որբ ժողովրդեան սիրելի հօր մօտալուտ վերադարձին յուսով տոգորուած էր Յակոբ անշուշտ ոչ առանց հիման։ Ստեփանոս Սալմաստեցւոյ, Միքայէլ կաթողիկոսի եւ Աբգար Թոխաթեցւոյ ջանքերը անծանօթ մնացած պիտի չըլլան իրեն. թերեւս դեռ կը շարունակուէին այն փորձերը իրեն օրով ալ։ Հայկական խնդիրը առանց տարակուսի կրկին հետաքրքրած էր Եւրոպան. եւ այս տեսակէտով ուշագրաւ են Թոխաթեցւոյ տողերը։

Իր միւս գրութեանց մէջ Յակոբ աւելի ներանձնացեալ կեանքի նուիրուած է։ Թէեւ նա իր մէջ չի զգար թարմութիւն եւ «միտք կորովի», երեւակայութեան թեւերով մուսայից պարին մէջ խառնուելու,

Ես եա չէի վարժ եւ հմուտ իմաստութեան,
Ոչ ունէի միտք կորովի յիս բընական
Զի շինէի բանս ի մըտաց առանց հիման
Կամ հաւաքեալ ժողովէի խորհրդական։

Բայց ունի սէր բանաստեղծելու, կ'ախորժի կարդալ ոտանաւոր գրուածքներ, նաեւ օտար գրականութիւնէն, եւ ինքնին կը փորձէ հիւսել նմաններ։ Եւ մենք կը տեսնենք թէ նա իմաստութեան իրականապէս անվարժ եւ անհմուտ

[1] Կամենից, էջ 169։

չէր, եւ ունէր իր մէջ որոշ չափով "բնական միտք կորովի„ չինելու "բանս ի մըտաց առանց հիման„. ունէր մանաւանդ կիրթ ճաշակ տաղաչափութեան, սահուն եւ ընթացիկ տողեր հիւսելու, եւ անկաւոր լեզու՝ ուելի հին հայերէնի նկարագրով։ Իր Տաղաչափեալ Սաղմոսարանը ծերութեան օրերու ընիկ ժամերուն ստեղծագործութիւնն է։ Կեանքի գաղտնիքն, յատկապէս մարդկային խառնուածներու հոգեբանական վերլուծումն է իր տաղն "վասն կենաց մարդկան„, ուր խորաթափանց զննութեամբ կը պարզուի իւրաքանչիւր հասակի նկարագիրն՝ մանկութենէն մինչեւ ծերութիւն։ Զննութիւնն առանց տարակուսի անձին փորձառութեան վրայ հաստատուած է։ Իր վարժապետին ձօնած տաղին մէջ կ'արտայայտուի սէր, յարգանք եւ երախտագիտութիւն։ Իսկ Թոխաթի Ողբն իր վառ երեւակայութեան հայելին է, ուր կ'անդրադառնան անցեալ դէպքերն կենդանի նկարագրութեամբ իբրեւ շարժապատկերի մէջ։

Այսպէս երկարամեայ կենաց միջին երեսնամեայն եղաւ անոր գրական գործունէութեան վառարանը, ուր գրեց, տաղաչափեց եւ թարգմանեց. եթէ իր օրինակութիւնք կարճատեւ ժամանակ մը գործածուեցան, բայց տաղերն սիրով երգուեցան եւ մանաւանդ Նօթն իմաստասիրաց պատմութիւնը գտաւ ժողովրդականութիւն եւ կարդացուեցաւ սերունդէ սերունդ։

*Յիշատակարաններ Յակոբ Թոխաթեցու կենսագրութեան վերաբերեալ:*

1. «Գրեցաւ ի թվ. Հայոց ՌՃԻ ամի, ի յերկիրն Լախաց, ի քաղաքն Զամօսցոյ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին. ի ժամանակս հայրապետութեան Հայոց Տէր Մելքիսեթեկին, եւ ի թագաւորութեանն Լախաց Զիկմունդին, եւ զօրավարին իւրոյ Յովհաննիսին, որ կոչի իլախերէն Եան, եւ ընդ հայրենակցութեան Զամօցքի. որ եւ ընդ անուան իւրոյ շինեաց զքաղաքս զայս եւ անուանեաց Զամօսցա. եւ յայսմ ամի կատարեցաւ բարաւոր գրանց քաղաքին: Արդ ի յանդ. հասեալ գրոցս, աղաչեմ զվերծանողքդ յիշել զանարժան գրիչս Յակոբ երէցս, որ մեծաւ փափագանօք գրեցի զսա յիշատակ հոգոյ իմոյ եւ ծնողաց իմոց. եւ որ յիշէքդ՝ յիշեալ լիջիք» (Կամենից, էջ 166):

2. «Փառք... Յորժ փափաքէի աստուածաշունչ բուրաստանիս. որ է սա օրէնք եղեալ յԱստուածոյ. եւ կտակ նահապետաց եւ մարգարէութիւնք նախատեսացն. որ զսկիզբն աշխարհի եւ զկատարումն նորին բացատրէ մեզ եւ զի շատ ջանիւք ջանացի գրել եւ ոչ գտանէի զգաղափար սորա որ մինչ ի տասն ամ խնդրեալ սա եւ անդ ոչ կարացի ի ձեռն բերել: Յետ այսորիկ եկն առ իս սիրելի եւ կարգակից եղբայրն մեր Տէր Աբրահամ կրօնաւորն զոր առացեալ էր զսա վասն իւր. եւ տեսեալ զփափաք ցանկութեան սրտի իմոյ, շնորհեաց մեղաւորիս զսա. սակաւ ինչ ընկա-

լեալ ի ձեռանէ խմմէ...։ Արդ ես անարժան եւ մեղօք զառածեալ Յակովբ երէցս ստացայ զսա ի թվաբերութեան աբեթական տումարիս քսան եւ մի յոբելինի եւ է թիւ յաւելորդի (1608) յամսեան Հոկտեմբերի. ի ժամանակս թագաւորութեանն Իլախաց Ջիկմունտոսի երրորդի. եւ Հայրապետ Հայոց ոչ գոյր ի սուրբ Էջմիածինն որ նստէր յաթոռ սուրբ Լուսաւորչին եւ Հովուէր զժողովուրդ նորին վասն պատերազմացն որ կայր ի մէջ պարսից եւ իսմայէլացւոց (տես վերը, էջ 152)։ Արդ երես անկեալ աղաչեմ զձեզ զամենեսեանդ որք Հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով յիշեցէք ի մաքրեցեալ յաղօթս ձեր զանարժան Յակոբս միով Աստուած ողորմիւ որ մեծաւ փափաքանօք ստացա եւ ծաղկեցի եւ կազմեցի անվարժ գոլով այսմ արհեստի. այլ եւ մի մոռանայք զՀայրն իմ զԱլթունն որ Թարգմանի ոսկի. եւ զմայրն իմ զԱննան եւ զմեծ պապն իմ զԱստուածատուրն եւ զամենայն արեան մերձաւորսն իմ. եւ զուսուցիչն իմ զտէր Յակոբ քահանայն (Այվաթենց) եւ զտէր Աբրահամ կրօնաւորն (Սէչովցի. Հմմտ. Թղ. 251բ) որ շնորՀեաց զսա Զեզ յիշողացդ եւ մեզ յիշելոցս. ողորմի Աստուած աՀեղ աւուր դատաստանի եւ նմա փառք յաւիտեանս ամէն։

Տաշեան՝ Ցուցակ Հայ. Ձեռագրաց կայսերական Մատենադարանին ի Վիեննա, էջ 11 (Թ. 11, Աստուածաշունչ)։ Նոյնն կամենից. էջ 169—170։

3. «փառք...։ Որ եմ կարօղութիւն ակար բնութեանս եւ ցնորեալ մտացս... որ անարժեան գոլով ի գործ գրչութեան, ի հարկէ յանձին կալայ եւ ձեռն արկի ի գծագրութիւն սորա։ Զի վասն ծուլացեալ մտաց իմոց ճաշոցն եւ Ցայսմաւուրքն եւ շուրջառ մի այրեցաւ ի մէջ եկեղեցւոյ. կայծ հասեալ ի ճրագէ յաւուր տօնի Սրբոյն Ստեփաննոսի նախավկային, եւ յերեկոյէ մինչեւ ցառաւօտն ծախեալ ծխեցաւ։ Եւ ի վաղորդայն առաւօտուն պահու գնացեալ իմ եւ բացեալ զեկեղեցին, տեսի զնա...։ Ճաշոցքն ամենեւին այրեցեալ եւ այսմաւուրքն կիսայրեաց ծխայր՝ զի ի ներքոյ կայր...։ Եւ այսպէս զրկեալ կողոպտեցայ ի մեծամեծ գանձուցս ի յայսցանէ. եւ չկայր միւս այլ այսմաւուրք կամ ճաշոց ընթեռնուլ յեկեղեցին։ Եւ մեծաւ ջանիւ հազիւ առաք զգաղափար սորա ի մայրաքաղաքէն Խլաթ. եւ ես անվարժս գրչութեամբ հարկեցայ ի գործ... եւ յանգ հանեալ կատարեցի զամենայն զգիր եւ զձաղիկ»։

Արդ գրեցաւ գիրքս ձեռամբ յոգնամեղ Յակոբ երիցուս, ի թվականութեանն արեթական տոմարիս Ռ. եւ ԿԲ. ամի (1613). ի յաշխարհն Լախաց, ի նորաշէն քաղաքս Զամօսցա, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, եւ սուրբ Լուսաւորչին եւ այլոց խորանացս, ի ժամանակս հայրապետութեան սուրբ Էջմիածնայ Տեառն Տէր Մելքիսեդեկ կաթողիկոսին, եւ թագաւորութեանս Լախաց Երրորդ Զիկմոնդին, եւ իշխանութեան քաղաքիս պան Թոմմաս Զա-

մօյսըքյին, մանուկ իշխանին, զոր տէր Աստուած ընդ երկայն աւուրս արասցէ, ամէն։ Արդ անուանի գիրքս Ճաշոց, զի հանապազօր ի ճաշոյն ընթեռնլի այլ եւ կոչի տարեգիրք, զի զբոլոր տարին զընթերցուածսն յինքեան ունի...։ Արդ երես անկեալ աղաչեմ զձեզ զամենեսեան որք հանդիպիք սմա, կարդալով կամ օրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զիս զփցուն գրչակս եւ զծնօղսն իմ զփոխեցեալս առ Քրիստոս, զհայրն իմ զԱլթունն՝ եւ զմայրն իմ զԱննան եւ զղաւակսն իմ եւ զամենայն արեան մերձաւորս իմ։ Նաեւ զստացօղ գրոյս զԽլուկցի պարոն Պետնամեղն պարոն Թորոսի որդին սրտիւ, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց... եւ ետ յիշատակ անջինջ Զամօսցա քաղաքիս սուրբ Աստուածածին եկեղեցւոյ վասն հոգւոյ իւրոյ վասն ծնողաց իւրոց, եւ ինքն ի յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս մանուկ տիօք երիտասարդական հասակին։

Դարձեալ աղաչեմ զձեզ ընթերցող եղբայրք իմ, որ մեղադիր չլինէք խոշորութեան եւ սղալաց եւ անյարմարութեան գրոյս, զի պէսպէս վշտօք եւ չարչարանօք գրեցի, զի ի ՌԾԲ Թվին (= 1603) սկսայ եւ ԿԲին (= 1613) թըվին ի յաւարտն հասայ։ Վասն որոյ խնդրելով աղաչեմ ձեզ։„

Ցուցակ, անդ, էջ 23—24 (թ. 16 Ճաշոց)։ Նոյնը՝ Կամենից, էջ 170։

4. — «Փառք...։ Արդ ես տրուպս քահանայից՝ մանաւանդ թէ ամենայն քրիստո-

նէից, Ցակոբ երէցս՝ ցանկացող եղեալ պատմութեան սրբոց, եւ ի հարկէ յանձին կալեալ ձեռն արկի ի գծագրութիւն սորա. զի վասն ծովացեալ մեղաց իմոց այսմաւուրքն եւ ճաշոցն եւ շուրջառ մի այրեցաւ ի մէջ եկեղեցւոյն... եւ մեծաւ ջանիւ հազիւ առաք զգաղափար սորա ի Մայրաքաղաքէն Խլաթա. եւ ես անվարժ գոլով գրչութեան հարկեցայ ի գործ. եւ յապաւինեալ յողորմութիւն Աստուծոյ սկսայ. եւ նորին շնորհօք յանգ հանեալ կատարեցի։ Արդ գրեցաւ յայսմաւուրքս ձեռամբ յոգնամեղ Յակոբ երիցու. թվին ՌԿԶ (1617), ի յաշխարհս Խլախաց, ի Ներաշէն քաղաքս Զամոսցա ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին եւ սուրբ Լուսաւորչին եւ այլոց նշխարացս։ Ի ժամանակս հայրապետութեանն Սուրբ Էջմիածնայ Տեառն Տէր Մելքիսեդեկ կաթուղիկոսին. եւ թագաւորութեանս Լախաց Զիկմունդի երրորդի, եւ իշխանութեան քաղաքիս Պարոն Թովմասին երիտասարդ իշխանին, որ հայրենակոչութեամբ Զամոսցեկի անուանի զոր տէր Աստուած ընդ երկայն աւուրս արասցէ. ամէն։ Արդ երես անկեալ աղաչեմ զձեզ զամենեսեանդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր՝ զփցուն գրչակս եւ զծնօղսն իմ զփոխեցեալսն առ Քրիստոս. զհայրն իմ զԱլթունն՝ եւ զմայրն իմ զԱննան, եւ զԳրիգոր որդեակն իմ՝ որ ետ յօգնութիւն գրոյս՝ ութ դահեկան կարմիր. եւ եղաք զսա յիշատակ եկեղեցւոյս, որ անուամբ սուրբ Աստուածածնին

կառուցեալ է՝ ի քաղաքս Զամօսցա։ Եւ այլ չունի որ իշխանութիւն առնուլ զսա առաւի կամ յայլ եկեղեցի տալ կամ վաճառել...։ Դարձեալ աղաչեմ զձեզ ով ընթերցող եղբարք իմ, անմեղադիր լերուք խոշորութեան եւ սղալանաց եւ անյարմարութեան գրոյս,, եւն։

4. «Ողորմի Քրիստոս Աստուած ստացողի սուրբ գրոցս Յակոբ քահանային եւ հօրն եւ մօրն Աննային եւ (Եաղուդ հմմտ. թղ. 29ա, 55ա եւն) երեցկնոջն, եւ որդոցն Գրիգորին եւ Ստեփանոսին, Յովհաննէսին եւ Աստուածատուրին եւ դստերացն Աննային եւ Մարիամին եւ Շուշանին,,։ — Այսպիսի յիշատակագրութիւն կը կրկնուի ամէն հատածին վերջը։

Տաշեան՝ անդ, էջ 26—27 (Թ. 17 Յայսմաւուրք)։ Նոյնն՝ կամենից, էջ 172—173)։

5. «Փառք... որ ես կարողութիւն ակարութեան ծերացեալ եւ փոխեալ մարմնոյս յանդ եղանել սուրբ գրոյս որ կոչի Մաշթոց. Արդ գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ Յակոբ իրիցու ի յերկիրս Իլախաց ի քաղաքս Զամօսցա, առ դուռն սուրբ Աստուածածնին. ի թվականութեանս Հայոց ՌՁԷ ամի ի ժամանակս թագաւորութեանս Իլախաց չորրորդ Վլատիսլաւին եւ Հայրապետութեան սուրբ Էջմիածնա Տեառն Տէր Փիլիպպոս կաթուղիկոսին. Փետրվարի ամսոյ ի իե. յանդ եղաւ ի վայելումն անդրանիկ որդոյ իմոյ Տէր Պետրոս քահանային. զոր արտասուաթոր մաղթանօք հայ-

ցեմ յԱստուծոյ ամենակալէ, զի բարով վայե-լել տացէ...։ Արդ՝ երեսանկեալ աղաչեմ զձեզ եղբայրք, որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով, ասացէք աստուած ողորմի մեղաւոր Յակոբ Իրիցուն եւ որդոյ Նորին Տէր Պետրոս քահանային։ ...Յայսմ ամի մեռաւ մեծ իշխանն տէր քաղաքիս բան Թումաս զա-մօյրքն, այր հանճարեղ...։»

Տաշեան՝ անդ, էջ 13 (թ. 7 Մաշտոց)։ Նոյնն՝ Կամենից, էջ 187։

ԳՐՈՒԹԻՒՆՔ։ — Թոխաթեցւոյ գրական գործունէութեան լաւ ծանօթ եղած է Ստե-փանոս Ռոշքա, որ եւ ունեցած է իր ձեռքը անոր տաղաչափական գրուածոց հաւաքածոյ մը, բայց իրեն անծանօթ մնացած է «Խօթն իմաս-տասիրաց պատմութեան» թարգմանութիւնը։ Ռոշքա կը գրէ իր ժամանակագրութեան մէջ յամի 1627 (Կամենից, էջ 137).

«Յակոբ քահանայ Եւդոկիացի (Թոխա-թեցի) եկեալ ի Լեհաստան պանդխտական ի քաղաքն Զամօսցայ գոլով, զքովանդակ հա-րիւր յիսուն Սաղմոսան Դաւթի գեղե-ցիկ եւ քաղցր ոճով, մեկնօրէն ոտանաւորս արար։ Նաեւ զքագում խօսս Ս. Գրիգորի Նարեկացւոյն տաղաչափականս շարա-դրեաց, այլ եւ զզանազան տաղս վասն կենաց մարդկան, եւ զղջման եւն. յայսմ ամի աւարտեաց զայսոսիկ, զորս առ ձեռս ունիմ։»

Ուշքայի ձեռքը գտնուած այս հաւաքածոյքը հաւանօրէն նոյն է բովանդակութեամբ մեր Մատենադարանի Թ. 304 ձեռագրին հետ. Նարեկացւոյ գրուածներէն սակայն երկու հատուած միայն կայ հոս տաղաչափեալ, մինչ Ուշքա «գրագրում խօսս» տեսած կը համարի։

Կ՚ամփոփեմ այստեղ Թոխաթեցւոյ ինձ ծանօթ գրութիւնները.

1. *Սաղմոսարան տաղաչափեալ*: Յակոբ Թոխաթեցի ի Զամոսցա տեսնելով «ի յայլասեռս» տաղաչափեալ Սաղմոսարան «յոգնահանճար իմաստութք լի եւ խորական լուծեալ ի նմա զդժուարիմաց բանս խրթնական», կը յօրդորուի նման երկ մ՚ալ շարադրել հայերէն։ 1627ին ի գլուխ կը հանէ զայն, ինչպէս կը գրէ՝ «շարադրեցի տառանուօք ես զամենայն, զհարիւր ՚ւ յիսուն փոխ սաղմոսին զերգն ի լըման»․ իւր բազում երկանց ծնունդն կ՚անուանէ «Յակոբի Սաղմոսարան»։

Թոխաթեցին իւր 60 ամեայ հասակին ձեռնարկած է տաղաչափել Սաղմոսարանս, ժամանակ մը, երբ չէր զգար իւր մէջ բնական այն «կորովի միտքն», որ կարող է ստեղծագործել, ներշնչուիլ, «չինել բանս ի մըսաց առանց հիման» կամ «հաւաքեալ ժողովել խորհրդական» պատկերներ յեցած երեւակայութեան տաք թեւերու վրայ։ Թէեւ ծանօթ էր իրեն նոյնպիսի «յոգնահանճար եւ իմաստութք լի եւ խորական» փորձեր «յայլասեռս» լատին եւ լեհ գրականութեան մէջ։ Նման ձեռնարկութեան մը ան-

բառական տեսած է նաեւ իր հմտութիւնն, ինչպէս կը խոստովանի. «եւ ես չէի վարժ եւ հմուտ իմաստութեան»: Յակոբ Այվաթենցի Դպրոցին մէջ ի Թոխաթ սորված էր նա Ս. Գրոց, յատկապէս Սաղմոսաց բառական մեկնութիւնն միայն, այն չոր ու ցամաք ոճով, զոր Տաթեւեան Դպրոցն մուծած էր հայ գրականութեան մէջ, հեռու այլաբանական ուղղութենէն: Այս պատճառաւ ալ հարկ զգացած է ամուր յենուլ իր ձեռքի «գաւազանին», Սաղմոսաց բնագրին վրայ եւ ընթանալ ստրկօրէն կապուած բնագրին. բառ առ բառ, տող առ տող վերածած է զայն տառանաւորի, թոյլ տալով իրեն թեթեւ ազատութիւններ այն տեղերն միայն, ուր խրթին եղած է բնագրին միտքը. «փոքր ի շատէ գտանի ի սմա լուծումն բանից մէջնօրէն եւ թարգմանաբար, առ ի հասկանալոյ նորավարժից»:

Իբրեւ այսպիսի ընծայած է հայ գրականութեան գործ մը, որ արուեստական է ծայրէ ծայր, առանց ներքին արժանիքի: Ջանք տարուած է խնամով՝ չափերու պէսպէսութեամբ տաղտկալի չընծայել ընթերցումը, սահուն, կանոնաւոր ընթացք մը տալ եւ լեզուի պարզութեամբ եւ կանոնաւորութեամբ դիւրըմբռնելի ընել իմաստը, եւ այս տեսակէտով ունի իր արժանաւոր յարգը, բայց իբրեւ բանաստեղծական արտադրութիւն, զուրկ է ամէն ներշնչումէ: Տառանաւոր Սաղմոսարանին թերթումներն որ եւ իցէ ազդեցութիւն չեն գործած երգչին վրայ. չորութեան, ցամաքութեան ընդարձակ անա-

պատ մը կը բացուի հոն մեր առջեւ, ուր կ'իշխէ անսիրտ, անբարբառ ամայութիւնը։ Արուեստական կերտուած մը կը ցուցադրուի, ուր մանկերեւութային ճարտարութիւնը ուշադրութիւն կը գրաւէ քան զգածումը։

Հեղինակին ցանկութիւնն եղած է, որ իւր տաղաչափուած տողմաններն երգեցուին հասարակութեան մէջ եւ անոնք ժողովրդականութիւն վայելեն, բայց յուսախաբ կրնանք համարիլ զինքը իւր ակնկալութեան մէջ։ Անոնք անձուկ շրջանի մէջ միայն մուտք գտան եւ այն կարճ ժամանակ մը. ծանօթ ձեռագիրները գրուած են հեղինակին կենդանութեան, բազմացուած մասամբ հեղինակէն եւ մասամբ մերձաւոր ծանօթներէն։

Սկիզբը իբր պատրաստողական մասեր զետեղուած են "ի բանից Նարեկայ" երկու տառնաւոր իբր "աղաչանք ի Հոգւոյն" եւ "ի տեղի Յառաջաբանի". առաջինը յօրինուած է իբր տաղ, երկրորդը իբր գանձ։ Կը յաջորդէ երկրորդ աղաչանք մ'ալ, որով կ'աղերսաբանէ առ սուրբ Հոգին եւ օգնութիւնք կը հայցէ։ Ասոնք են.

—. Աղաչանք ի Հոգւոյն սրբոյ ի բանիցն Նարեկայ առ ի յօգնութիւն առաջակայ բանիցն։

Աղաչեմ զանէութիւնդ անփոփոխելի,
Ամենազօր եւ սուրբ Հոգւոյդ զթածի.
Ցօղեա յիս քաղցրութեամբ ի ցօղոյդ շնորհի,
Եւ եւս բարեգործեա յանձն իմ եղկելի։

Տանց սկզբնագրերը կը յօդեն՝ Աղաչանք ի Հոգւոյն սրբո. տողեւ լուսանցքի վրայ կը

նշանակուի. «Ցոփաստափի նշանակածն է„։ Տաղաչափուած են Գր. Նարեկացւոյ Ողբերգութեանց առաջին գլուխներն քաղուածաբար։

Ե. Դարձեալ ի բանիցն Նարեկայ շարադրեցաւ ի տեղի առաջաբանի Սաղմոսաց Դաւթի։

Ձայն հառաչանաց, երգ պաղատանաց
 այս բան մաղթանաց.
Սրտից հեծութեանց, ողբք աղաղակաց
 հայցուածք արտասուաց
Քեզ վերընծայեաց, սիրտ իմ արտամաղձեաց,
 տեսողիդ գաղտնեաց։
Մատուցեալ եդած, ի հուր թախծութեանց
 անձին տոչորմանց։
Պտուղ ճենճերաց, ստանեալ մրտաց,
 բուրմամբ անուշաց։
Թուրվառաւ կամաց առ քեզ խնկարկած
 Տէր դու հաստատեաց։
Հայեցիր գթած, ծխոյն բարդութեանց
 այս պատարագաց։
Թոլորով սրտանց մատուցեալ անձանց
 քեզ Տեառնդ փառաց։
Ահա կեցո՛ զմեզ Տէր և արդարոցս,
 այսու երգով որ հանապազ քեզ վեր
  ընծայի. աղաչեմք.
Լուր Տէր և ողորմեա . . . ։

Տանց սկզբնագիրք կը յօդեն՝ Ձայն ողբո: Սորեւ լուսանցքի վրայ՝ «Գանձի նշանակ է„ (= Նարեկացի, Ողբերգութիւնք. բան Ա.)։

Զ. Դարձեալ կրկին անգամ աղերսաբանէ առ սուրբ Հոգին եւ հայցէ օգնութիւն։

Զ Հոգիդ սուրբ աղերսեմ, առ իս ժամանեա,
Զմրոաց իմ դաշչն բաց, որ կարօղանա,

Տեղեկանալ բանից որ առաջի կայ,
Եւ ի շարագրութիւն սորա զօրանայ։

Երեք տուն ընդ ամէնը։

Այս կը սկսի Սաղմոսարանը, որ բաժանուած է բուն Սաղմոսարանաց պէս կանոնագլուխներու, գուբղաներու եւ սաղմոսներու։ Ամէն մի սաղմոս երգուած է ուրոյն գլխով, այնպէս որ Սաղմոսներու թուոյն համաձայն ընդ ամէնն 150 երգ է։ Ութ կանոնագլուխներէն իւրաքանչիւրը երգուած է ուրոյն չափով, այնպէս որ ութ տարբեր չափեր կը նկատուին, զորոնք ստորեւ կը նշանակենք մի առ մի։

Սկիզբը կը կանխէ (թղ. 6բ) ազդ մը, զոր կարեւոր կը համարիմ հոս յառաջ բերել իբրեւ լուսաբանութիւն հեղինակի գրչէն, միանգամայն իբր բանալի ամբողջին համար։

«*Յակոբ քահանայի Նորոկիացւոյ շա-րադրեալ զՍաղմոսն Դաւթի* զամենայն զհարիւր եւ զյիսուն փոխն ի լման, պէսպէս վանգիւ եւ քաղցրաձայն եղանակաւ, զի ախորժ լիցի երգչաց ի նուագել եւ ունկնդրաց ի լսել, այլ եւ փոքր ի շատէ գտանի ի սմա *լուծումն* բանից *մեկնօրէն* եւ թարգմանաբար, առ ի հասկանալոյ նորավարժից. բայց ի փոխարկելն սորա պարտ է զգուշանալ գրոյ եւ բայի, զի թէ մի տառ յաւելու կամ նուազի՝ կաղանայ ոտք վանգիցն եւ բանն աղաւաղի ի վերծանութիւնն. այս եթէ անթերի եւ կատարեալ լինի ամենայնն, բայն եւ գիրն, կէտն եւ գլուխն, յայնժամ

գիւրանայ լեզու եւ սիրտ երգողաց եւ քաղցրանայ միտք նոցա ի սմա։ Եւ յիշեսցեն զմեղաւոր Յակոբ միով Տէր ողորմիւ....»։

Ձեռագրին մէջ իւրաքանչիւր Սաղմոսի խորագիր կը դրուի «*Տունք*... (ԺԶ. եւն) ի *Սաղմոսաց Դաւթի*. *Փոխ*... (Առաջին եւն, Երանեալ է եւն)։ Այս մանրամասնութիւններն ցանց կ'առնունք հոս եւ կու տանք 8 կանոնագլուխներու սկզբնաւորութեանց պատկերը, առընթեր նշանակելով հատածներու թիւը։

Ա. Սաղմ. Ա—ԺԷ, 4—4.

Ամենայն մարդ ով որ իցէ.
Երանելի սանձ թէ է...

Բ. Սաղմ. ԺԸ—ԼԵ, 6—5.

Որդւոց մարդկան տղանցըս բանաւորաց,
Իմաստութեան շաւղացըն հեռացողաց...

Գ. Սաղմ. ԼԶ—ԾԳ, 5—5—5.

Դու մի նախանձիր ի գործըս չարիր
յոչինչ 'ւ ի նանիր,
Որպէս խոտ ծաղիկ վաղ անկցի յերկիր
եւ դառնայ մոխիր։

Դ. Սաղմ. ԾԴ—ՀԱ, 4—5.

Ինձ ողորմեա Աստուած ողորմած
Մարդ նենգաւոր զիս յերկիր կոխեաց...

Ե. Սաղմ. ՀԲ—ՁԸ, 5—2—5—3.

Իբրեւ զի բարի է Տէր
ի վերայ իւր ժողովրդեան

Եւ դըր ուղիղ են սրտիւք
եւ կան ի յԱստուածպաշտութեան ։

Զ. Սաղմ. ՂԹ—ՂԵ, 3—3—3.

Տէր դու եղեր մեզ ապաւէն ի յաւիտեան.
Մինչեւ լերինք եւ ափեղերք եւ որք որ կան ։

Է. Սաղմ. ՃԶ—ՃԺԸ, 6—4—5.

Վասն զի քաղցր է Տէր,
գուք եղերուք նմա խոստովան.
Ողորմութիւն նորա
ի յաւիտեան ոչ ունի վախճան ։

Ը. Սաղմ. ՃԺԹ—ՃԾ, 5—5.

Առ Տէր կարդացի ես ի նեղութեան
Լըսելի եղեւ խընդիրքս ամենայն...

Հատածները այս կանոնաւորութիւնը չունին ի Հարկէ ամէն տեղ. այլ տեղխ տեղխ բանադատուած զգացած է ինք զինք Թոխաթեցի բազմավանկ բառերն հատածել — որով կորսուած է երգին երաժշտականութիւնը ։

Ի կատարածին կայ Հեղինակի երկար յիշատակարանը. որուն կարեւոր մասերն դնենք հոս.

*Յիշատակարան չափածոյի Սաղմոսին :* Տէր Աստուած ողորմեսցի ամէն ։

Յետ Աղամայ երանելոյն ի փափկութեան
Որդիքն նորա ընդ անասունս աստ բնակեցան.
Ծընեան զաւակս Բ՛ վերայ երկրի եւ բազմացան,
Եւ յարարչէն իւրեանց նոքայ մոլորեցան ։

Բայց գըթութիւնն աստուածային արարչական,
Ոչ մինչ ի սպառ ետ զնոսա դիւաց կոխան.
Այլ ետ ի սիրտ նոցին խորհուրդս գիտութեան,
Ի ճանաչել զԱստուածն երկնից խնամող զինքեան:

Ուստի յուսմունս աստուածայինս վարժեցան
Մաքուր մըտօք իմաստութեան հետեւեցան
Ի մարմնական զբաղանաց օտարեցան,
Ի հըմտութիւն անեղեկութեան գրոց փութացան:...

Ի նոյն շնորհէ եկեղեցիք հաստատեցան
Պէսպէս կարգօք եւ պաշտամամբ զարդարեցան
Քաղցրանուագ երգանակօք վայելչացան
Մանկունք սորա զմայլեալ Հոգւով զուարճացան:...

Առ որս եւ մեր եկեղեցիք ի Հայաստան
Ի պարգեւէ շնորհաց Հոգւոյն ոչ յետնեցան.
Այլ ի նախնեաց ի հարց մերոց շատք ընտրեցան,
Եւ զօրացեալք ի սուրբ Հոգւոյն արիացան:

Նախ ըզհաւատս ուսուցին ժողովրդեան
Ըստ աւանդից առաքելոյն որպէս ուսան
Խոստովանել զանունն սուրբ Երրորդութեան
Ըստ Նիկիոյ մեծ ժողովոյն դաւանութեան:

Ապա կարգաց եկեղեցեաց եդին սահման,
Յառաւօտէ մինչեւ ցերեկ միշտ անխափան
Կարգ աղօթից ժամատեղաց մեր եւթն անգամ
Յորում աւրհնել զկենդանատուն են պարտական:

Եւ ըստ ժամու զկարգն աղօթից պատշաճական
Բանս հաւաքեալ ի գրոց սրբոց աղերսական.
Որով լինին Տեառն Աստուծոյ միշտ օրհնաբան
Այլ եւ հայցեն վասն աշխարհի խաղաղութեան:

Այլ եւ ունի եկեղեցի մեր զօրական
Որ հրաւիրեալ առին ըզկարգ եւ զաստիճան
Սուրբ հայրապետք եւ վարդապետք աստուածարան
Եւ պաշտօնեայք նոցին կցորդ եւ համաձայն:

Մինչ Հովիւ եւ առաջնորդ ժողովրդեան
Միւսըն խրատիչ եւ քարոզող նոցա բերան
Ա՛յլքըն երգող գանձ մեղեցի եւ շարական
Սաղմոսասացք եւ ընթերցողք յոյժ ժըրաջան։

Եւ արտաքոյ եկեղեցւոյս բազում այլ կան
Ուսանողըք գեղեցիկ շարադրական
Հընչեն յականջըս լըսողաց յոյժ քաղցրաձայն
Համեղ բանիւ յարմարաւոր 'ւ ախորժական։

Զորս ի վերայ քրիստոսական անօրէնութեան
Զորս ի վարուց առաքինեացըն պատմութեան
Զայլս ընթացից լուսաւորացըն շարժութեան
Կամ՝ աշխարհի զորպիսութիւն վարուց մարդկան։

Ոմանք Հոգւով ըղձողեւոր բանս խօսեցան,
Յորմէ բազումք ի չար գործոցըն զըղջացան.
Այլ՝ ըղձերոյ մարմնաւորիս բարբառեցան
Որ ի խրախճանըս ըմպելեաց ուրախանան։

Իսկ հուսկ յետնոյ յետնեալըս ես քան զամենայն
Բարբառեցայ վառեալ ի սէր նուաղերգութեան
Վարանէի թախծեալ ոգւով ի բազում ամ
Թէ զինչ թողից յետ վախճանի իմոյ յիշման։

Ապա անկի ի յայլասեռ Սաղմոսարան,
Էր շարադրեալ ոտանաւոր յարմարական,
Յոգնահանճար իմաստիւք լի եւ խորական,
Լուծեալ ի նմա դըժուարիմաց բանս խըրթնական։

Եւ ես չէի վարժ եւ հըմուտ իմաստութեան,
Ոչ ունէի միտըք կարողի յիս բնական,
Զի չինէի բանս ի մըտաց առանց հիման,
Կամ՝ հաւաքեալ ժողովէի խորհրդական։

Վասն այսորիկ ի ձեռս առի ես զաւուրդան,
Ինձ առաջնորդ եւ ուսուցիչ զբանըս Դաւթեան,
Շարադրեցի ոտանաւոր ես զամենայն,
Զհարիւր 'ւ յիսուն փոխ սաղմոսին զերգըն ի լըման։

Ընծայեցի բանաւորաց վասն օգտութեան
Եթէ լիցի ընդունելի որ ի սմա բան.
Յայնժամ երգով եղանակեն մրատառական
Եւ զանարժանս արժան առնեն նոքա յիշման։

Արդ մի լիցի բանքս այս ձեզ պարսաւական
Մի եղիցի ձեր առաջի իբր ըղխատան
Քանզի գտանէք փոքր ի շատէ բան ինչ լուծման
Որք խաւարեալ մտաց մարդկան ողքա լոյս տան։

Ոչ է յիմոց մտաց ասեալ ի յառաջ եկեան
Այլ ի շնորհաց պարգեւողէն շարադրեցան
Ի վերայ ասուր մարգարէին եդեալ հիման
Որ էր լեզու Հոգւոյն սրբոյ եւ բնակարան։

Ես որ տրուպս եմ յաշխարհի քան զամենայն
Խոնարհ հոգւով զձեզ աղաչեմ զամենեսեան
Զի ընկալջիք զբանս գուգնաբերայ որպէս լուսոյն
Որ ի սմա ասով չափոյ ի կարգ անկան։

Եւ յիշելոյ արժան արէք զիս զանարժան,
ԶՅակոբ երէցըս Թոխաթցի ամաժանական,
Որ եմ պանդուխտ յայսմ աշխարհի տարաբնական,
Լեհաց երկիրն ի նոր քաղաքըս Զամօշցան։

Այլ եւ ըզծնողսն իմ յիշեցէք ի ժամ հայցման,
Զմեծահաւատ հայրն իմ Ալթունն, զմայրն իմ Աննան,
Ոչ ժամանեալ նոցա ի հասակ ծերութեան,
Այլ ի միջակ տիս հասակի վախճանեցան։

Եւ զվարժապետն իմ բազմերախտ արիական,
ԸզԱյվաթենց Յակոբ անուն սուրբ քահանայն,
Խնամատուք լի գերակատար ի գիտութեան
Հոգւով մաքուր մարմնով ճըգնող ի ծերութեան։

Եւ զամենայն ըզմերձաւորս իմոյ արեան
Եւ զժողովուրդ այս քաղաքիս զամենեսեան
Զծեր եւ ըզտղայ, զերիտասարդ եւ ըզկուսան
Եւ որք եղեալ են հաւատով ի գերեզման։

Ի Թվականի մեծ տումարիս արեթական,
Որ էր հազար եւթանասուն այլ եւ վեց ամ
Ես մեղաւորս շարադրեցի սակաւ զայս բան,
Ընծայեցի բանասիրաց ի վայելման։

Զի եղիցի ինձ յիշատակ առ անվախճան
Եւ աղօթող առ Տէր Աստուած միշտ անխափան.
Այլ եւ լիցի փառաւորանող Երրորդութեան
Հօր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյն մինչ յաւիտեան։

Այլ եւ խնդրեմ ի ձէնջ եղբարք աղերսական
Յաղօթքս ձեր յանձնեմ զանձն իմ մեղանչական.
Միթէ լիցի հոգւոյս ներումըն քաւութեան
Եւ ընդ արդարսըն դասակցիլ ի հանդերձեալն։

Անուն դիցուք գրոյս այսմիկ պատուշաճական,
Երգեցողի այս մատենի բառ իւր անուան,
Արդ կոչեսցի սայ Յակոբի Սաղմոսարան,
Զի կարասցեն կոչել առ ինք ամենեքեան։

Յաւարտ բանիս օրհնեմք զԱստուած զՀայրն էական
Եւ զէակից Որդի նորին անճառական
Եւ սուրբ Հոգւոյն նորոգողի զամենեսեան
Փառք եւ պատիւ եւ գոհութիւն մինչ յաւիտեան։

Ձեռագիրք՝ Մեր Մատենադարանի, Թ. 304, թղ. 3ա—67ա (հմմտ. Տաշեան՝ Ցուցակ, էջ 731—732), վաւերացուած հեղինակին ստորագրութեամբ (թղ. 8ա)։ — Գուշակեան՝ Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Ս. Նշանի Վանուց ի Սեբաստիա, Թ. 254 (յամէ 1640, հեղինակի գրչէ՞ն)։

2. *Տաղեր:* Յակոբ Թոխաթեցւոյ անուամբ 7 տաղ ծանօթ է ինձի, որոնց հարազատութեան վրայ չեմ կասկածիր։

—. *Ողբ ի վերայ Եւդոկիա քաղաքի:*
Ողբս երգած է Յակոբ իր ուսուցչին՝ Յակոբ Ա.յվաթենցի խնդրանքով՝ հաւանօրէն 1614—1620 շրջանին, Թոխաթի 1602ի առման եւ աւերածութեան վրայ։ Նոյն դէպքն ողբացած էր նաեւ Ստեփանոս Թոխաթեցի։ Մինչ վերջնոյս քով ընդարձակ բանուած է դիպաց մանրամասն պատմութիւնը, Յակոբ կը միայն աւելի գծել անմիջապէս աւերածութեան յաջորդող սարսափելի տեսարանը, հայ ժողովրդեան հասած անչափ վշտերը, պարզ բայց սրտառուչ նկարագրութեամբ։ Միակ ձեռագիր մը հասած է Ողբէս՝ Կերլայի Տաղարանին մէջ, ուսկից ծագած են Հ. Ալիշանին ծանօթ բնագիրն եւ մեր Մատենադարանի թ. 797։ Խորագիրն եւ սկզբնաւորութիւնն է.

*Ողբ ի վերայ Եւդոկիա քաղաքին՝ որ այժմ ասի Թոխաթ,* զոր ասէ անօրէն Ցէլու Հասան ասեն որ եկաւ այրեաց եւ աւերեաց զաշխարհ։

Ի Թուականիս յաբեթական՝
Հազար 'ւ. յիսուն մէկ ի լրման,
Պատիժ կրեաց Եւդոկեայն՝
վասն մեղաց ժողովրդեան։...

Վերջ

Զիս որ տըրուպ եմ անձնի՝
զՅակոբ երէցըս Թոխաթցի
Ի Բաթուկենց Թոռանցն էի
Նշդեհ հողով ի տար երկրի.
Նայ Տէր Յակոբ սուրբ քահանայն՝
Բրոնտագատեայ զիս զանարժան

Որ այսպէս բանս շարադրեցան՝
անգէտ մըտացս ի կարգ անկան...

Ձեռագիրք՝ Մեր Մատենադարանի, Թ. 797, Թղ. 232ա (= Ձ. Կ. 343ա)։

Հրատարակութիւն՝ Հայաստանում, Գ., էջ 317—322։

Ը. *Գովք Յակոբ Այլաթենցի։* Գովքս երկու մասէ կը բաղկանայ՝ տաղ եւ գանձ, եւ գրուած է իբրեւ ոտանաւոր նամակ ուղղուած Այլաթենց Տէր Յակոբ Վարժապետին, որ կը գտնուի Թոխաթ։ Գրութեան ժամանակն չէ նշանակուած, բայց ըլլալու է 1612—1614 շրջանէն։ Իբրեւ ոտանաւոր շատ տկար է շինուածքը եւ հեղինակին առաջին փորձերէն կ'երեւայ, յօրինուած Գրիգորիս Աղթամարցւոյ տաղերու նմանութեամբ, բայց ջերմ են զգածումները եւ ամբողջին մէջ կ'արտացոլայ այն յարգանքը, զոր աշակերտն ունի ուսուցչին հանդէպ։ Տաղին տուներու սկզբնակապ գրերը կը յօդեն "Յակոբ անարժանէս ընկալ" եւ "Հայր" յարակից գանձին մէջ։ Խորագիրն եւ սկզբնաւորութիւնն է.

*Ի Յակոբ իրիցուէ ասացեալ է գեղջուկ ոտանաւորս ի դէմս վարժապետին իւրոյ Յակոբ քահանային որ ասի Այլաթենց. եւ իւրեան(ց) մականունն ասեն՝ Թոխաթցի Բաթուկի Տէր Յակոբ, որ է այժմ ի Լեհաց տուն Զամոսցա։*

Յիսուսի Աստուծոյ Որդւոյն միածնի,
Գրթով նոր ողջոյն առ. քեզ հասանի.
Տեառնրդ իմոյ Յակոբ սուրբ քահանայի՝
Դէմ քեզ երկրպագեմ խոնարհ ի յերկրի...

Վերջ՝

Լոյսրդ աննենգ եւ սուրբ եւ հեզահոգի՝
Եթէ դու կու հարցանես զանձն իմ եղկելի,
Առողջ եմ մարմնով ի յայս կենցաղի՝
Հայցմամբ ձեր եւ ներելով Տեառն Յիսուսի։

Ձեռագիր՝ Մեր Մատենադարանի, թ. 797, թղ. 228ա—230ա (Ձ. կ. 341ա)։

Ասոր կից կայ գանձս.

է. *Ի Բաղուկ Յակոբ իրիցուէ ասացեալ ի դէմն վարժապետին իւրոյ Այվաթենց Տէր Յակոբին։*

Հիրար հող անձնէ քո աշակերտէ՝
  Յակոբ ծառայէ՝
Քեզ ողջոյն հասցէ Տէր Տէր Աֆէնտէ
  եւ Աստուածատրէ...

Վերջ՝

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր. ասացեր.
  Տէր ողորմեա, Տէր ողորմեա.
Զիմ աշակերտիս շատ մեղքըրն ջընջեա։

Ձեռագիր՝ Մեր Մատենադարանի, թ. 797, թղ. 230ա—232ա (Ձ. կ. 348բ)։

ը. *Տաղ վասն կենաց մարդկան։* Կեանքի իւրաքանչիւր հասակի նկարագրութիւնն է, ուր հոգեխօսական զննութեամբ

պատկերացուած են իւրաքանչիւր տարիքի երեւոյթները, սկսեալ մանկութենէն մինչեւ խոր ծերութիւն. Թոխաթեցւոյ յաջողագոյն տաղերէն մին է այս, թէեւ քիչ մը կրկնութեամբ եւ երկայնաբանութեամբ զգատուած։ Տուներու սկզբնատառերը կը յօդեն Ա—Ք։

*Տաղ վասն կենաց մարդկան նորին Յակոբի ասացեալ.*

Աստուած բանեղծեալ զմարդն առաջին,
Օրհնելով օրհնեաց զանձուն նոցին.
Աճեալ բազմացան եւ զերկիր լցին,
Տեւէ եւ մընայ մինչ յօրըն վերջին։

Վերջ՝

Քեզ Յակոբ երէց ով ես զայդ հրաման
Որ շաղակրատես բանըս ի յառաւան
Ձեզ աղաչեմ՝ եղբարք ամենայն
Մի խընայէք ինձ տալ դէայր մեղան։

Ձեռագիրք՝ Մեր Մատենադարանի, թ. 304, թղ. 167 ա։ Բեռլինի արքունի Մատենադարանի թ. 62, թղ. 336 բ (խիստ պակսի, անանուն)։

Հրատարակութիւնք՝ Համբաւաբեր Ռուսիոյ 1863, թ. 40—43, էջ 7—8։ ԲԶՄ. 1865, էջ 208—211։

Ե. *Յակոբ Թոխաթեցւոյ ասացեալ տաղ զղջման խոստովանօրէն* (տունք՝ «Յակոբ քահանայի ասացեալ»)։

Յերգոցըն Դաւթի ըսկիզըն առարից
Բանիւն Եսայեայ խըրատիս բարձից,

Զնդեկիէլին հուպ որմին եդից,
Զպատուէրն Յիսուսի օրհնաբանեցից։

Վերջ՝

Ըզմեղօք մեռեալ Յակոբ սուտանուն
Էր դու լըրբեցար երբ չես բանիբուն,
Դարձիր ի մեղաց, չինես հօգւոյդ տուն,
Անցեալ աւուրքդ կու գայ գոյժ մահուն։

Ձեռագիր՝ մեր Մատենադարանի թ. 304, թղ. 16բ։

Ը. *Նորին Յակոբի ողբ աղօթական* (տունք «Յակոբ ք[ահանայի]»)։

Յիսուսի Քրիստոսի փրրկչիդ աղերսեմ,
Եւ զաղէտ յանցանաց անձինըս պատմեմ,
Յարաժամ հանապազ լալով արտասուեմ,
բըժիշկ իմաստնոյդ զվէրս իմ ցուցանեմ...

Ձեռագիր՝ մեր Մատենադարանի թ. 304, թղ. 18ա (թերի կը մնայ)։

Է. *Խրատք եւ կարգք շարական բաղելու*. Թօխաթցի Յակոբիս։

Յորժամ դու կամեցիս քաղել շարական.
Նախ առ Աւետեաց 'ւ ապա Ծընընդեան.
Յետ նոր գալըստեան 'ւ ապաշխարութեան.
Ղազարու ի կարգէն եւ Տեառն Յարութեան...

Վերջ՝

Մեղաւորէր 'ւ անարժան Յակոբ անպիտան,
Քեզ ով ետ հրաման զայս ասել յատեան.
Կարդացողք 'ւ ընթերցողք զսակաւ զայս բան
Հայր մեղայ ասացէք. օրհնեալ յաւիտեան։

Ձեռագիր՝ մեր Մատենադարանի Թ. 797, թղ. 142բ—143ա (Ձ. Կ. 207ա). — Էջմ. Գէորգ. Ցուց., Թ. 324.

Գուշակեան՝ Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Ս. Նշանի վանուց ի Սեբաստիա, Թ. 217 (Քառ-ընդգիրք), էջ 429—440 (անտիպ) տեսած է. «Յակոբ Թոխաթեցի երէցի մը ՌՁԴ (1635) թուին Երուսաղէմի մէջ նոյն քաղաքի վրայ քանի մ'անարժէք տաղաչափութիւնները», դժբախտաբար չեն նշանակուած տաղերու խորագիրներն եւ սկզբնաւորութիւնները, որով չենք կրնար ճշդել[1], յիշեալ Յակոբ Թոխաթեցին նո՞յն է Թաթուկենց տէր Յակոբի հետ։ Մեզի անծանօթ է անոր ուխտագնացութիւնն յԵրուսաղէմ։

Տեսնենք այժմ Նօթն իմաստասիրաց պատմութեան թարգմանութիւնն իր գրչէն։

3. Նօթն իմաստասիրաց պատմութեան թարգմանութիւնը լատիներէնէ (1614). Չկայ համազգային գրականութեան մէջ մատեան մը, որ Աստուածաշունչէն ետքը այնքան ծաւալուն եւ ժողովրդականութիւն գտած ըլլայ, ինչպէս Նօթն իմաստասիրաց պատմու-

---

1 Ճիշդ այս թուին (1635) կ'ապրէին Կեսարացի եւ Սեբաստացի երկու տաղասաց Յակոբներ, որոնցմէ միայն է «Գովեստ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ» սկզբնաւորութեամբ.

ՅԱստուածոյ շինեալ քաղաքս պատուական . . .

զոր Հրատարակած եմ Յակոբ Կեսարացւոյ անուամբ. Հանդ. Ամս. 1909, էջ 371—374.

թիւնը։ Արեւելեան առակախօս աշխարհի ստեղծագործութիւնն է անիկա, որ հեռաւոր Հնդկաստանի մէջ իր ծնունդն առած, իրեն ճանապարհ հորդած է ժողովուրդէ ժողովուրդ, եւ ամէն տեղ մեծ համակրութիւն վայելելով ապրած է դարերով։

Հին Հնդկաստանի մէջ իշխանազուններն դաստիարակելու համար կազմուած էր առակներու եւ պատմուածքներու ժողովածոյ մը, սովորաբար Փանչաթանթրա (Հնգամատեան) կամ Կալիլա եւ Դիմնա կոչուած[1], զոր Benfey «Հնդկական իշխանազուններու հայելին» կ'անուանէ, ուր կենդանիներն մարդկան դերը կը խաղան խօսուն կերպարանաց տակ։ Խոսրով Անուշիրվանի (531—579) հրամանաւ Բուրզոյէ բժիշկը պահլաւերէնի թարգմանեց զայն Զ. դարու կէսին. քիչ վերջը լոյս տեսաւ անոր պահլաւերէնէ ասորերէն թարգմանութիւնը Բուդ եկեղեցականի ձեռքով[2]։ Երկու դար ետքը

[1] Հմմտ. Th. Benfey, Pantschatantra. Fünf Bücher indischer Fabeln, Märchen und Erzählungen. Aus dem Sanskrit übersetzt mit Einleitung und Anmerkungen. Zwei Teile. Leipzig 1859. J. Hertel, Tanträkhyäyika. Die älteste Fassung des Pañcatantra. Aus dem Sanscrit übersetzt mit Einleitung und Anmerkungen. Zwei Teile. Leipzig 1909, դարձեալ նոյն հեղինակին՝ Das Pañcatantra. Leipzig 1914; Հայերէն թարգմանութիւն մը՝ Bidpai, ճառագայթք արեւելեան, Շուշի 1904, էջք 154։ Գրոցս մասին հմմտ. եւ Հ. Գ. Յովհաննեան, Հետազօտութիւնք նախնեաց մատենագրութեան վրայ. Բ. (Վիեննա 1897), էջ 296–302։

[2] F. Schulthess, Kalila und Dimna, Syrisch und

մահմեդականացած պարսիկ Աբդալլահ իբն ալ Մուքաֆֆա († 762) պահլաւերէն բնագրէն արաբերէն թարգմանութիւն մը տուաւ[1], որ այնուհետեւ Արաբացիներու ամենէն սիրուած ժողովրդական գիրքն եղաւ. ենթարկուեցաւ պէսպէս խմբագրութեանց եւ այս արաբերէնի միջնորդութեամբ անցաւ Ասիոյ եւ Եւրոպայի զանազան ժողովուրդներու, որոնց հետ Արաբացիք շփման մէջ գտնուեցան։ Աշրաքի († 1133) Սինդբադնամէհ (Պատմութիւն Սինդբադի) անուամբ վերածեց զայն արաբերէնէ նոր պարսկերէնի. եւ ԺԳ. դարու վերջերն «Պատմութիւն Եօթն Իմաստասիրաց» կամ «Պատմութիւն Կայսերն Փոնցիանոսի» անուամբ ծանօթացաւ Եւրոպայի լատիներէն[2] թարգմանութեամբ՝ հաւանօրէն Յունաստանի ճամբով։ Լատիներէնի հիման վրայ կատարուեցան յընթացս ԺԳ.—ԺԸ. դարուց նոր թարգմանութիւններ՝ իտալերէն, գաղղիերէն,

Deutsch. Berlin 1911. Այս արաբերէնէ ասորերէնի նոր թարգմանութիւն մ'ալ լոյս տեսած է. Հմմտ. F. Bäthgen, Sindban oder die Sieben weisen Meister, Syrisch und Deutsch. Leipzig 1879.

1 L. Cheikho, La version arabe de Kalila et Dimnah d'après le plus ancien manuscrit arabe daté, Beyrouth 1905.

2 Լատիներէն թարգմանութեան հրատարակման մասին հմմտ. M. A. Mussafia. Beiträge zur Literatur der Sieben weisen Meister. Sitzungsberichte der k. Akademie der Wissenschaften. Phil.-hist. Klasse, Bd. 57 (Wien 1867), S. 37—118. A. Hilka, Historia septem sapientium, II Johannis de Alta Silva Dolopathos sive De rege et septem sapientibus nach den festländischen Handschriften. Heidelberg 1913 8°. S. XIV, 112 (Sammlung mittellateinischer Texte, Bd. V)

գերմաններէն եւ սլաւական[1] լեզուներով[2]։ Լատիններէնէ թարգմանուեցաւ նաեւ Հայերէն ծանօթ բնագիրը, որուն վրայ կ'ուզեմ խօսիլ հոս աւելի մանրամասնօրէն։

Վերջին ծանօթ խմբագրութեան մէջ պատմութեան ծիրն այսպէս կը յածի։

Տեսարանը Հռոմ է։ Փոնցիանոս կայսեր կինը կը ծնանի Դիոկղետիանոս անուն զաւակ մը եւ կը վախճանի. կայսրը թագուհւոյն խորհրդով տղուն դաստիարակութիւնն կը յանձնէ Հռոմայ եօթն իմաստասէրներու, որոնք քաղաքին շրջակայքը կը հաստատեն իրենց մենարանը։ Կայսրը կ'ամուսնանայ երկրորդ անգամ. Նոր ամուսինը կը խորհի մանկան կորուստը. իւր չար խորհուրդը ի գլուխ հանելու համար կը թախանձէ կայսրը, որ որդին անգամ մը տեսութեան հրաւիրէ։ Դիոկղետիանոս այս միջոցին արդէն զարգացած էր հասակով եւ իմաստութեամբ. հմտացած էր մանաւանդ աստղագիտութեան։ Հօրը անակնկալ հրաւէրին վրայ կը դիտէ աստղները, եւ կ'իմանայ որ հրաւէրն չարագուշակ է։ Խորհուրդ կը հարցնէ Եօթն իմաստասէրներուն ։

---

1 Հմմտ. M. Murko, Die Geschichte von den sieben Weisen bei den Slaven. Wien 1890. 8°, S. 138 (Sitzungsberichte der k. Akademie der Wissenschaften, Phil.-hist. Klasse, Bd. 122, Abh. X).

2 Արաբերէնէ յառաջացած թարգմանութեանց եւ խմբագրութեանց մասին Հմմտ. V. Chauvin, Bibliographie des ouvrages arabes ou relatifs aux Arabes II (Lüttich եւ Leipzig 1897). p. 19—80 եւ J. Hertel, Das Pañcatantra Leipzig եւ Berlin 1914, էջ 390—416 եւ Index I.

որոնք սպառնացուած վտանգէն ազատելու համար կը յանձնարարեն հօր արքունիքը եօթը օր խիստ լռութիւն պահել։ Պատանին կ'անսայ եւ կը մեկնի արքունիքէ։ Լռութիւնը կայսեր զարմանքը կը շարժէ. բայց Թագուհին պատանւոյն հետ կ'առանձնանայ իր սենեակը եւ այն տեղ լկտի առաջարկութիւններով զգաստ պատանին մոլորցնել կը փորձէ. սակայն ի զուր. Թագուհւոյն ամէն հրապոյրներն քաջութեամբ կը մերժէ Դիոկղետիանոս. Թագուհին յաղթահարուած իր մեղմեխ խորհրդոց մէջ կը փետէ մազերը, կը պատառէ զգեստները, կը ցեռէ այտերը եւ այնպէս պատառոտուն, արիւնաթաթախ՝ օգնութեան կը կանչէ ամուսինը եւ ոճրագործ կ'ամբաստանէ որդին, իբրեւ թէ զինքը բռնաբարել ուզած ըլլայ։ Թագաւորը կը հաւատայ ամէն ըսուածներուն եւ կը հրամայէ գլխատել Թագաժառանգը։ Կը միջամտին նախարարները եւ կը համոզեն կայսրը, որ առանց քննութեան այնպիսի քայլ չառնու. գլխատումը կը յետաձգուի։ Թագուհին տեսնելով թէ չյաջողեցաւ իր հնարքը՝ գիշերը առակով մը կը համոզէ կայսրը, թէ Թագաժառանգը անպատճառ պէտք է գլխատուի։ Համբաւը տարածուած էր արդէն քաղաքը։ Երբ դահիճները պատանին քաղաքի հրապարակէն կը տանէին սպանման տեղը, կ'ընդառաջէ Եօթն իմաստասէրներէն առաջինը, կը խնդրէ դահիճներէն, որ յապաղեն հրամանին կատարումը, եւ ինքը կը դիմէ կայսեր, պատանւոյն համար միջնորդե-

քու։ Իմաստասէրը կը յաջողի առակով մը համոզել կայսրը, որ ետ կենայ իր խորհրդէն։ Այսպէս եօթը օր եւ եօթը գիշեր տեղի կ'ունենայ մրցութիւն մը թագուհւոյն եւ Եօթը իմաստասէրներու մէջ. առաջինը կը ջանայ ապացուցանել առակներով թէ որչափ հնարագէտ են մարդիկ եւ չարախորհուրդ, եւ վերջիններն՝ թէ քանի անվստահելի են կանայք եւ նենգամիտ։ Դիւրահաւան կայսրը ամէն անգամ կը համոզուի հակառակ կամ՝ ի նպաստ որդւոյն։ Ութերորդ օրը կրնար թագաժառանգն այլ եւս անձամբ պաշտպանել իր դատը. գեղեցիկ առակով մը կը համոզէ իր հայրը, թէ ինքը բոլորովին անմեղ է եւ յայտնանախատ կը խայտառակէ թագուհին, որ իսկոյն կը մերժուի արքունիքէն։ Ներոնի կայսրը գոհունակութեամբ իր թագն եւ իշխանութիւնը կը յանձնէ իմաստուն որդւոյն եւ ինքը կ'առանձնանայ։

Այս ձեւի մէջ տարածուած է Եօթն իմաստասէրներու պատմութիւնս Եւրոպա եւ նոյնպէս թարգմանուած է հայերէնի։

Հայերէն թարգմանութեան մասին Լէօ կը գրէր. «Թէ ե՞րբ է կատարւել այդ թարգմանութիւնը — որոշ յայտնի չէ. գոնէ կայ մի ձեռագիր, որ գրված է 1616 թւին» (Կ'ակնարկուի մեր Թ. 140 ձեռագիրը)։ Բանասիրական մի ուսանելի հարց է՝ եթէ արդեօք հայերը չունէի՞ն այդ վէպի թարգմանութիւնը նախ քան արեւմտեան խմբագրութեան ծանօթանալը,

այսինքն մի թարգմանութիւն որ աւելի հին լինէր, արեւելեան թարգմանութիւններից վերջրած. (Հայկական տպագրութիւն, Ա, էջ 307—308)։ Լէօի անծանօթ մնացած է Պարիսի Թ. 307 ձեռագրին յիշատակարանը, որ հրատարակուած էր Կամենիցի մէջ (էջ 171), որուն համաձայն հայերէն թարգմանութիւնը կատարուած է 1614ին ի Զամոսցա, Յակոբ Թոխաթեցւոյ ձեռքով։ Թէ աւելի հնագոյն թարգմանութիւն մը ունեցած ենք, այս մասին թէեւ հաստատական կարծիքներ յայտնուած են, բայց մենք ստիպուած ենք բացասական պատասխանել։ Grässe ի գիրս Trésor des livres rares, V. գրած էր թէ «Գաղիա եւ Դիմնա գրոց նաեւ հայերէն խմբագրութիւն մը պահուած է», նոյն համարելով սոր հետ Աղուեսագիրքը. բայց ինչպէս Հ. Ղ. Յովնանեան (Հետազօտութիւնք, էջ 301 եւն) գեղեցիկ ապացուցուց, Աղուեսագիրքը թէեւ ի հեռուստ ունի աղերս հնդկական փանչաթանթրայի հետ, սակայն ոչ թէ անոր մէկ խմբագրութեան ուղղակի թարգմանութիւնն ըլլալուն համար, այլ պարզապէս արաբական ազդեցութեամբ հայ գրականութեան մէջ մուտ գտած ցրիւ հեքեր միայն կ'ամփոփէ իր մէջ։ Նոյնպէս Քարամեան հաղորդած էր Գ. Միւլլէրի, թէ գոյութիւն ունի հայ գրականութեան մէջ նոյն գրոց ասորերէնէ կատարուած թարգմանութիւն մը (Müller, էջ 216). բայց ինչպէս Chauvin ուղիղ գրած է (p. XXIX), ցայժմ չէ յայտնուած այսպիսի

թարգմանութիւն մը, որուն գոյութիւնն մենք շատ անհաւանական կը համարինք։

Հնագոյն թարգմանութեան մը մասին ակնարկութիւն ըրած է նաեւ Ա. Չօպանեան իւր Les Trouvères armeniens (Paris 1906) աշխատութեան մէջ (էջ 137), ուր խօսելով Առաքել Բաղիշեցւոյ վրայ, "տաղաչափեց, կ'ըսէ, Յովասափի պատմութիւնն եւ Եօթն իմաստասիրաց պատմութիւնը, երկու հին գրքեր, որոնց թարգմանութիւնն կը գտնուի արեւելեան շատ մը լեզուներով": Չօպանեանի այս տողերը իրրեւ իրողութիւն ընդունած է V. Chauvin (p. XXX)։ Maclerի մէկ ծանօթութենէն կը տեղեկանանք թէ ենթադրութիւնս հիմնուած է Հ. Մ. Պոտուրեանի մէկ տեղեկութեան վրայ, զոր հաղորդած է 1907 Հոկտեմբերին Չօպանեանի։ Պոտուրեան կը գրէ. "Ունիմ Օքսֆորդի մէկ ձեռագրին յիշատակարանը, որուն համաձայն Առաքել Բաղիշեցի կը վկայէ թէ ինքը տաղաչափած է 1434ին Եօթն իմաստասիրաց պատմութիւնը"։ Բաղիշեցւոյ այս յիշատակարանն այս տրամադրած է Պոտուրեան Maclerի, որ զայն յառաջ կը բերէ գաղղիերէն թարգմանութեամբ (p. XXX, ծան. 1)։ Օքսֆորդի ձեռագրաց ցուցակն ունինք այժմ (հմտ. Baronian-Conybeare, Catalogue of the Armenian Manuscripts in the Bodlean Library, Oxford 1918). ակնարկուած ձեռագիրն է թ. 38 (Catalogue, p. 79—80), ուր կայ արդեամբք յիշեալ յիշատակարանը, բայց ոչ թէ Եօթն

իմաստասիրաց պատմութեան վերջը, այլ կը վերաբերի Յովսափ Թագաւորի Պատմութեան, զոր տաղաչափած է Առաքել Բաղիշեցի 1434ին։ Ուստի հին չկայ Բաղիշեցւոյ այսպիսի գրուածք մը վերագրելու։

Եօթն իմաստասիրաց Պատմութեան Հայերէն մէկ թարգմանութիւն ծանօթ է տոհմային մատենագրութեան մէջ, եւ այն կատարուած է 1614ին Յակոբ Թոխաթեցւոյ ձեռքով։

Հայերէն թարգմանութիւնս կատարուած է լատին ակզբնագրի մը վրայէն, ինչպէս զայս թարգմանիչն ալ կը խոստովանի[1]։ Դժուարին է սակայն մատնանշել այն օրինակն, որ թարգմանութեանս հիմ ծառայած է։ V. Chauvin հակամէտ չէ Թոխաթեցւոյ ձեռքը լատիներէն ձեռագիր մը տեսնելու (La version arménienne, p. XVIII)։ Հաւանականագոյնս տպագիր օրինակ մը ունեցած ըլլալու է հայ թարգմանիչը. բայց այս տպագիրը տարբեր խմբի մը ներկայացուցիչն եղած ըլլալու է քան որ ծանօթ հնագոյն (Incunabel) եւ հին տպագիրներն կ'ընծայեն. գոնէ ցայժմ ծանօթ տպագրութիւնք աննման են հայուն մանրամասնութեանց մէջ։ Բայց դարձեալ սովորական՝ Mussafiaէն Amatores կոչուած խմբագրութեան կը պատկանի։

---

1 G. Paris (Deux Rédactions du Roman des Sept Sages de Rome, Paris 1876, էջ XLI) զուր տեղ գաղղիերէն թարգմանութիւնն հիմ առնել կ'ուզէ. V. Chauvinի ապացոյցներն այս խնդրին կը լուծեն վերջնականապէս (La version arménienne, p. XIV—XVII)։

Որովհետեւ լեհերէն թարգմանութիւնն, որ կատարուած է ԺԶ. դարու առաջին քառորդին Jan z Koszyczek լեհ մատենագրէն, հայուն շատ մերձաւոր լատիներէն սկզբնագիր մը կ'են-թադրէ, ինծի կ'երեւայ թէ Լեհաստան լատի-ներէն նորօրինակ խմբագրութիւն մը գոյութիւն ունեցած է ԺԶ.—ԺԷ. դարուն, եւ նոյնը հիմ եւ աղբիւր ծառայած է կրկին թարգմանութեանց ալ։ Ուշադրութեան արժանի է այս կողմանէ այն պարագան որ լեհերէն թարգմանութիւնն թէեւ ԺԶ. դարու առաջին քառորդէն կը հա-մարուի եւ նոյնը մինչեւ անգամ նոյն դարուն տպագրութեամբ հրապարակ հանուած, բայց ցայսօր հրապարակի վրայ եղած հնագոյն տպա-գրութիւնն ԺԷ. դարէն է, զոր Murko լեհերէն առաջին տպագրութիւնը կը համարի, ուրեմն հայերէն թարգմանութեան ժամանակակից։

Հայուն եւ լեհին մերձաւորութեան հա-մար բաց ի մանր կէտերէ շատ նկարագրական է պարագայ մը, որ զիրենք բոլորովին կը կղզեաց-նէ լատիներէն եւ անկէ ծագած նոր լեզուներով ծանօթ բոլոր ձեռագիր եւ տպագիր օրինակ-ներու մէջ։ Այս հատուածը կը գտնուի Ներա-ծութեան մէջ, ուր կը պատմուի թէ թագա-ժառանգը աղջիկներն դիտելէն եւ իմաստասի-րաց խրատն լսելէ ետքը կը ննջէ եւ երազ մը կը տեսնէ։ Այս Երազը եւ անոր մեկնութիւնը, որ հայերէնի եւ լեհերէնի (եւ անկէ ծագած ռուսերէնի) հասարակաց է, լատիներէն ձեռա-գիր եւ տպագիր օրինակներուն անծանօթ են.

բայց այն գոյութիւն ունենալու էր հայ եւ լեհ թարգմանիչներու լատին աղբիւրին մէջ, որովհետեւ կը գտնուի լատիններէն հնագոյն ձեւի խմբագրութեանց մէջ (հմմտ. Mussafia, անդ, էջ 86)։ Ուշագրաւ է հայուն եւ լեհին համեմատն բնագիր ենթադրելուն համար ի մէջ այլոց նաեւ հետեւեալ օրինակը. թ. 286. թղ. 20բ (= գաղղ. էջ 43) կ'ըսուի. "մարմին իմ թաղեցէք յեկեղեցւոջ սրբոյն Վաւրէնի (այսպէս նաեւ թ. 140, թղ. 52ա. պարիսի թ. 307 ունի. Վաւրենտինի) = լեհն Wawrzyńca = լատ. հնագոյնք՝ S. Petri, Strassburgի 1512ի տպ. In ecclesia sancti Laurentii.

Կան ի հարկէ նաեւ կէտեր, ուր հայն եւ լեհն կը խոտորին իրարմէ, յատկապէս ուր լեհ թարգմանիչն իր անձին ազատութիւններ կու տայ, այսպէս ուր հայն համաձայն լատինին կը թարգմանէ (թ. 286, թղ. 25բ = p. 43) "ի քաղաքի միում„, լեհն կը մասնաւորէ տեղն "ի քաղաքի Tyronie„ (Torynie). այսպէս նաեւ այլուր։ Կան տեղեր ալ ուր լեհն եւ լատ. 1512ի տպագիրն նոյն կ'ընթանան եւ հայն կը շեղի. ի հարկէ ցանցառ անգամ (հմմտ. թ. 286, 77բ, գաղղ. p. 172 Տիւրոս = լատ. 1512 եւ լեհ. Cyrus, իսկ լատ. հնագոյնն՝ Titus.) Բայց առ հասարակ ինչպէս լեհերէնն, նոյնպէս հայերէնն շատ մերձ է Strassburgի 1512ի տպագրութեան։

Աւելորդ կը համարիմ մանր համեմատութիւններ։

Հայ թարգմանիչը հաւատարիմ մնալով հանդերձ բնագրին՝ տուած է ընտիր թարգմանութիւն մը, ախորժ ժողովրդական ճաշակին, գրաբարախառն ռամկօրէնով։ Տեղիս տեղիս շնորհած է իրեն թեթեւ ազատութիւններ ալ, ուր նիւթը կը վերցնէր, բայց ընդհանուրն հետեւած է քայլ առ քայլ լատիններէն սկզբնագրին։

Հայերէն թարգմանութեանս, որուն հարազատ ներկայացուցիչներն են ի բաց առեալ Պարիսի Թ. 309՝ բոլոր ձեռագիր օրինակները (տես վարը), ենթարկուած է ապա նոր խմբագրութեան եւ այս խմբագրուած օրինակն հիմ առնուած է տպագրութեան։ Նոր խմբագրութեանս ինձի ծանօթ միակ ձեռագիր օրինակն է Պարիսի Թ. 309, օրինակուած ՌՃԽԵ (1696) թուին, Նոյեմբեր 27ին Կ. Պոլիս (ձեռագրին միւս մասերն 1682—1696 շրջանին). այս ինքն ճիշդ այն թուին, երբ լոյս տեսաւ Լիվոռնոյի առաջին տպագրութիւնը։ Այս խմբին կը վերաբերի ըստ երեւութին նաեւ այն օրինակն, որ կ'ըսուի թէ գրուած է 1687ին Սպահան, որուն վրայէն կատարուած է 1847ին ռուսերէն թարգմանութիւնը (տես վարը)։

Պարիսի Թ. 309 օրինակին սկզբնաւորութիւնն նման է տպագիրներու սկզբնաւորութեան. եւ կ'ենթադրեմ որ նաեւ բովանդակութեան մէջ կը համընթանայ տպագիրներուն։ Հոս խորագիրն եւ սկզբնաւորութիւնն է՝ նման տպագիրներու. «Պատմութիւն կայսերն փոն-

ցիանոսի եւ կնոջն եւ որդւոյն Դիոկղետիանոսի եւ եօթն իմաստասիրացն։ — Կայր ի Հռոմ թագաւոր մի եւ անուն նորա Մօղօլոս կայսր . . .„։

Զգալի փոփոխութիւնն տեղի ունեցած է գլխաւորաբար ներածութեան մէջ, ուր Հռոմայ կայսեր անունն, զոր լատին օրինակները կը լռեն, Մօղօլոս կը կոչուի, եւ Փոնցիանոս իբրեւ ստրատելատ Մօղօլոս կայսեր՝ գահ կը բարձրանայ. այլուր ընդլայնուած են միայն խօսակցութիւնները եւ լեզուն այլայլուած. Թոխաթեցւոյ թարգմանութիւնն էական մասով նոյն պահուած է։

Թէ ո՞վ է փոփոխութեան ենթարկողն կամ "սրբագրողը„, Պարիսի Թ. 309 ակնարկութիւն չ՚ըներ. ուր ընդհակառակն պահուած է մինչեւ անգամ Թոխաթեցւոյ յիշատակարանը։ Չեմ յուսար թէ այսպիսի սրբագրութիւն մ՚ակնարկել ուզուած ըլլայ Լիվոռնոյի 1696 թուի տպագրին յիշատակարանին մէջ, ուր (էջ 184) կ՚ըսուի, թէ տպագրութիւնն ի գլուխ ելած է "հօգաբարձութեամբ, ծախիւք եւ սրբագրութեամբ Նուաստի ումեմն։ Մ. Ս. Դ.„։ Այս նկատմամբ հետաքրքրական էր ծանօթանալ Կ. Պոլսոյ 1693ի տպագրութեան. այն տեղ ալ այս փոփոխուած բնագիրն հիմ առնուած է եւ նոյնն արդեօք աչքի առջեւ ունեցած է Պարիսի Թ. 309ի ընդօրինակողը։

Կը սխալի Քարամեանց, երբ կը գրէ Բեռլինի Թ. 83 ձեռագրի մասին (Verzeichnis, էջ 65), թէ "այս խմբագրութիւնն պատմու-

*թեանց մէջ նման է լատին խմբագրութեան, բայց առակները բոլորովին տարբեր են անկէ։ Եօթն իմաստասէրներու անուններն եւ առակները կը համաձայնին գաղղիերէն խմբագրութեան. Հմմտ.* Keller, Romans des Sept Sages, *էջ* L, 1„: *Աւելի կը հետեւցնէ* Chauvin *կասկածելով ("եթէ Քարամեանց լաւ միտ դրած է„) թէ Բեռլինի օրինակը կը համապատասխանէ* Mussafia*ի զանազանած Բ. խմբին* (p. XXIV)։ *Բայց Բեռլինի օրինակը նման կը տեսնուի Պարիսի Թ.* 307 *ին, գոնէ նոյն է սկզբնաւորութիւնը։*

*Եօթն իմաստասիրաց պատմութիւնը այսպէս նաեւ հայ գրականութեան մէջ մուտ գտաւ, արտագրուեցաւ եւ փոփոխուեցաւ եւ Հայաստանի վրայէն շարունակեց իր ճամբան օտարաշուրթն ազգերու.* 1803*ին թարգմանուեցաւ նախ Հայատառ, ապա նաեւ արաբատառ տաճկերէնի,* 1847*ին ռուսերէնի եւ* 1919*ին գաղղիերէնի։*

*Տեսնենք այժմ ձեռագիրներն, տպագրութիւններն եւ թարգմանութիւնները։ Խորագիրն է լաւագոյն ձեռագիրներու մէջ.*

*"Պատմութիւն Եօթն իմաստասիրացն. Այր մի որում անուն էր Փոնցիանոս՝ թագաւորեաց ի Հռոմ քաղաքի, այր իմաստուն յոյժ, որ առեալ էր զդուստր արքային Հռոմայ ի կնութեան, գեղեցիկ յոյժ եւ հաճոյ մարդկան աչաց հայելոյ...„*

Յիշատակարանն է ըստ Պարիսի Թ. 307 Ձեռագրին. «Ես Յակոբ երէցս Թոխաթեցի, որ եմ թոռանց Բաթուկենց, թարգմանեցի զգեղեցիկ պատմութիւնս ի լատինական գրոց ի Հայ գիր. ի խնդրոյ վարժապետին իմոյ Թոխաթցի տէր Յակոբին՝ որ անէն Ալվաթենց. թվին ՌԿԳ (1614) փետրվար ամսոյ ԺԳ. ի յերկիրն Լեհաց, ի քաղաքն Զամաւսցա. Աղաչեմ զձեզ, յորժամ որ փոխարկէք, զանուն մեր մի յապաղէք գրել ի տեղիս խորագրոյ. եւ ասացէք թէ Աստուած ողորմի. ամէն[1]»։

Պարիսի Թ. 309 ունի հոս. «Թարգմանեալ եղեւ պատմութիւնս օգտակար եւ շահաւէտ, որ կոչի Եօթն իմաստասիրաց ի լատինական լեզուէ առ ի Հայ լեզու ի խնդրոյ վարժապետին իմոյ Թոխաթցի տէր Յակոբին, ի յերկիրն Խլախաց որ կոչի Զամոսչայ ի թուականիս Հայոց ՌԿԳ»։

Միւս օրինակները զանց ըրած են այս յիշատակարանը։

Ծանօթ են հետեւեալ ձեռագիրները.

1. Պարիսի Ազգային Մատենադարանի Ancien fonds arménien 69 = Macler, Catalogue des manuscrits arméniens et géorgiens de la Bibliothèque nationale (Paris 1908), No. 307, Թղ. 115ա—225բ (ԺԷ դար, p. 159)։ — 2. Նոյ., Supplément ar-

---

[1] Հրա. Կամենից. էջ 171. Պարիսի օրինակի վրայէն, բայց անճշդութեամբ. ուղղեցինք Տէր-Մովսէսեան Ցուցակի համաձայն. հմմտ. եւ Macler, La version arm., p. 216—217։

ménien 51 = Macler, No. 309, թղ. 102բ—258բ (յամ 1696. p. 160)։ — 3. Մեր մատենադարանի թ. 140. թղ. 42բ—114բ (ընդ մէջ թղ. 43բ—44ա թուղթ մ'ինկած. մանրամասն ցուցակագրութ.՝ Տաշեան, Ցուցակ, էջ 438. յամ 1616[1])։ — 4. Անդ, թ. 286, թղ. 1ա—95բ (ԺԷ. դար. Ցուցակ, էջ 711)։ — 5. Բեռլինի Թագաւորական Մատենադարանի թ. 83, թղ. 26բ—206բ. (յամ 1698, պակասաւոր, Karamianz, Verzeichnis . . . , p. 65)։ — 6. Օքսֆորդի Բոդլէյեան Մատենադարանի Ms. Canonici Or. 131, թղ. 37ա = Baronian-Conybeare, Catalogue of the Armenian Manuscripts in the Bodleian Library (Oxford 1918), No. 38 (յամ 1697, p. 79)։ — 7. Անդ, Ms. Arm. e. 33 = Baronian-Conybeare, No. 99 (յամ 1698, p. 220—221)։ — 8. Վենետիկի Մխիթ. Մատենադարանի թ. 628, էջ 282 (ԺԷ. դարէ[2], Հմմտ. Macler, La version arm., p. XXI, ծան. 1)։

Բազմաթիւ տպագրութիւն տեսած է Պատմութիւնս.

1. Առաջին տպագրութիւնն եղած է Կ. Պոլիս 1693ին, առկէ օրինակ մը կը գտնուի Երուսաղէմ՝ Ս. Յակոբեանց վանքը ըստ Հ. Գ.

[1] Յիշատակարանն ի կատարածին՝ «Կատարեցաւ պատմութիւն եօթն իմաստասիրացն թվ. ՌԿԵ Հոկտեմբերի ամսոյ Զ. ի մայրաքաղաքս Կամենից ի դուռն Ս. Աստուածածնայ Ս. Անեանն և Ս. Նիկողայոսի»։

[2] E. Teza, Il libro dei Setti Savi.

Գալէմքեարեանի։ Մանրամասնութիւն անծանօթ է։

2. 1696 ի Լիվոռնոյ. «Գիրք պատմութեան կայսերն Փոնցիանոսի եւ կնոջն եւ որդւոյն Դիոկղետիանոսի եւ յ՚եօթանց իմաստասիրաց։ Տպագրեալ ի ներապարանում սրբոյ Էջմիածնի եւ սրբոյն Սարգսի զօրաւարի։ Ի Հայրապետութեան Տեառն Նահապետի ամենից Հայոց կաթուղիկոսի ի Լիկօռնայ քաղաքի։ Թուոյ Փրկչին 1696 եւ Հայոց 1145 Մայիսի 25։»

Մեծութիւնն 12×7·5 սմ., էջ 1—184 (էջ 1 ճակատ, էջ 3—181 բնագիր, էջ 181—184 «Ցանկ գրգկանս»), էջ 184 կայ Յիշատակարանս. «Աւարտեցաւ գրգուկս պատմութեան... ի վայելումն հանուրց արամազնեաց եղբարց, յամի ներմարմնութեան Տեառն 1696 եւ Հայոց 1145 Յուլիսի 20։ ...Համահաճութեամբ Տեառն Եփրեմի արհիեպիսկոպոսի եւ պատրիարքի Կ. Պօլսոյ, հոգաբարձութեամբ, ծախիւք եւ սրբագրութեամբ նուաստի ումեմն Մ. Ա. Դ.»։ — Ունինք օրինակ մը մեր Մատենադարանին մէջ. Հմմտ. եւ Մատենագիտութիւն, էջ 564։

3. 1721 Կ. Պօլիս. «Գիրք պատմութեան կայսերն Փոնցիանոսի եւ կնոջն եւ որդւոյն Դիոկղետիանոսի, եւ յեօթանց իմաստասիրաց. եւ վիճակս նորատիպ եւ որ ի միջի սորին եղաք։ Տպագրեցեալ բարեխօսութեամբ սրբոյն Մինասայ զօրավարին մայրաքաղաքն Ստամպօլ։ Ի

տպարանի տրուպ Աստուածատուրի որ եմ ծառայ ձեր. ի թւոջ ՌՃՀ, օգոստոս Է,,։

Զարբհանելեան՝ Մատենագիտութիւն, էջ 564.

4. 1740 Կ. Պոլիս. Գիրք պատմութեան կայսերն փոնցիանոսի եւ կնոջն թագուհւոյ եւ որդւոյ նորին Դիոկղետիանոսի եւ եօթանց իմաստասիրաց։ Տպագրեալ ի թուականիս մերոյ Հայոց 1189 (= 1740).

Մեծութիւնն 12·5 × 7·6 շրջանակի մէջ. էջ 1—328 (էջ 1 ճակատ. էջ 2, պատկեր. էջ 3—287 պատմութիւն կայսերն փոնցիանոսի. էջ 288—315 բանք իմաստասիրաց. էջ 316—327 Աստեղատունք)։ Էջ 328 Յիշատակարան. "Աւարտեցաւ տպումս պատմութեան գրքուկիս այսորիկ որ կոչի եօթն իմաստասէր... ի թուականիս 1190 (= 1741)։ Արդ... յիշեսջիք զպատճառ տպեցման սորին զգրավաճառ արդրումեցի եղբայր Մանուկն...,,։

Հմմտ. Մատենագիտութիւն, էջ 564—565։ Կան օրինակներ մեր Մատենադարանի մէջ (պակասաւոր) եւ Ընտանեան Հարց Մատենադարանի մէջ ի Կ. Պոլիս։

5. Կ. Պոլիս 1743, ի տպարանի Աստուածատրոյ։ Կը յիշէ Զարբհանելեան՝ Պատմ. հայկ. տպագրութեան, էջ 270. ուրիշ կողմանէ անծանօթ։

6. 1790. Մադրաս։ "Գիրք պատմութեան կայսերն փոնցիանոսի, եւ կնոջն թա-

գուհւոյ եւ որդւոյ նորին Դիոկղետիանոսի եւ Եօթանց իմաստասիրաց։ Եւ վերստին տպագրեցեալ ծախիւք եւ տպիւք Տէր Յարութիւն Շմաւոն Շիրազեցւոյ։ Առ ի օգուտ պատուելի ազգիս Հայոց։ Ի Հայրապետութեան լուսանկար մօրն մերոյ Սրբոյ Աթոռոյն Էջմիածնի՝ Տեառն Ղուկասու Սրբազնասուրբ կաթուղիկոսի ամենայն Հայոց։ Ի Յառաջնորդութեան Նոր Ջուղայու երկնանման Աթոռոյն Տեառն Յակոբ արհի եպիսկոպոսի։ Յամի մարդեղութեան բանին 1790, իսկ ի թուին Հայոց 1239 Մադրաս ի տպարանի նոյն Տէր Յարութիւն Շմաւոն Շիրազեցւոյ։

Էջ 1—382 (էջ 1 ճակատ. էջ 2—335 պատմութիւնն, էջ 336—378 վիճակ). էջ 379—382 Յիշատակարան. «Առ բարեսէր ընթերցողդ. Շնորհիւ Աստուծոյ յանկ ելեալ աւարտեցաւ տպումն պատմութեան գրքուկիս այսորիկ որ կոչի Եօթն իմաստասէր... Այս է երրորդ տպագրութիւն.»։

Սոյն օրինակ մը Տ. Եպիսկոպոս Պալեան, որ ընդարձակ նկարագրած է Հանդ. Ամս. 1895, էջ 116—117. Յիշատակարանին վերջին տողին համար կը գրէ Պալեան. «Կրնա՞նք հասկնալ թէ այն գիրքն Մադրասայ մէջ երեք անգամ տպագրուած է, թէ ո՞չ՝ Լիվոռնոյի եւ Կ. Պոլսոյ տպագրութիւնն առեալ եւ ասոր ալ երրորդ տպագրութիւն ըսած է»։ Մենք կը կարծենք թէ Յարութիւն Շիրազեցի հոս իւր նոր բացուած տպարանին երրորդ հրատարակութիւնը կ'ակ-

նարկէ։ Շիրազեցի իր հրատարակութեան կատարած է Կ. Պոլսոյ 1740ի տպագրութեան վրայէն, որուն խորագիրն եւ յիշատակարանին սկզբնաւորութիւնը պահած է։ Ամբողջ այս տպագրութիւնն է նաեւ Զարբ. Պատմ. Տպագր., էջ 280 յիշատակած Մադրասի 1791ի հրատարակութիւնը, նոյն տպարանին մէջ։

7. 1792, Կ. Պոլիս։ Գիրք պատմութեան կայսերն փոնցիանոսի եւ կնոջն թագուհւոյ, եւ որդւոյ նորին Գիոկղետիանոսի, եւ Եօթանց իմաստասիրաց։ Տպագրեցեալ ... վեհափառ հրամանաւ.... Տեառն Զաքարիայ պատրիարգի. ի թուին Հայոց ՌՄԽԱ. Ապրիլի ԺԲ։ Ի տպարանի Յօհաննիսի եւ Պօղոսի։

Մեծութիւն 12·3×7·5 սմ. շրջանակի մէջ։ էջ 1—328 (բնագիրն, էջ 3—287)։ Օրինակ մը կը գտնուի մեր Մատենադարանին մէջ։

8. 1796, Կ. Պոլիս։ Կը յիշէ զայս Հ. Գ. Գալէմքեարեան, նշանակելով նաեւ թէ ունի 328 էջ, նման 1792ի տպագրութեան։

9. 1804, Կ. Պոլիս։ Գիրք պատմութեան կայսերն փոնցիանոսի... (= 1792ի տպ.) Տպագրեցեալ վեհափառ հրամանաւ... Տեառն Յօհաննու... քարոզնապետին, յամի Տեառն 1804 եւ ի թուին Հայոց՝ ՌՄԾԳ. ի տպարանի Յօհաննիսեան Պօղոսի։

Մեծութիւն՝ փոքր 8°, էջ 1—328 (բնագիրն, էջ 1—287)։ Օրինակ մը կը գտնուի մեր Մատենադարանին մէջ։

10. 1857, Տփղիս։ Պատմութիւն կայսերն փոնցիանոսի... Թիֆլիս, Հրատ. Գուլամիրեան գրատան, 1857։ Այս հրատարակութիւնն ըլլալու է Ն. Մատաթեանի ունեցած օրինակը (ճակատը ինկած)։ Մատաթեան յառաջ կը բերէ Յառաջաբանը ուր կ'ըսուի.« ...ըստ այսմ եւ ես նկատեալ զայս գիրք փոնցիանոսի կայսեր գիւրիմաց եւ պարզաբան, շարադրեալ ի վաղ ժամանակաց հետէ պատմագրական ոճով, որ առ սակաւութեան եղեալ է կարի յոյժ (ապ. ժոյժ) հազուագիւտ, վասն որոյ համարելով զայս օգտակար ինչ՝ նորոգ սրբագրութեամբ ի լոյս ընծայեցի ի պէտս գեղահասակ մանկանց ազգիս մերոյ իբրու աղայոց կաթն ջամբելով եւ ոչ կատարելոց հաստատուն կերակուր, զի ընթեռնլով ուսցին եւ ուսանելով զուարճասցին, եւ այնու առաւել եւս խրախուսեսցին յօժարական աշխատել կատարելագործել զինքեանս երեւելի ուսմամբք եւ բարեբարոյութեամբ ի լուսաւորութիւն ազգիս մերոյ եւ հայրենեաց։ Նուաստ ծառայ Թիֆլիզաբնակ Կոստանդնուպոլսեցի Ղազարոս քահանայ պալի Գալֆայեան Տէր-Պետրոսեանց։ (Հմմտ. Հանդ. Ամս. 1891, էջ 105 «Դիտողութիւն մը»)։

Հայերէնէ թարգմանուած է նաեւ տաճկերէնի եւ հայատառ տաճկերէն հրատարակուած.

1. 1803, Կ. Պոլիս. «Պատմութիւն փոնցիանոս կայսերին, վէ Թագուհի Սուլթանըն վէ

Եվլառի Դիոկղետիանոս շահ զատէնին, վէ նէտի իլիմաար քիմէանէլէրին ...»։ Մասնաւոր ճակատ չունի (այսպէս գոնէ մեր օրինակներուն մէջ), էջք 1—222 (էջ 1—175 բնագիրն, էջ 176 եւն վիճակացոյց)։ Էջ 218—222 կայ առանաւոր գրուածք մը «Նահապետ Մեվլուտի Քայսէրիյէ» սկզբնատառերով, ուր կ'ըսուի թէ 1803 թուին թարգմանած է զայն ի Կ. Պոլիս Նահապետ Թէրզեան կեսարացի (էջ 222 զարդի մէջ կայ «Նահապետ» որ ուրիշ օրինակի մը մէջ կը պակսի՝ փոխարէն գրուած ըլլալով ուրիշ զարդ մը)։

2. 1881, Կ. Պոլիս։ «Սոյն Գրքի (Պատմ. Եօթն իմաստասիրաց) հայատառ տաճկաբարբառ տպագրութեան առաջինն տեսած չենք, բայց երկրորդն մեր ձեռքի տակն է, որ տպագրուած է 1881 ին Կ. Պոլիս Գավաֆեան տպարանի մէջ. Կը բաղկանայ 110 էջերէ. վերջին կողմն կցուած է բախտի ցուցակ մը կամ վիճակացոյց։ Գրքիս սկիզբն ազդ մը գրուած է, որմէ կը հասկնանք առաջին տպագրութիւն մըն ալ ունենալն։ Ազդն է հետեւեալն. «Իշպու Եէտի Ալիմլէրին բէսալէսի պու տէֆա կէրէք լիսանը վէ կէրէք պազը... թապիր ու իֆատէլէրի թասհիհ օլունարագ նէնիտէն թապ օլունտու»։ Տ. Վ. Պալեան, Արեւ. Մամուլ 1896, էջ 591—592։

3. 1912, Կ. Պոլիս։ Եէտի ալիմլէր վէ Քօնցիանոս փատիշահըն հիքեայէսի։ Տէրսաատէթ, Աշճեան քիւթիւպխանէսի, 1912, 8°,

էջ 132 (բնագիրն, էջ 1—93)։ Նոր թարգմանութիւն։ Օրինակ մը կը գտնուի մեր Մատենադարանին մէջ։

4. Կ'երեւայ թէ Հայատառ տաճկերէն այլ նաեւ արաբական տառերով գրուած եւ հրատարակուած է. E. Teza ունեցած է անկէ օրինակ մը („una ne ho io in lettere arabiche", հմմտ. Macler, La version arm., p. XXIX, ծն. 2)։

5. Lerch կը ծանուցանէ թէ "Եօթն իմաստասիրաց" հայ բնագրի մը ռուսերէն թարգմանութիւնն երեւցած է 1847ին ի Մոսկուա։ Ռուս թարգմանիչն D. Serebriakov իւր թարգմանութիւնն ըրած է ձեռագրէ մը, որ 1687ին Սուլէյման Շահի ժամանակ (1666—1694) Սպահան գրուած է։

6. Եօթն իմաստասիրաց պատմութեան հայերէն բնագրին գաղղիերէն թարգմանութիւն մը լոյս տեսաւ վերջերս.

La version arménienne de l'histoire des sept sages de Rome, mise en français par Frédéric Macler. Introduction par Victor Chauvin. Paris, E. Leroux, 1919, 8°, p. XXXII, 220 (Petite Bibliothèque arménienne, t. IX). Թարգմանութիւնն կատարուած է Պարիսի Ազգ. Մատ. Թ. 307 ձեռագրի վրայէն։ Մատենախօսութիւն մը Հրատարակութեան առթիւ Մեղու Շիրակայ, Բ.ԶՄ., 1919, էջ 77—78։

Հայերէն թարգմանութեան վրայ յաճախ խօսուած է. կը յիշենք հոս մեզի ծանօթ քննութիւնները։

1. P. Lerch, Ueber eine armenische Bearbeitung der „Sieben weisen Meister“ ի գիրս Benfey, Orient und Occident, t. II (1863), էջ 369—374։

2. Friedrich Müller, Ueber die armenische Bearbeitung der „Sieben weisen Meister“ ի թերթին Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes, IV (1890), էջ 213—316 եւ 357, հմմտ. նոյնն քաղուածաբար՝ Հ. Յ. Տաշեան՝ Հայերէն թարգմանութիւն «Գրոց իմաստասիրաց»։ Հանդ. Ամս. 1891, էջ 37—38։

3. E. Teza, Il libro dei Setti Savi nella letteratura armena. Osservazioni ի գիրս՝ Atti del Reale Istituto Veneto di Science, lettere ed arti, հտր. LXV (1905—1906), Բ. Բաժանմունք, էջ 383—397։

4. Տ. Վ. Դայեան՝ Հայերէն հին տպագրութիւնք. «Եօթն իմաստասէրք»։ Արեւելեան Մամուլ 1896, էջ 591—592։

5. Տ. Վ. Դայեան՝ [Եօթն իմաստասիրաց Մադրասի 1790 ի տպագրութեան մասին] Հանդ. Ամս. 1895, էջ 116—117։

6. Լէօ՝ Հայկական տպագրութիւն. հտր. Ա. (Թիֆլիս 1901), էջ 306—316։

*Թէ ունի՞ Յակոբ Թոխաթեցի ուրիշ թարգմանութիւններ ալ, առ այժմ անյայտ կը մնայ։ Իւր գրական արտադրութիւններն առանց անոր ալ բաւական են հոյակապ ընծայելու իւր անունը. եւ Յակոբ պէտք է յարգութեամբ յիշուիլ մեր դարու հայ գրականութեան պատմութեան մէջ։*



## Ե.

## ՂԱԶԱՐ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԹՈԽԱԹԵՑԻ

1550—1610

Ղազար կը վերաբերի այն տաղասացներու շարքին, որոնց թշուառութիւնը լեզու տուած է՝ հեռու հայրենիքէն, գաղթականութեան մէջ հայրենի աշխարհն ողբալու։ Ինչպէս Ստեփանոս եւ Յակոբ Թոխաթեցիները, նոյնպէս անոնց համշիրակն Ղազար առաջին անգամ՝ օտար երկրի տակ կը ծանօթանայ մեզի, սա «ի մայրաքաղաքն կամենից՝ յերկիրն Ըռուզաց եւ Իլախաց»։

Ծննդեան թուականն (1550*) անստոյգ կը մնայ. բայց ծնած է Թոխաթ, ինչպէս կ'երեւայ՝ Ս. Քառասնից թաղը, ուր թաղուած են իր ծնողք 1602էն յառաջ. «Գովասանք ի վերայ Թոխաթ քաղաքի» տաղին մէջ կը գրէ այս նկատմամբ.

Մեր ննջեցեալքն Թոխաթ հանգած,
Սուրբ Քառասնից թաղըն պառկած։

Հոս հաւանօրէն անցուց Ղազար իր երիտասարդութիւնն ալ. յամենայն դէպս Թոխաթ թէ իբրեւ հայրենիք եւ թէ իբրեւ վայելուչ, վաճառաշահ եւ փարթամ քաղաք մեծ ազդեցութիւն գոր-

ծած է Ղազարի վրայ, որ զայն իւր յիշեալ Գովասանքի մէջ “Փոքր Ստամբոլ„ կ'անուանէ, ուր անթիւ “վաճառականներ„ կ'երթեւեկին, “բերեն բեռներ, երկիր խնդայ„։

Մինչեւ 1602 իւր կեանքն թաքուն կը մնայ մեզ[1]։ Ղազար կ'երեւայ թէ ականատես եղած է Թոխաթի 1602, Մայիս 29ի հարուածին, որով քարուքանդ եղաւ քաղաքը, զայս կ'ակնարկէ ինքը իւր Ողբին մէջ.

Եւդոկիա բերդըդ գոված,
Քաղաքըդ քո չէր պարըսպած,
Որ մեր չարեացն եկ քեզ հարուած,
Թախարընեցար աւազակաց։

“Աւազակներուս„ գերող գերիող արշաւանքներէն մազապուր փախստական կը հասնի Ղազար մինչեւ Ակրանիոյ Նազլուվցա քաղաքը, աչքը յեռ դէպի հայրենիք։ Իւր Ողբին մէջ արձանագրած է այս մասին սրտաճմլիկ տողերս.

[1] Ձեռագիր մը՝ Ներսիսի Շնորհալւոյ Մեկնութիւն Մատթէի, որ այժմ Օքսֆորդի Բոդլէան Մատենադարանը կը գտնուի (Թ. 80, հմմտ. Baronian-Conybeare, Catalogue, էջ 180) կ'ըսուի թէ ընդօրինակած է “Ղազար Թոխաթցի ի դուռն Ս. Ստեփանոսի որ կոչի Ջահընկալ, ի պէտս իւր ուսուցչին՝ Սարգիս վարժապետին. դժբախտաբար Ձեռագրին ոչ գրչութեան թուականը յայտնի է (Պարոնեան ԺԷ դարէ կը համարի) եւ ո՛չ քաղաքը, որով դժուարին է նոյնացնելու համար կռուան մը գտնել։ Ինձի ծանօթ է այս չըլլանէն ուրիշ Ղազար Եւդոկիացի աբեղայ մ'ալ, որ 1598ին ի Քօթայ (Քէօթահիա) ի խնդրոյ Ստեփանոս քահանայի Աւետարան մը կ'օրինակէ. հմմտ. Բիւզանդիոն 1897, Թ. 350։

Ղազար գերի մեղաց գմբած ,
Պանդուխտ եղար մէջ Ռուսուցաց ,
Դու հոգ մ'աներ , Տէրն ողորմած ,
Տանի իւր տեղն ամէն ցրուած ։

Այդ "ցրուած"ներէն էր ինքն ալ, բայց թէ վիճակեցա՞ւ իրեն ամփոփուիլ հայրենի երդիքին տակ, չգիտենք. բայց հաւանօրէն ոչ ։

1605/6 թուին կը գտնենք զինքը Նաղլովցա գիւղաքաղաքը, ուր Արիստակէս եւ Կարապետ աշակերտներուն խնդրանքով յօրինած է Թոխաթի վրայ երեք տաղ, սկիզբը կայ Նախերգանք մը, ուր իւր բնակավայրն կը նկարագրէ այսպէս.

Կենամք քաղաք գիւղանըման
Քաղան տուն կայ ժողովըրդեան
Զունինք գրեան , Ամուսուրբեան
Ու Ճաշուգիրք , ոչ Գանձարան .
Անմըխիթար եմք տըխրական ,
Չի կար փեշա եւ գործարան .
Մնացաք պարապ եւ տուանց բան ,
Գրեցաք տետրակս ի Նաղլովցան [1]
Եւ ի խնդրոյ մանկանց մեր կան ,
Արիստագէս , Կարապետեան ,
Կարգած դդումքս , ուրախանան ,
Մինչ Աստուծոյ գոհութիւն տան [2] ։

"Անմխիթար՝ տխրական" օրեր ապրած է Ղազար. եւ ինչ աւելի կրնար տալ օտար երկինքը Ղարիպի մը, որ բնութեան առջեւ թո-

[1] Տպ. Նաղլովցան։
[2] Իրիս., էջ 70։

զուցած հեռացած էր բազմամարդ ամենայն հայրենի տնէն...։ Անշուշտ յիշեալ "մանուկներն„, որոնց ուսուցչութիւն կ'ընէր, միակ մխիթարութիւններն էին իր ցաւած սրտին։

1606 թուին փոխադրուած կ'երեւայ Ղազար "ի մայրաքաղաքն կամենից յերկիրն Ռուզաց եւ Լեհաց„, "առաջնորդութեան երկրիս տէր Կարապետ երջանիկ վարդապետին„, ուր "ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին եւ Ս. Նիկողայոսին„ կ'աւարտէ նոյն թուականի Սեպտեմբեր 27ին Աւետարանի մ'ընդօրինակութիւնը[1], որուն յիշատակարանին մէջ ինքզինքը "անարժան եւ մեղք զառածեալ Ղազար լոկ անուն եպիսկոպոս Թոխաթեցի„ կը ստորագրէ։

Այս միջոցին կը տառապէր Ղազար սրտի հիւանդութեամբ մը — "զի յոյժ կարի հիւանդ էի ի սրտէ ցաւէ„ (Տաշեան՝ Ցուցակ. էջ 367)։ Թէ ինչ էր հիւանդութեան պատճառը, ակնարկութիւն չ'ընէր, թերեւս հայրենաթախծութիւնը եղած ըլլայ։

Վերը յիշուած *Կարապետ Վարդապետը*, Լեմբերգի արքեպիսկոպոսն էր, որ յետոյ կամենիցի ալ եպիսկոպոս ընտրուեցաւ։ Ասոր հետ մտերմացած էր Ղազար, թերեւս նոյն իսկ հայրենիքէն։ Իր մասին ունիմ անդրագոյն տեղեկութիւններ, զորոնք աւելորդ չեմ համարիր յառաջ բերել հոս՝ լուսաւորելու համար անձ-

---

[1] Այժմ մեր Մատենադարանի թ. 97 Ձեռագիրն. Հմմտ. Ցուցակ. էջ 367. յիշատակարանը Նաեւ Կամենից. էջ 168։

նաւորութիւն մը, որ թէ ժամանակին ականաւոր դէմքերէն մին եղած է եւ թէ առանձին կերպով հետաքրքրական է մեզի՝ Ղազարի հետ ունեցած մտերմութեան համար։

Կարապետ վարդապետ ծագմամբ Թուլկուրանցի էր, եւ աշակերտած Պետրոս Կարկառեցւոյ. Գրիգոր Դարանաղցի՝ Ժամանակագրութիւն, էջ 352 կը հաղորդէ իր մասին կարեւոր տողերս, երբ կը խօսի Պետրոս Կարկառեցւոյ գործունէութեան վրայ. "եւ գնացին ընդ հաշակ նորուն բազմութիւն աշակերտաց, որպէս մեծ Կարապետն Թուլկուրանցի, որ յետոյ երեկ յԵրզնկան, առաջնորդ նստաւ երկու ամի ի Տիրաշէն, որ Ղուլից կատարութեան ժամանակին էր. որ զայն կողմանց վանորայք թալանեցին եւ զամենայն սրբութիւնքն զխաչերն, զշուրջառնին եւ զամենայն կահք սրբութեանցն. սա գնաց եւ աղաչեաց մեծ Ղուլ աղասուն եւ զամենայն որոնեալ գտին եւ ետուն։ Եւ յետ այնորիկ գնաց ի Լեհաց աշխարհն եւ անդ վախճանեցաւ ի թվին ՌԾԶ (1607)։ Եւ մեծ զուլում եղեւ մեր Լուսաւորչի Սեպհոյ վանացն, որ զմագաղաթ Աստուածաշունչն ընդ իւր տարաւ եւ յետ վախճանելոյն այլ ոչ ետուն եւ մնաց առ գօթացիքն (իմա՝ Լեհահայս) իբր ի բանդի[1]"։ Ինքն է առանց

¹ Ակնարկուած Աստուածաշունչս հաւանօրէն Մովսէս Երզնկացւոյ օրինակն էր, որ ապա Վրթանէս Բաբերդցւոյ ընդօրինակութեան հիմ ծառայեց եւ այսպէս Աստուածաշնչի արեւմտեան խմբին (Լեհաստան-Պարսկաստան գլխաւորաբար տարածուած) նախատիպարն եղաւ։

տարակուսի այն "գերերջանիկ եւ աստուածաեալ հայրն հոգեւոր տէր Կարապետ քաջ բարունապետն, պատուական սուրբ վարդապետն, յոյժ սիրող աստուածային տառիցն եւ ջատագով ուղղափառ հաւատոյ եւ ախոյեան յաղթող ընդդէմ ամենայն հերձուածոց»։ որուն խնդրանօք ընդօրինակած է Կարապետ աբեղայ 1604ին Բերիա-Քիլիս՝ Պետրոս Կարկառեցւոյ օրինակին վրայէն Մատթէոս Ուռհայեցւոյ Ժամանակագրութիւնը։ Գրիչը ի մէջ այլոց կը գրէ անոր մասին թէ "անձանձիր ուսուցանէ զամենայն աշակերտեալսն եւ հոլովէ քարոզութեամբ զտիեզերս ամենայն», եւ կը թուէ "զնորին աշակերտեալքն զտէր Նահապետ, զտէր Անտոն եւ Գրիգոր մոլայն եւ Անդրէաս սարկաւագն[1]»։

Փոքր Ասիոյ քաղաքական խռովութիւններէն նեղուած՝ հաւանօրէն 1605ին, անցած է Եւրոպա, ուր Լեհաստանի բազմանդամ գաղութն ապաստանած է զինքը, հրաւիրելով նոյն իսկ բաղձիլ Յովհաննէս արքեպիսկոպոսի մահուամբ զատարկացած աթոռը (1606)։ Այս մասին Կամենիցի տարեգիրն արձանագրած է տողերս. "Հայոց թվ. ՌԾԵ (1606). Պարոն Տէր Կարապետ Բարունապետ արհեպիսկոպոսն նստաւ ի յեպիսկոպոսութեան վերայ Լւովի քաղաքին եւ ի Կամենից քաղաքին վերայ Քրիստոս

Մ. Ուռհայեցւոյ սկզբնական օրինակն յետ ժամանակաց տարուած է Էջմիածին, ուր կը գտնուի այժմ։

[1] Հմմտ. Պ. Հ. Էփրիկեան, Մատթէոս Ուռհայեցւոյ մի յիշատակարանը. Արեւելք. 1885, Թ. 545։

ամենակալն զիւր արիութիւնն բազմամամանակեայ շնորհեսցէ, եւ հաստատեսցէ ի վերայ սուրբ աթոռ(ոյ) իւրոյ... ամէն: Եւ էր թվ. ՌԾԵ. մարտի 15. եկաւ ի Կամենիցն„ (Կամենից, էջ 66)։ Նոյն իմաստով կը գրէ նաեւ Սահիփանոս Ռոշքա իւր Տարեգրութեան մէջ (յամ 1606).

"Տէր Կարապետ արքեպիսկոպոս Լէօպոլսի Հայոց. — ոչ կարացաք գիտել թէ ուստի էր — ուլիսի 2, ի Կամենցացւոց ընտրի առաջնորդ, որպէս ի Լէօպոլսեցւոցն էր ընտրեալ. բայց զհաստատումն նորա թագաւորական՝ ոչ գտաք„ (Կամենից, էջ 136)։

Զինքը գովութեամբ կը յիշատակեն նաեւ ժամանակակից յիշատակագիրները. 1606, Մարտ 25ին Յակոբ սարկաւագ աւարտած է Մատթէի մեկնութիւն մը "ի Կամենից ի յառաջնորդութեան այսմ Նահանգի տէր Կարապետ րաբունապետ արքեպիսկոպոսի„ (Համամ-ճեան՝ Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Անկիւրիոյ, Թ. 50)։ Նոյն գրիչը 1606, Սեպտեմբեր 5ին կ'աւարտէ Սաղմոսարանի մ'ալ ընդօրինակութիւնը ի Կամենից "ի յառաջնորդութեան այսմ Նահանգի առաւն տէր Կարապետ քաջ րաբունապետի„, "որոյ փափաքող եղեալ քաջ րաբունապետն մեր տէր Կարապետ արքեպիսկոպոս՝ հմուտ եւ անեղեակ աստուածային հին եւ նոր կտակարանաց... ետ գրել զսա յիւր արդար եւ քրտնաջան վաստակոց„. Conybeare, Catalogue of the armenian Ma-

nuscripts in the British Museum, էջ 195. նոյնը Կամենից, էջ 168։

Շատ կարճառօտ եղաւ սակայն իւր գահակալութիւնը. Կամենիցի տարեգիրն կը գրէ. "Թվ. ՌԾԶ. Հոկտ. ամսոյ Դ, օրն կիրակի. տէր Կարապետ վարդապետ աթոռակալ եպիսկոպոս վախճանեցաւ. Աստուած ողորմի իւր հոգուն„ (Կամենից, էջ 66). Նոյն 1607 թուականին կը նշանակեն մահը նաեւ Ստեփանոս Ռոշքա (անդ) եւ Գրիգոր Դարանաղցի (անդ)։

Ղազար Թոխաթեցի հաւանօրէն Կարապետ արքեպիսկոպոսի Կամենից առաջին այցելութեան (1606, Մարտ 15) առթիւ նուիրած է անոր քերթուած մը, որ ի մէջ այլոց կը գրէ (Թ. 797, թղ. 252բ).

Երբ զքեզ տեսաք առաջնորդ երկրիս,
Յայնժամ զուարճացաք ի բոլոր սրտիս...
Տէրդ իմ Կարապետ եւ րաբունի...
Ի քո գալըստեանդ յոյժ կարօտէաք.
Այսօր տեսաք եւ զփափաքն առաք...
Ընդ յերկար աւուրց որ սաստ ընթացաք,
Եւ ճանապարհին որ աշխատեցաք...
Կամօքն Աստուծոյ Հասցես աթոռոյդ...

Այս թուականէն ետքը կը կորսուի Ղազարու հետքը ժամանակակից յիշատակարաններու մէջ։ Հաւանօրէն նա այնուհետեւ երկար չապրեցաւ՝ զոհ երթալով սրտի ցաւին (1610՞)։

Ոմանք շփոթած են զինքը Ղազար Բաբերդացւոյ հետ (Հանդ. Ամս. 1906, էջ 227 ծան.)։

Նկարագիր։ — Անպաճոյճ, համեստ անձնաւորութիւն մը կը հանդիսանայ Ղազար իր կենսագրական գծերու մէջ. պարզ կրթութեան տէր, թերեւս բաւական հայրենիքին մէջ հովուելու հօտն կամ առաջնորդելու վանքի մը։ Աղօտ կը մնայ թէ երբ եւ ո՞ր թեմի եպիսկոպոս ձեռնադրուած էր անիկա. բայց հաւանօրէն Արեւելք կը գտնուէր իր թեմը։ Դժբախտ պարագաները հեռացուցած են զինքը սիրած միջավայրէն եւ պանդխտութեան մէջ դառնացուցած են իր օրերը։ Խիղճ ալ հիւծած է հայրենիքի կարօտով, "անմխիթար եւ լալական„ աչքով եւ սրտով։ Նաշելովցա գիւղաքաղաքի սակաւաթիւ գաղթական հայ ժողովրդեան հովիւն եղած է, պարապելով մի եւ նոյն ժամանակ ուսուցչութեամբ։ Իւր գրական արտադրութիւնները անպաճոյճ արտայայտութիւններն են իր զգածմանց, որոնք հայրենիքի շուրջն կը յածին մեծաւ մասամբ, արթնցնելու հին հին յիշատակներ։ Անոնք աղքատ են սակայն երեւակայութեան պատկերներէ, ինչպէս նաեւ առ հասարակ մշակուած ոճէ, իր գրչին առաջին փորձերն պիտի ուզէի նկատել զանոնք, եթէ յառաջացած տարիքն չարգելուր զիս. յամենայն դէպս անոնք գրուած են "պարապ եւ առանց բան„ օրերուն, աւելի ժամանցի համար։ Ոչ այնչափ բանաստեղծ երգիչ, որչափ չափաբան տաղասաց մ'եղած է Ղազար, աննման յոյժ իր համչերակ Ստեփանոս եւ Յակոբ բանաստեղծ տաղասացներու։ Զինքը "Միջնադարեան լաւագոյն

*տաղասացներու շարքին մէջ, դասել (Հուարշ Վ. Սահակեան՝ Իրիս, էջ 70) յանձն պիտի չառնուի։*

ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ։ — *Չորս տաղ ծանօթ է Ղազար Թոխաթեցւոյ գրչէն, որոնք են.*

1. *Գովասանք Կարապետ արքեպիսկոպոսի ի Թոխաթցի Ղազար եպիսկոպոսէ ասացեալ.*

Նոր նորոգեցաւ ազգքս Թորգոմիս,
Որ երբ զքեզ տեսաք առաջնորդ երկրիս.
'Ի Խլաթք եւ Ուռումք եւ Դաղմատք երկրիս,
Ափշեալ հիանան կան զարմանալիս . . .

*Վերջ՝*

Նուաստ Ղազարէ զայս բանս ընկալ,
Եւ օրհնութեան քում զիս մի մոռանար։

Տունք "Նուաստ Ղազար ծառաէ ընկալ բանս"։

Ձեռագիր մեր Մատ. թ. 797, 252բ—253բ (Զ. կ. 377 ա)։

2. *Գովասանք ի վերայ Թոխաթ քաղաքին.*

Գովեմք զԱստուած երեակ անձնի,
Բանն ի Հօրէ ծնեալ զՈրդի.
Բարեբանեմք զսուրբ Հոգի,
Եւ յաւիտեանս յաւիտենի.

*Վերջ՝*

Ղազար գերի մեղօք գմրած,
Պանդուխտ եղար մէջ Ուռումայ.
Դու հոգ մ'անէր, Տէրն ողորմած,
Տանի իւր տեղն ամէն ըրուած։

Մեր ննջեցեալքն Թոխաթ հանգած,
Սուրբ Քառասնից թաղըն պառկած.
Մենք ի հեռուստ յետ մընացած,
Հայր մեր յերկինս առողն օրհնած։

Սկիզբը կայ նախերգանք մը, զոր յառաջ բերինք վերը էջ 207։

Հրատարակուած՝ Խրիմ, 1912, էջ 83—84։

3. *Ողբ ի վերայ կոտորածին Թոխաթի:*

4. *Ողբ ի վերայ սովոյն Թոխաթի:*

Այս Թ. 3 եւ 4 տաղերը տեսած է Շաւարշ Վ. Սահակեան իրեն սեփական ձեռագիր Տաղարանի մը մէջ (հմմտ. Խրիմ, էջ 69). «առաջինը՝ 1602 թուին Թոխաթի մեծ կոտորածին վրայ է. այս ողբը ձեռագրիս մէջ սկզբէն պակաս է քանի մը տուն դժբախտաբար»․ իսկ երկրորդը «այդ կոտորածին անմիջապէս յաջորդող Թոխաթի ահաւոր սովին վրայ (1603) է, զոր կը նկարագրէ՝ իբրեւ ականատես այնքան սրտաճմլիկ եւ այնքան իրապաշտ բացատրութիւններով»։ «Կը յուսամ, կը գրէր Սահակեան, որ առիթը կ'ունենամ առաջին երկու ողբերն ալ հանրութեան ներկայացնելու յաջորդաբար», բայց այս չէ յաջողած ողբացեալ յօդուածագրին. իսկ ձեռագիրն հաւանօրէն ոչընչացաւ 1915ի տարագրութեան օրերուն։

5. *Ուրիշ տաղեր.* «Կը կարծեմ, կը գրէ Սահակեան (անդ), թէ այդ երեք ոտանաւոր-

ները[1] չեն ներկայացներ Ղազարի ամբողջական գործը, ինչպէս ենթադրել կու տայ ասոնց իբր վերջաբան գրուած հետեւեալ երկու տուն գրուածը.

1. Կարօտ եմ ձեզ յոյժ փափկալի,
Ի թախանձու եւ այլ տեղի.
Ընչահ [illegible],
Երգեմք ու յիշեմք զհօղս փոշի։

2. Ով որ անբան է դէտ ինձ նման,
Ուղէ ասէ գերգս ի լրման.
Ում որ պէտ չէ՝ ունի իւր բան,
Ընծայագիր լինա մարդկան։

Սահակեանի ենթադրութիւնը կը ճշդէ մեր Թ. 797 Ցաղարանը, ուր պահուած է Կարապետ վարդապետի Գովասանքը, բայց թէ Ղազարի «Ցեղարանն» կը պարունակէ՞ր իր գրչէն ուրիշ տաղեր ալ, ես չեմ կրնար հաստատել։

1 Իմա՛ Թ. 2—4 տաղերը։

# ԲԱՌԱՐԱՆ

## ԹԸՄԿՕՐԷՆ ԵՒ ՕՏԱՐ ԲԱՌԵՐՈՒ

**ԱՐԵՂԱԹՈՂ**. *Բարեկենդանի օրեր։ "Բուն բարեկենդանըն մօտեցաւ.... արեղաթողըն բարձրաւ"*. 104։

**ԱՅԼՈՒԻ**. *դարձեալ. "այլուի մեր ակըն է պիտանի"*. 21։

**ԱՌՄԱՀ**. *ատրիկան, զինուոր, Թուի լատ.* arma *"զէնք" բառէն կազմուած, հմմտ. գաղղ.* armée. 88 *եւն*։

**ԱՐՄԱՂԱՆ**. *դ. արմաղան, ընծայ։ "Ձեզ արմաղան ընծայեցի"*. 111։

**ԲԱԶ**. *տուրքերկրեայ տեղ, գինետուն. այր. "ամանը բազերըն պահուեցան"*. 89։

**ԲԱԼԻՔ**. *բանալիք*. 32։

**ԲԱՆԻԿ**. *"սակաւ բանիկըս գրեցի"*. 16։

**ԲԼԵՂ** (*այլ որ.* **ԲԼԵՀ**). *կուլակ? ինչպէս ունի բնագիրը. "գըլեղներըն ածիլեցին"*. 92 *ծն*։

**ԲՆՏՈՒԵԼ**. *փնտռել*. 82։

**ԲՈԿԻԿ**. *բոբիկ. "մերկ եւ բոկիկ եղէր. գնացեր լեռներըն ելեր*. 34. *"մերկ եւ բոկիկ ի չուրջ եկան"*. 89։

**ԲՈՆԵԼ**. *"գգլուխ հայերըն ամէն բռնեցն"*. 94։

**ԳԷՄ**. *"արքա գէմ չէն մեզ հայրենի"*. 21։

**ԳԼՈՒԽ**. *գլխաւոր, երեւելի. "գգլուխ հայերըն ամէն բռնեցն"*. 94։

**ԳՐԻԿ**. *գրքոյկ. նամակ*. 81։

**ԳՐՈՒԼ, ԳԼՈՒԼ**. *լեհ.* *Król*, *Թագաւոր*. 66։

**ԳՐՕՐԷՆՔ**. *եկեղեցական օրէնք, արձանագրութեան գիրք*. 81։

ԼԱԼՈՏԱԿԱՆ․ լալագին․ «Խնդրեմ ձեզնէ լալոտական» (var. լալագական) 10։
ԼԱԽՇ․ բարակ ու երկայն հաց․ լաւաշ․ 106։
ԼԵՑՈՒԻԼ․ «Խցերն ամէն լուով լեցուաւ» 134։

ԽԱԶՆԱ․ թ․ Խազինէ․ գանձատուն․ 82։
ԽԱԼԱՊ․ թ․ Խալէպ, Հալէպ․ -ի թուղթ․ 65։
ԽԱՊԱՐ․ թ․ Խապէր․ լուր․ 103։
ԽԱՐՃԵԼ․ թ․ Խարճ․ ծախս ընել․ «շատ մալ խարճած» 95։
ԽՈՐՎԻ․ խորոված, քէպապ․ 105։
ԽՓԵՄ․ գոցել․ «գլխուհին բերանն էր խփեր» 32։
ԽՕՃԱ․ պ․ Խոճա, վարդապետ․ ուսուցիչ․ կրօնական պաշտօնեայ մզկիթի․ 118։

ԾԵՂ․ խառն․ յարդի փոքրիկ չիւղ․ ընդհանուր մաղը նաեւ․ յարդ․ խոտեղէն․ «Եւ ի վերայ շատ ծեղ լեցին» 91։

ԿԱՆԽԿԵԿ (կանխկիկ, կանաւխեկ)․ շուտ շուտ․ յաճախ անգամ․ «զհերիսին թասերին արէք եւ կանխկեկ ուտեցուցէք» 105։
ԿԱՊԵԼ․ կազմել․ «Մէկ մեծ գիրք կապեր» 35։
ԿԱՐՄԻՐ․ ոսկի դրամ․ «Հազար — տանք քեզ ասին» 95․ «ութ գահեկան —» 159։
ԿԻՍԱՀԻՒԱՆԴ․ հիւանդկախ․ «— էի պառկած» 103։
ԿՈԿ․ յղկուած․ «Մազապաթս — չէր» 66։
ԿՈՒԼԱԿ․ թուի՛ գլխի մազ․ «զկուլակներն ածիլեցին» 92։
ԿՈՒՆՏ․ կունդ․ Հոս ձաղրական իմաստով կ'երեւայ գործածուած, ակնարկելով մուֆթին որուն մազերն ածիլուած են, «դարձեալ տարան դուրքն Կընտին» 43։
ԿՏՈՑԵԼ․ ագացել «փայտի պէս կտոցեցին» 89։
ԿՏՐԻԼ․ «շուանն կտրեցաւ» 123։

ՀԱՄԱԶԱՐՄ․ «քրիստոնէից —ի» 45։
ՀԱՆՑԵՂ․ անպէտ․ 26, 114։

**ՀԱՐԿԻՔ**. արժէք. «դքս հարկիքն չի գիտէ». 107։
**ՀԵՌԵՏՕՐ**. հռետոր. 21, 28։
**ՀԵՐԻՍԱՑ**. դ հեշէ-կ. ձաւարով և մսով պատրաստուած թանձր կերակուր, զոր եփելու ժամանակ թնթոցով այնչափ կը զարնեն, կը խառնեն, որ միսն և ձաւարը իրարու հետ կը ձուլուին. կերակուրս ուտելու ժամանակ վրան իւղ կը լեցնեն. 102։
**ՀՈՍ. ՀՕՍ**. 82. յաճախ.

**ՁԵՆԵԼ**, ձայնել, 94։

**ՂԱՊՈՒԼ**. — թ. ... ներողամտութիւն. «— ամնել», ներողամիտ ըլլալ, 103, 104։
**ՂԱԼԻ**. — թ. ..., յափշտակող. հէն, «— և ձեռայի յայտնեցաւ». 131։
**ՂՐԿԵՄ**. ուղարկել. 88։

**ՃԱՊՊԻՄ**. լեցուցիլ. «խցերն ամէն լուով լեցուած, ՚. եկեղեցիներըն ճապպեցաւ». 134։
**ՃԱԼԱԼԻ**. — թ. ճերմակ. ազատամիտ. 129։
**ՃԻՆԿԱՆԻ**. — թ. չինգենէ. բոշայ. 97։
**ՃՈՐՈՎ**. դ. ...? բանութեամբ, «հազար — աշանեցին». 88. գնտաս — մերկացուցին. 92։

**ՄԱԼ**. — թ. ... ինչք, ստացուածք. 95։
**ՄԱՀՐՈՒՄ**. — թ. մահրում. անմասն, զուրկ. «ամէն բանէ — եղայ». 104։
**ՄԷԿԻԿ**. «չի պակասէն ով մէկիկ բան». 81։
**ՄԻԱՏԵՂԻ**. միասին. «անչափ մեռցի ի —». 81, 82.
**ՄԿՐԱՏԵԼ**. «զանոնց մազերն մկրատեցին». 92։
**ՄՂՏԵՍԻ**. — թ. ... մահտեսի. 122։
**ՄՈՐԹԵԹՈԹՈՎ**. բարեկենդանի օրերուն վերարկուով անձնաւորութիւն մը. ուրիշ կոզմանէ անծանօթ բառ. «բուն բարեկենդանըն մտաւ ... արեգակն ... բարձրաւ, —ն անհետ եղաւ». 104։
**ՄՈՐԻ**. փոքրիկ անտառ, պուրակ. «չատուր փախան —ն մտան.» 89. չատր ի —ն գտան բերին. 90։

**ՏԻՓՏԱՐ**. գ. տէֆթէր, տետրակ, գիրք. 81։
**ՏՈԼՎԱԹՎՈՐՔ**. ա. տէվլէթ. ինչք, մեծութիւն, հաստատութիւն. ասկէ առնալ "տոլվաթ-աւորք" հարուստ. 96։
**ՏՈՒԼՊԱՆԴ**. գ. տիւլպէնտ. չղարչի պէս նուրբ կտաւ, մարմաշ. ապարօշ. 93։

**ՑԵՂ ՈՒ ՑԵՂ**. տեսակ տեսակ. 35։
**ՑՆԻՐ**. ցիր. "ցան եւ ցնիր". 20։

**ՓԱԽԼԱՒԱ**. տ. պաքլավա. տեսակ մը խմորեղէն. 109։
**ՓԱՑԻԿ**. "փաղելով նման —ի". 28։
**ՓԵՇԱ**. գ. փէշէ, արուեստ, գործ. "չի կայ — եւ գործարան". 207։
**ՓԷՇ**. տ. փէշ. քղանցք. գրօշակ. 105։
**ՓԻԼԱՒ**. գ. փիլավ. 105։
**ՓՈՇԻՄԱՆ** լինել. գ. փէշիման (փիւշման) ըլլալ, զղջալ. ապաշխարել. "որ յանդէնն չլինիս —". 114։

**ՔԱՂՑՐԱՋՐՈՑՑ**. քաղցրախօս. 17։
**ՔԱՇԻՇ**. գ. քէշիշ, քահանայ. 123։
**ՔԱՇԿԱԿ**. գ. քէշքէք, հերիսայի նման կերակուր. 105։
**ՔԱՒԻԵԼ**. արդեօք, ոչ թէ. "մամմնէն — խարեցար". 24. — "թէ ինչ անգէտ մարդ է". 107։
**ՔԵՇՏԵԼ**. կարել. "կամէին — գլխինքս". 123։

**ՕԼԱԽ** արգ. վլախ = ռումէն. 93 եւն։

